

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11**

ՆՈՅԵՄԲԵՐ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ








# ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ «ՊՐԱՎԴԱ» ԹԵՐԹԻ ՀԱՐՑԵՐԻՆ

ՀԱՐՑ: Վիճակն ինչպիսի՞ն է Եվրոպայում միջուկային սպառազինությունների սահմանափակման շուրջ Ժնևում տեղի ունեցող սովետա-ամերիկյան բանակցություններում: Այնտեղ, արդյոք, թեկուզ ինչ-որ առաջընթաց կա՞:

ՊԱՏԱՍԽԱՆ: Բանակցություններում պայմանավորվածության ուղղությամբ, ցավոք, ոչ մի առաջընթաց չկա: Այնտեղ առաջվա պես փակուղային իրադրություն է: Թե ինչու է դա այդպես, այժմ, կարծում ենք, արդեն պարզ է ԱՄՆ-ի նույնիսկ ուղղահավատ դաշնակիցների համար, միայն թե բլոկային լոյալությունը նրանց խանգարում է այդ բանն ընդունել բացեիբաց:

Բանակցությունների երկու տարվա ընթացքում Սովետական Միությունը համոզիչ կերպով ապացուցել է, որ ինքը պատրաստ է համարձակ լուծումների դիմելու, որպեսզի Եվրոպայից հեռացվի միջուկային վտանգը, ամրապնդվի մեր մայրցամաքի և ամբողջ աշխարհի անվտանգությունը: Մեր արած առաջարկությունները նախատեսում են հնարավոր միջոցառումների լայնածավալ ընդգրկում՝ սկսած միջին հեռավորության միջուկային միջոցների էական կրճատումներից, ընդհուպ մինչև Եվրոպայում ինչպես տակտիկական, այնպես էլ միջին հեռավորության միջուկային զենքի լրիվ վերացումը: Դրանք բովանդակում են փոխադարձաբար ընդունելի այնպիսի պայմանավորվածության բոլոր անհրաժեշտ տարրերը, որը չի ոտնահարում ոչ մեկի՝ ոչ ՍՍՀՄ-ի ու նրա դաշնակիցների, ոչ ԱՄՆ-ի, ոչ էլ արևմտաեվրոպական պետությունների շահերը:

Վաշինգտոնում վերջին ժամանակներս բազմաթիվ հայտարարություններ են արվում, թե ԱՄՆ-ը նույնպես կողմնակից է պայմանավորվածության, և թե նա սկսել է ավելի մեծ ճկունություն հանդես բերել բանակցություններում: Մենք հանգամանորեն վերլուծել ենք այդ բոլոր հայտարարությունները և այն, ինչ ամերիկյան պատվիրակությունն ասում է Ժնևում: Ստուգումը ցույց է տալիս, որ ամերիկացիների ճկունությունը խոսքերից այն կողմ չի գնում: Իսկ ԱՄՆ-ի գծի էությունը մնում է անփոփոխ՝ իր համար ՍՍՀՄ-ի հանդեպ ռազմական զգալի գերակշռություն ապահովել Եվրոպայում ամերիկյան նոր հրթիռների ծավալման միջոցով:

Քանի դեռ ԱՄՆ-ը կմնա իր ոչ ռեալիստական, միակողմանի դիրքում, ըստ որի ՍՍՀՄ-ը պետք է կրճատեր, իսկ ԱՄՆ-ը և հյուսիսատլանտյան պայմանագրի գծով նրա դաշնակիցները ավելացնեին միջին հեռավորության իրենց միջուկային սպառազինությունները, իհարկե, անկարելի է բանակցություններում առաջադիմության հույս տածել:

ՀԱՐՑ: Արդյոք սպառվա՞ծ են պայմանավորվածության հասնելու բոլոր հնարավորությունները:

ՊԱՏԱՍԽԱՆ: Դա ամենից առաջ կախված է ԱՄՆ-ից, այն բանից, թե նա արդյոք պատրա՞ստ է անցնելու գործարար խոսակցության: Սովետական Միությունը պայմանավորվածության որոնումներից չի հրաժարվի այնքան ժամանակ, քանի դեռ Միացյալ Նահանգները իրենց գործողություններով այդ բանը անհնար չեն դարձրել:

Մենք ճկունություն ենք ցուցաբերել և ցուցաբերում ենք կոնկրետ լուծումներ գտնելու գործում, եթե պահպանվի մեկ, բայց պարտադիր պահանջ՝ միջին հեռավորության միջուկային սպառազինությունների գծով Եվրոպայում ուժերի հավասարակշռությունը չպետք է խախտվի: Այդ սպառազինությունների մակարդակը երկու կողմերի համար էլ կարող է և պետք է արմատապես իջեցվի, բայց այնպես, որ նրանց միջև ուժերի հարաբերակցությունը մնա անփոփոխ:

Սա, նախ՝ նշանակում է, որ Եվրոպայում չպետք է տեղաբաշխվեն ամերիկյան նոր հրթիռներ, որովհետև դա ՆԱՏՕ-ի օգտին արմատապես կփոխեր ռազմաստրատեգիական ամբողջ իրադրությունը: Երկրորդ՝ պետք է հաշվի մեջ մտցվեն թե՛ մեկ և թե մյուս կողմի համապատասխան հեռավորության բոլոր միջուկային միջոցները, առանց որևէ բացառության:

Այս արդարացի պահանջից մենք չենք հրաժարվի, բայց նման սկզբունքային մոտեցման շրջանակներում մենք, կրկնում եմ, ցուցաբերում ենք ճկունություն և կոնստրուկտիվություն: Այս առումով մեր որոշ լրացուցիչ քայլերի մասին կարող եմ ասել նաև այսօր:

**Առաջին:** Սովետական Միությունը, ինչպես հայտնի է, պատրաստակամություն է հայտնել Եվրոպայում միջին հեռավորության միջուկային սպառազինությունները երկու կողմերի համար էլ միատեսակ մակարդակներով կրճատելու շուրջը, ինչպես կրող միջոցների (հրթիռների ու ինքնաթիռների), այնպես էլ դրանց մարտալիցքերի գծով: Ոմանք հարց են տալիս՝ իսկ Սովետական Միությունն ինչպե՞ս կվարվի, եթե մի կողմից ՍՍՀՄ-ի, իսկ մյուս կողմից Անգլիայի ու Ֆրանսիայի հրթիռների մարտագլխիկների գծով հավասարություն ապահովելու համար նրան հարկ լիներ ունենալ հրթիռների ավելի նվազ թվով արձակման կայանքներ, քան արդեն կան ՆԱՏՕ-ի կողմում:

Ինչ կա որ, մենք դրան էլ ենք պատրաստ: Մեզ չի հուզում այն, որ այդպիսի մոտեցման դեպքում և նկատի ունենալով ներկայումս անգլիական ու ֆրանսիական հրթիռների մարտագլխիկների քանակը, ՍՍՀՄ-ը Եվրոպայում կարող էր ունենալ ՍՍ—20 հրթիռների մոտավորապես 140 արձակման կայանք, այսինքն, նկատելիորեն ավելի պակաս, քան միջին հեռավորության հրթիռների արձակման կայանքներ ունեն Անգլիան ու Ֆրանսիան:

**Երկրորդ:** Ոչ այնքան վաղուց մենք հայտարարեցինք, որ փոխադարձաբար ընդունելի համաձայնության հասնելու դեպքում, ներառյալ այն, որ ԱՄՆ-ը հրաժարվի Եվրոպայում հրթիռների տեղաբաշխումից, Սովետական Միությունը կվերացներ եվրոպական գոտում կրճատվելիք իր բոլոր հրթիռները, դրանք Արևելքում վերաբազավորելու փոխարեն: Եվ դարձյալ ոմանք հարց են տալիս. իսկ այդ դեպքում այնպես չի՞ լինի, որ Սովետական Միության եվրոպական մասում հրթիռների ոչնչացմանը զուգընթաց նրա արևելյան շրջաններում կմեծացվի նույնպիսի հրթիռների թիվը, որոնք հետագայում կարող էին Արևելքից տեղափոխվել Արևմուտք:

Նման երկյուղների համար ոչ մի հիմք չկա: Բայց որպեսզի այդ առթիվ ամեն մի կասկած առհասարակ փարատվի, կարող եմ որոշակիորեն ասել. Արևելքից Արևմուտք սովետական հրթիռների տեղափոխում չի լինի: Եվրոպայում միջուկային սպառազինությունների սահմանափակման շուրջը համաձայնագրի հասնելու և այն ուժի մեջ մտնելու դեպքում այդ պահից սկսած կդադարեցվի նաև ՍՍ—20 հրթիռների ծավալումը ՍՍՀՄ-ի արևելյան շրջաններում: Եվ մենք անսասանորեն կելնենք դրանից, պայմանով, որ Ասիայի ռեգիոնում ստրատեգիական իրավիճակի էական փոփոխություններ տեղի չունենային: Սա նախ և առաջ նշանակում է, որ ԱՄՆ-ը միջին հեռավորության միջուկային նոր միջոցներ չծավալի այն շրջաններում, որտեղից դրանք կարող էին հասնել ՍՍՀՄ-ի տարածքի արևելյան մաս:



**Երրորդ:** Երբեմն ասում են, թե մեր այն առաջարկությունը, որ կրճատումներից հետո յուրաքանչյուր կողմին մնա միջին հեռավորության միջուկային զենքի 300-ից ոչ ավելի կրող միջոց, իբր, չափից ավելի է կրճատում գործողության համապատասխան շառավղով ամերիկյան ավիացիոն միջոցները:

Մենք նպատակ չունենք վնաս հասցնել ԱՄՆ-ին: Թեև հանուն արդարության արժե հիշեցնել, որ գործողության միջին շառավղով սովետական ինքնաթիռներ չեն բազավորվում ուրիշ այնպիսի երկրներում, որտեղից նրանք կարողանային հասնել ԱՄՆ-ի տերիտորիա:

Բայց մենք այստեղ էլ պատրաստ ենք լրացուցիչ ճկունություն ցուցաբերել. սահմանել գործողության միջին շառավղով կրող ինքնաթիռների՝ ՍՍՀՄ-ի և ՆԱՏՕ-ի համար հավասար ընդհանուր մակարդակներ փոխադարձաբար ընդունելի, թեկուզև ավելի վաղ մեր առաջարկածից էապես տարբեր քանակական դիապազոնում: Այդ մակարդակների կոնկրետ չափերը կարող էին համաձայնեցվել, ինչպես նաև ճշգրտվել սահմանափակվող կրող ինքնաթիռների կազմը:

Այն փակուղուց, որի մեջ մտել են Ժնևի բանակցությունները, ելք կա, դրանից հարկավոր է միայն օգտվել: Բավական է, որ ԱՄՆ-ը իսկապես ցանկություն ցուցաբերի դիմելու փոխադարձաբար ընդունելի պայմանավորվածության, և համաձայնագրի մշակման համար շատ ժամանակ չէր պահանջվի:

ՀԱՐՑ: Ոմանք Արևմուտքում այն միտքն են հայտնում, թե Սովետական Միությունը իբր կարող էր բարի կամքի դրսևորման կարգով արդեն այժմ դիմել իր հրթիռների միակողմանի կրճատմանը Եվրոպայում: Դուք ի՞նչ կասեք այդ առթիվ:

ՊԱՏԱՍԽԱՆ: Այո, մեզ հայտնի են նման կոչերը: Դրանք երբեմն արվում են նաև այնպիսի մարդկանց կողմից, որոնք, իրոք, մտահոգված են Եվրոպայում խաղաղության պահպանմամբ:

Մենք բարի կամք փոխ առնելու կարիք չունենք, բանակցություններում հաջողության հասնելու համար առավելագույն նպաստավոր իրադրություն ստեղծելու նպատակով մեր կողմից ձեռնարկված, այդ թվում միակողմանի, քայլերի պակաս չի եղել:

Հիշեցնեմ, որ մեկուկես տարի առաջ ՍՍՀՄ-ը մորատորիում սահմանեց իր եվրոպական մասում միջին հեռավորության միջուկային սպառազինությունների ծավալման վրա: Եվ ամեն տեսակ չարախոսություններին հակառակ՝ այդ մորատորիումը անշեղորեն կիրառվում է: Դադարեցվեց հրթիռների լրացուցիչ տեղաբաշխումը նաև Ուրալից այն կողմ՝ այն շրջաններում, որտեղից դրանք կարող էին հասնել Արևմտյան Եվրոպայի երկրներ:

Ավելին, այն ժամանակամիջոցում, երբ տեղի են ունենում բանակցությունները, Սովետական Միությունը սպառազինությունից հանել է Եվրոպայում իր միջին հեռավորության տասնյակ հրթիռներ: Այսօրվա դրությամբ մարտակազմից լիովին հանվել են ՍՍ—5 հրթիռները, որոնք նախկինում ծավալված էին եվրոպական գոտում և որոնք, ի դեպ, պակաս հեռավորություն չունեին, քան ՍՍ—20 հրթիռները, իսկ մարտալիցքի հզորությամբ մեծապես գերազանցում էին դրանց:

Նրանք, ովքեր ՍՍՀՄ-ին են կոչ անում միակողմանի կարգով կրճատելու միջին հեռավորության իր հրթիռների քանակը, հավանաբար անտեղյակ են, որ մենք դա փաստորեն արդեն անում ենք: Բայց իսկական իրավիճակին քաջատեղյակ են, իհարկե, և՛ ԱՄՆ-ի կառավարությունը, և՛ ՆԱՏՕ-ի մյուս երկրների կառավարությունները: Նրանք, սակայն, թաքցնում են ճշմարտությունն իրենց ժողովուրդներից, խաբում նրանց:

Մինչդեռ, Վաշինգտոնը բանը համառորեն հանգեցնում է նրան, որ մոտ ժամանակներս ձեռնամուխ լինի իր «Փերշինգների» և թևավոր հրթիռների

ծավալմանը Արևմտյան Եվրոպայում: Ոչ մի բան չի վկայում, թե ԱՄՆ-ը պատրաստ կլիներ հրաժարվել նման ծավալումից, եթե Սովետական Միությունը շարունակեր այսուհետև էլ միակողմանի կարգով կրճատելու իր հրթիռները: Ընդհակառակը, ամեն ինչ ասում է հակառակը: Ուստի Սովետական Միությունը, անշուշտ, չի կարող հարվածի տակ դնել և չի դնի իր անվտանգությունը:

Այլ բան է, եթե ԱՄՆ-ը հրաժարվեր Եվրոպայում իր հրթիռները հայտարարված ժամկետներում տեղաբաշխելուց և դրանով իսկ հնարավորություն ընձեռեր շարունակելու բանակցությունները և փոխադարձաբար ընդունելի լուծումների որոնումները: Այդ դեպքում մենք կարող էինք արդեն այժմ ձեռնամուխ լինել մեր ՍՍ—4 հրթիռների կրճատմանը (իսկ դրանցից մենք ունենք 200-ից ավելի) և դրանց վերացումն ավարտել 1984—1985 թվականների ընթացքում: Իսկ եթե հաջողվեր Ժնևում համաձայնագիր կնքել արդարացի հիման վրա, ինչի մասին մենք բազմիցս ասել ենք, ապա, հասկանալի է, կվերացվեր նաև Եվրոպայում եղած ՍՍ—20 հրթիռների զգալի մասը:

ՀԱՐՑ: Արևմտյան մայրաքաղաքներում հայտարարություններ են արվում, թե իբր ամերիկյան հրթիռների ծավալումն սկսվելուց հետո բանակցությունները նոր ազդակ կստանան և ավելի արդյունավետ կդառնան: Ինչպե՞ս գնահատել նման հայտարարությունները:

ՊԱՏԱՍԽԱՆ: Դա կատարյալ խաբեություն է, որը նպատակ ունի թուլացնել Եվրոպայում ամերիկյան միջուկային հրթիռների հայտնվելու դեմ արևմտաեվրոպական ժողովուրդների ծավալած պայքարի շիկացածությունը:

Այստեղ պետք է լիակատար պարզություն լինի. Արևմտյան Եվրոպայում ամերիկյան նոր հրթիռների հայտնվելը անհնար կդարձնի Ժնևում ներկայումս անցկացվող բանակցությունների շարունակումը: Մյուս կողմից, Ժնևի բանակցությունները կարող են շարունակվել, եթե ԱՄՆ-ը ձեռնամուխ չլինի հրթիռների իրական ծավալմանը:

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՈՒՂԻՈՎ

*ԱՄԵՆ ԱՆԳԱՄ, ՆՇԵԼՈՎ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ սոցիալիստական մեծ հեղափոխության տարեդարձը, մենք վերստին իմաստավորում ենք նրա վիթխարի նշանակությունը, վեհությունն ու վերակերտիչ հսկայական ազդեցությունը պատմության ընթացքի, մարդկության ճակատագրի վրա։*

*Հոկտեմբերյան հեղափոխությունը, անկասկած, մարդկության նոր պատմության ամենակարևոր, բեկումնային իրադարձությունն էր, որը շարունակում է լուսավորել բոլոր նրանց ուղին, ովքեր պայքարում են սոցիալական արդարության, խաղաղության, ժողովուրդների բարեկամության համար։*

*Հոկտեմբերի հաղթանակով դրվեց աշխարհի հեղափոխական նորացման դարաշրջանի սկիզբը։*

*Հոկտեմբերը պատասխան տվեց պատմության ու արդիականության ամենահրատապ հարցերին։ «Լենինը և նրա ստեղծած բոլշևիկների կուսակցությունը,— իր «Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր» հոդվածում գրել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը,— գլխավորեցին առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխությունը, որն արմատապես փոխեց աշխարհի սոցիալ-քաղաքական դեմքը։ Դրանով իսկ բացվեց նոր դարագլուխ՝ բանվոր դասակարգի, ժողովրդական մասսաների վիթխարի մեծագործությունների և պատմական նվաճումների դարագլուխը...»։*

*Սովետական երիտասարդ երկիրը, չվախենալով սոցիալիստական հեղափոխության առջև ծառացած խնդիրների նորությունից ու բարդությունից, գտնվելով հին աշխարհի ուժերի թշնամական շրջապատման օղակում, ուղեկից ունենալով դարավոր հետամնացությունը, սովն ու աղքատությունը, համարձակորեն կանգնեց աշխարհի նորացման մինչ այդ անհայտ ուղու վրա։*

*Հարկավոր էր ապրել նոր օրենքներով՝ կոլեկտիվիզմի օրենքներով, հարկավոր էր անհապաղ վերջ տալ պատերազմին, որը երկիրը կանգնեցրել էր աղետի եզրին, անհրաժեշտ էր թոթափել կախվածությունը արևմտյան երկրներից, հաղթահարել տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, երկիրը դուրս բերել սոցիալական առաջընթացի նոր ուղի, վերջ տալ կապիտալիստական շահագործմանը, ազգային կեղեքմանն ու ճնշմանը, պայմաններ ստեղծել մարդկանց արժանավայել ապրելու համար, հասարակական ու պետական գործերի կառավարմանը նրանց փաստացի մասնակցության համար։*

*Ինչքան մենք հեռանում ենք այն հրաբորբ օրերից, այնքան ավելի խոր ու ամբողջական են բացահայտվում Հոկտեմբերի հասումները, մեր անցած ճանապարհի հանրագումարները։*

*Միայն Հոկտեմբերյան հեղափոխությունը, սովետական իշխանությունը առաջին անգամ աշխարհին ցույց տվեցին կապիտալիստական ճնշումից ու շահագործումից աշխատավորների ազատագրման ռեալ ուղին։*

*Միայն Հոկտեմբերյան հեղափոխությունը և սովետական իշխանությունը աշխարհին ցույց տվեցին անվերջ պատերազմներից դուրս գալու ուղին։ Լենինյան դեկրետը խաղաղության մասին մեր պետության առաջին պատմական փաստաթուղթն էր։*

*Միայն Հոկտեմբերյան հեղափոխությունն ու սովետական իշխանությունը համոզիչ կերպով ցույց տվեցին, որ ազգային հարցի լուծման միակ ռեալ ճա-*

նապարհը ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունն է, բոլոր ազգերի ու ազգությունների ազատագրությունն ու հավասարությունը։

Միայն Հոկտեմբերյան հեղափոխությունը, սովետական իշխանությունը կարողացան արթնացնել ժողովրդի հսկայական ստեղծագործական ուժերը, միլիոնավոր աշխատավորների դուրս բերեցին պատմական ստեղծագործական ուղի, կարճ ժամկետում նվաճելով սոցիալական և տնտեսական առաջընթացի բարձունքները։

Հոկտեմբերյան հեղափոխության վեհությունը հենց այն է, որ նրա արդյունքները նույնքան նշանակալի ու ներգործուն են, որքան նշանակալի ու ոգեշնչող են նրա գաղափարներն ու նպատակները։

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո մեր երկրի կյանքում համաշխարհային պատմական ակնառու նվաճումը, կուսակցության և ժողովրդի գործունեության գլխավոր արգասիքը զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումն է։ Երկրում հաստատվեցին հասուն սոցիալիստական հասարակական հարաբերություններ, կազմավորվեց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։

Հոկտեմբերի ուղիով մեր անցած ճանապարհի հանրագումարը եղավ ՍՍՀՄ գործող սահմանադրությունը։ Այն վերստին հաստատեց, որ մեր երկրում տեղի ունեցող բոլոր վերափոխումները, բոլոր նշանակալի տեղաշարժերը իրականացվում են հանուն մարդու, նրա ազատության, իրավունքների, դեմոկրատիայի, սոցիալական արդարության։

Ջերմ սեր դեպի սոցիալիստական հայրենիքը, նվիրվածություն պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներին, իսկական անձնվիրություն, կոլեկտիվիզմ՝ ահա այն բարձրագույն արժույթները, որոնք ձեռք բերվեցին և հաստատվեցին հեղափոխական պայքարում, առաջին հնգամյակների տարիներին, հայրենիքի պաշտպանության մարտերում, հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Այդ անանց արժույթները սովետական մարդկանց համակում են հոգևոր ազնվությամբ, նրանց տալիս կամք, արիություն, տոկունություն, համոզվածություն։ Դա հիրավի փառապանծ Հոկտեմբերի մեծագույն նվաճումն է։

Սովետական ժողովրդի սխրագործությունները վիթխարի են, տպավորիչ։ Կուսակցության XXVI համագումարի մշակած գլխավոր կուրսի իրականացումը, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և ընթացիկ տարվա հունիսյան պլենումների որոշումների կենսագործումը, զարգացած սոցիալիստական հասարակության կատարելագործումը, կոմունիստական շինարարության ասպարեզում մեր երկրի հսկայական ձեռքբերումները այն բանի վկայությունն են, որ Հոկտեմբերի ուղին միակ ճշմարիտն է, այն ճանապարհ հարթեց աշխարհում նոր՝ սոցիալիստական ապրելակերպի, նոր տիպի քաղաքակրթության ստեղծելու համար։ Այն ամբողջ մարդկության պայծառ ապագայի ուղին է։

20-րդ դարում աշխարհի վրայով անցավ երկու աշխարհամարտերի հրեմրրիկ։ Բայց և 20-րդ դարի վրա բարձրացավ մեծ վերափոխումների Հոկտեմբերյան դրոշը։

Հոկտեմբերյան հեղափոխությունը առաջին հերթին լուծեց մեր երկրի պրոբլեմները, որոնք առաջադրված էին նրա պատմությամբ, նրա կոնկրետ պայմաններով։ Սովետական իշխանության առաջին քայլերը լի են դրամատիզմով, ստեղծարար աշխատանքով։ Ծանրագույն փորձություններ բաժին ընկան սովետական պետությանը՝ քաղաքացիական պատերազմ, ռազմական ինտերվենցիա, սով ու աղետ, կրակոցներ անկյունից։ Թվում էր, թե անհնարին է տոկալ, բայց հաղթանակեց ազատությունը ճաշակած ժողովուրդը։ Երկրի սոցիալ-տնտեսական վերափոխումների ոգեշունչ տարիներին դրվում էին հզոր ինդուստրիայի հիմքերը, շրջադարձ էր կատարվում դեպի գյուղատնտեսության կոլեկտիվացում, իրականացվում էր կուլտուրական հեղափոխություն։ Սոցիալիստական հասարակարգի կենսահաստատ ուժը, սովետական ժողովրդի աշխատանքային սխրանքը երկիրը հասցրին տնտեսական հզորության, գիտության ու կուլտուրայի ծաղկման։

Վ. Ի. Լենինը գրել է. «Այն օրը, երբ մենք տոնում ենք հեղափոխության



տարեդարձը, պետք է մի հայացք գցել նրա անցած ուղու վրա։ Մենք ստիպված էինք մեր հեղափոխությունն սկսել չափազանց դժվարին պայմաններում, որպիսի պայմաններում չի գտնվի աշխարհի հետագա բանվորական հեղափոխություններից և ոչ մեկը, ուստի և հատկապես կարևոր է, որ մենք փորձենք լուսաբանել մեր անցած ուղին ամբողջությամբ վերցրած, տեսնենք թե այդ ժամանակվա ընթացքում ինչ է ձեռք բերվել...»։

Վաթսուն տարում ազգային եկամուտը մեր երկրում աճել է 158 անգամ, արդյունաբերական արտադրանքի ծավալը՝ մոտ 540 անգամ։ Համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ ՍՍՀՄ-ի բաժինը 1920 թվականի մեկ տոկոսից աճել հասել է 20 տոկոսի։ Այդ տարիներին արդյունաբերական արտադրանքը Հայաստանում ավելացել է 1000 անգամ։ Սովետական Միությունը աշխարհում առաջին տեղն է գրավում պողպատի, նավթի, երկաթի, կոքսի, հանքային պարարտանյութերի, ցեմենտի և մի քանի այլ արտադրատեսակների արտադրությամբ։

Հոկտեմբերը, սոցիալիզմը մարդկության պատմության մեջ առաջին անգամ մեկ սերնդի կյանքի ընթացքում լուծեցին անգրագիտության վերացման դարավոր պրոբլեմը, կուլտուրայի հասումները ամբողջովին ի սպաս դրեցին ժողովրդական մասսաներին։

Ազատագրված աշխատանքի մարդիկ իրենց հանճարի մեծագույն նվաճումները ծառայեցնում են մարդկության բարօրությանն ու խաղաղությանը։ Սովետական մարդը առաջինը թափանցեց տիեզերք, առաջինը խաղաղ նպատակներով օգտագործեց ատոմային էներգիան։ Նա կառուցում է աշխարհում խոշորագույն էլեկտրակայաններ ու երկաթգծեր, նոր քաղաքներ ու գործարաններ, զարգացնում էկոնոմիկան ու կուլտուրան։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը մեր երկիրը դուրս բերեց սոցիալական առաջընթացի մայրուղի, և այժմ, վեցուկես տասնամյակ անց, սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության գլխավորությամբ դարակազմիկ հաջողությունների է հասել։

Լուծելով մեր երկրի պրոբլեմները, որոնք իրենց հիմքում ոչ թե տեղական, այլ համընդհանուր էին և հասարակական զարգացման ընթացքով առաջադրվել էին ամբողջ մարդկությանը, Հոկտեմբերը խոր ազդեցություն ունեցավ բովանդակ մոլորակի ճակատագրի վրա, ոգեկոչեց մեր դարի բոլոր մասսայական, առաջադիմական շարժումները, համաշխարհային հեղափոխական պրոցեսի մեջ համաձուլեց սոցիալիզմի կառուցումը, միջազգային բանվոր դասակարգի, գաղութային երկրների ժողովուրդների, բոլոր դեմոկրատական ուժերի պայքարը։ Այդ հզոր հոսանքի ճնշման ներքո փլուզվեց գաղութային ամոթալի սիստեմը, կրճատվեցին իմպերիալիզմի ազդեցության ոլորտները, ավելի ու ավելի մեծ թվով երիտասարդ զարգացող երկրներ ընտրում են սոցիալիզմի ուղին։ Հոկտեմբերյան հեղափոխության ազդեցության ներքո ծնունդ առած կոմունիստական ու բանվորական կուսակցություններ են գործում աշխարհի գրեթե բոլոր երկրներում։

Հոկտեմբերի միջազգային գլխավոր արդյունքը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումն ու ամրապնդումն է։ Որպես հակաիմպերիալիստական պայքարի վճռորոշ ուժ, սոցիալիստական ընկերակցությունը անշեղորեն ամրապնդվում է, առանց նրա չի կարող լուծվել համաշխարհային քաղաքականության քիչ թե շատ կարևոր որևէ պրոբլեմ։ Կոմունիստական կուսակցությունը ամեն ինչ անում է՝ ըստ ամենայնի նպաստելու հեղափոխական շարժման տարբեր ջոկատների, բոլոր նրանց պայքարին, ովքեր հանդես են գալիս իմպերիալիզմի դեմ՝ հանուն խաղաղության ու սոցիալական առաջընթացի։

Աշխարհում խաղաղության պահպանման ազնիվ նպատակի իրականացմանն է ծառայում համաշխարհային սոցիալիզմի, միջազգային պրոլետարիատի և ազգային-ազատագրական շարժման անխախտ դաշինքը։ Կարևոր գործոն է սոցիալիստական ընկերակցության երկրների միասնությունն ու համախմբվածությունը, սոցիալիզմի նվաճումներն ամրապնդելու նրանց վճռականությունը։

Խաղաղության պահպանման սովետական ծրագիրը հիմնված է վսեմ իդեալների վրա, որոնք սկիզբ են առնում Հոկտեմբերից։ Լենինը Հոկտեմբերյան հեղափոխությունը բնորոշել է որպես «պատերազմը ոչնչացնելու գործի առաջին հաղթանակ»։ Այդ ժամանակից ի վեր խաղաղության լենինյան ծրագիրը, տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության կուրսը մնում է որպես Սովետական Միության խաղաղասիրական արտաքին քաղաքականության հիմքը։

Մեր ժամանակներում, երբ մարդկության առջև ծառացած է մոլորակի քաղաքակրթության բախտի հարցը, չկա ու չի կարող լինել ավելի կարևոր խնդիր, քան խաղաղության պահպանման խնդիրը։ Իմպերիալիստական շրջանների, մասնավորապես ամերիկյան իմպերիալիզմի մեղքով աշխարհի այս կամ այն մասում բռնկվում են պատերազմի հրացոլքերը։ Այդ անխոհեմ քաղաքականության հիմքում ընկած է ռազմատենչ, մոլի հակակոմունիզմը, ջերմամիջուկային պատերազմի հնարավորության քաղաքականությունը, որը խաղաքարտի վրա է դնում մարդկության ապագան։ Դա խելացնոր քաղաքականություն է, որն աշխարհը մոտեցնում է նոր պատերազմի եզրին։

Սովետական Միությունը անում է ամեն ինչ՝ խափանելու միջուկային աղետի, առճակատման վտանգը։ Աշխարհին լայնորեն հայտնի են սովետական խաղաղ նախաձեռնությունները։ «Մենք ելնում ենք այն բանից,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Յու. Վ. Անդրոպովի հայտարարության մեջ,— որ մարդկությունը կործանման չի դատապարտված։ Սպառազինությունների մրցավազքին պետք է ու կարող է վերջ դրվել։ Մարդկությունը արժանի է ավելի լավ բախտի, քան կոնֆլիկտներով բզկտված աշխարհում ապրելը, շնչահեղձ լինելով մահաբեր զենքի բեռի տակ»։ Սովետական ղեկավարի այդ հայտարարությունը միջազգային հսկայական նշանակության փաստաթուղթ է, այն արժանացել է սովետական ժողովրդի և միջազգային հասարակական լայն շրջանների ջերմ հավանությանն ու բարձր գնահատանքին։ Մեր կուսակցության արտաքին քաղաքականության նպատակները շարունակում են մնալ անփոփոխ՝ ապահովել կայուն խաղաղություն ամբողջ աշխարհում, պաշտպանել ժողովուրդների անկախության և սոցիալական առաջընթացի իրավունքները։ Այսպիսին է մեր կուսակցության սկզբունքային, անսասան դիրքավորումը։

ՍՄԿԿ-ն մշտապես առաջնորդվում է Հոկտեմբերի դրոշով, լենինյան պատգամներով։ Կուսակցության Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումում մեկ անգամ ևս հավաստվեց, որ մեր կուսակցությունն ընթանում է լենինյան կուրսով, որ նա անհունորեն հավատարիմ է հաջորդայնության լենինյան սկզբունքներին։ Սակայն հաջորդայնությունը միայն ձեռք բերվածի ամրապնդում չէ, որքան էլ որ նշանակալի լինի այն։ Իսկական հաջորդայնությունը նշանակում է կոնկրետ պատմական պայմաններից ելնելով՝ մշտապես զարգացնել կոմունիստական շինարարության տեսությունը և պրակտիկան, ապահովել այնպիսի ստրատեգիայի ու տակտիկայի մշակումը, որոնք ամենից ավելի լիովին են արտահայտում տվյալ ժամանակաշրջանի քաղաքական ու սոցիալ-տնտեսական զարգացման առանձնահատկությունները։

Դեպի ապագան, դեպի առաջիկա քսանամյակն են կանխորոշված վերջին տարիների մեր բոլոր խոշոր ծրագրերը, ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումները։ Այդ ապագայի կողմնորոշիչները առավել ցայտունորեն շեշտված են մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքի այնպիսի ականառու իրադարձությունների մեջ, ինչպիսիք են ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.), հունիսյան (1983 թ.) պլենումները, ՍՍՀՄ 60-ամյակի տոնակատարությունը։ Եվ այսօր մեր երկրի ամբողջ կյանքը, կուսակցության և ժողովրդի բազմաբեղուն, ստեղծարար գործունեությունը ծավալվում է այդ իրադարձությունների վիթխարի ներգործության ներքո։

Կուսակցությունը սովետական ժողովրդի առջև դրել է դժվար, մասշտաբային, բայց և միաժամանակ ռեալ խնդիրներ։ «Ամբողջությամբ վերցրած այդ խնդիրները հանգում են այն բանին, ինչը կարելի կլիներ անվանել զարգացած



սոցիալիզմի կատարելագործում...,— նշել է ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— մեր երկիրը գտնվում է այդ տևական պատմական փուլի սկզբին, որը, իր հերթին, կունենա աճման իր շրջանները, իր աստիճանները»։

ՍՄԿԿ-ն հաշվի է առնում և ընդհանրացնում մասսաների պատմական փորձը, նրանց զինում տեսական նոր դրույթներով ու եզրահանգումներով։ Ահա թե ինչու հատուկ նշանակություն ունի զարգացած սոցիալիստական հասարակության կատարելագործման մասին դրույթը։

Ելնելով այս հիմնադրույթից, ինչպես նաև արդի միջազգային իրադրության առանձնահատկությունների համակողմանի վերլուծությունից, կուսակցությունը մշակել և իրականացնում է սովետական հասարակության հետագա առաջընթացի ստրատեգիական կուրսը։

Հարկավոր է անցում կատարել հանրային արտադրության աճի էքստենսիվ գործոններից դեպի ինտենսիվ գործոնները, լրջորեն բարելավել կառավարումը, պլանավորումը, ամբողջ տնտեսական մեխանիզմը, հասնել այն բանին, որ մեր էկոնոմիկան լիովին մարմնավորի գիտության և արտադրության ինտեգրացումը։ ՍՄԿԿ-ն հենց այս ամենից ելնելով է մշակել ՍՍՀՄ պարենային ու էներգետիկ խոշորամասշտաբ ծրագրերը։ Տնտեսական աճի այդ հիմքերի վրա մշտապես կընդլայնվեն մեր սոցիալական ծրագրերը, կբարելավվեն անհատի համակողմանի զարգացման, նոր մարդու դաստիարակության պայմանները։

Կուսակցության հեռանկարային ստրատեգիական կուրսը ուղղված է այն բանին, որ սովետական մարդիկ է՛լ ավելի լավ ապրեն, որ նրանց աշխատանքը է՛լ ավելի ծանրակշիռ արդյունքներ տա, որ մեր սոցիալիստական կարգերը ավելի լրիվ բացահայտեն իրենց մարդասիրական էությունը, իրենց հնարավորությունները։

Վարելով էկոնոմիկայի անշեղ վերելքի, սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման կուրսը, կուսակցությունը ելնում է լենինյան այն հիմնադրույթից, որ համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա կարելի է ազդել գլխավորապես տնտեսական քաղաքականությամբ։ Այժմ առաջնահերթ նշանակություն են ստանում առկա դժվարությունների, նեղ տեղերի հաղթահարման, թերությունների վերացման, ամենուրեք և ամեն ինչում կուսակցական, պետական, աշխատանքային կարգապահության հաստատման, բարձր կազմակերպվածության կոնկրետ ծրագրերն ու գործնական միջոցները՝ այն հաշվով, որ է՛լ ավելի ամրապնդվեն այն հիմքերը, որոնց վրա հենվում են սոցիալիզմի օրենքները։ Դրան են նպատակամղված ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները։ Այդ որոշումների կատարման ուղղությամբ շատ բան է արված, լայն աշխատանքներ են ծավալված արդի փուլում երկրի զարգացման գլխավոր ուղղություններում։

Միաժամանակ ներկա ժամանակաշրջանում փոխվում են ոչ միայն տնտեսական, այլև գաղափարաքաղաքական գործոնները։ ՍՄԿԿ Կենտկոմի ընթացիկ տարվա հունիսյան պլենումում գաղափարախոսության ու դաստիարակության պրոբլեմների առաջադրումը կապված է նախ և առաջ կուսակցության ստրատեգիական խնդրի՝ զարգացած սոցիալիստական հասարակության կատարելագործման հետ։ Պլենումում շեշտվեց, որ սովետական հասարակությունը թևակոխել է զարգացման այնպիսի փուլ, երբ ոչ միայն հասունացել, այլև անխուսափելի են դարձել որակական նոր փոփոխությունները արտադրողական ուժերում և դրան համապատասխան՝ արտադրական հարաբերությունների կատարելագործումը։ Դրա հետ սերտորեն շաղկապված՝ պետք է լուրջ փոփոխություններ տեղի ունենան մարդկանց գիտակցության մեջ, հասարակության ամբողջ վերնաշենքում։ Այս հիմնադրույթից էլ բխում է գաղափարախոսական աշխատանքը այն մեծ ու բարդ խնդիրների մակարդակին բարձրացնելը, որ լուծում են կուսակցությունն ու ժողովուրդը զարգացած սոցիալիզմի կատարելագործման ընթացքում։

Մեր առջև ծառացած խնդիրների իրականացումը հիմնականում պայմանավորված է նրանով, թե կուսակցական կազմակերպությունները ինչպես կկարողանան համախմբել ժողովրդի հոգևոր եռանդը, բարձրացնել նրա աշ-

խատանքային ու սոցիալական ակտիվությունը, որովհետև, ինչպես նշվեց պլենումում, այդ խնդիրների լուծման ուղին անցնում է մարդու, նրա համոզմունքների, քաղաքական դիրքորոշման, նրա սրտի միջով։ Ահա թե ինչու կուսակցությունը նոր մարդու ձևավորումը համարում է կոմունիստական շինարարության ոչ միայն կարևորագույն նպատակը, այլև անհրաժեշտ պայմանը։

Սովետական ժողովուրդների վերածննդի նոր տարեգրությունը սկսվում է անմոռանալի 1917 թվականից։ Հայ ժողովրդի համար ևս մեծ Հոկտեմբերը փրկության խարիսխ դարձավ, նշանավորեց մեր նորոգ կյանքի արշալույսը։ Հիմա, վեցուկես տասնամյակների բարձունքից, մենք կրկին ու կրկին մեր հայացքն ուղղում ենք դեպի Հոկտեմբերի Ռուսաստանը, ռուս մեծ ժողովուրդը։

Ռուս ժողովրդի պատմական ազատագրական առաքելությունը հայ ժողովրդի ճակատագրում գրանցված է երկու հիշարժան տարեթվերով՝ 1828 թվական, երբ մեր ժողովուրդների դարերից եկող բարեկամությունը սրբագործվեց իսկական եղբայրությամբ, և 1920 թվական, երբ Սովետական Ռուսաստանը զորավիգ կանգնեց բազմաչարչար հայ ժողովրդին. Հայաստան աշխարհում ևս հաղթանակեց սոցիալիստական հեղափոխությունը։

Ժողովրդի հիշողությունը պահում-պահպանում է նրանց անունները, ովքեր այն հեռավոր տարիներին կողմնորոշվում էին դեպի աշխատավորական Ռուսաստանը, բոլշևիկների կուսակցությունը։ Եվ լենինյան գվարդիայի անկոտրում մարտիկների շարքում մեր ժողովրդի լավագույն զավակները պայքարում էին սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար, Հայաստանի ազատագրությունը տեսնում Ռուսաստանի պրոլետարիատի հաղթանակի մեջ։

Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ հայ ժողովրդի ճակատագրում պատմական շրջադարձ տեղի ունեցավ. աղքատությունից ու ֆիզիկական բնաջնջումից դեպի ազգային ու սոցիալական վերածնունդ, ազգային թշնամանքից ու անիշխանությունից՝ սովետական պետականություն ու ժողովուրդների բարեկամություն։ Հեղափոխության կռիվներում ծնվեց Սովետական Հայաստանը և հին աշխարհի փլատակների վրա կոմունիստական կուսակցության գլխավորությամբ սկսեց կառուցել նոր հասարակարգ։

Ներկայումս հանրապետությունում միայն մեկ օրում արտադրվում է 40 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 40 հազար զույգ կոշիկ, 14,5 հազար ժամացույց, ավելի քան 53 հազար տրիկոտաժե արտահագուստ։ Մեկ օրում 301 մարդ բարելավում է իր բնակարանային պայմանները, մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը հասնում է 7,8 միլիոն ռուբլու, հրատարակվում են 697,1 հազար տպաքանակով թերթեր։ Մեկ օրում մեր հանրապետությունում փաստորեն արտադրվում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան 1922 թ. ամբողջ տարում, այնքան էլեկտրաէներգիա, որքան արտադրելու համար 1919 թ. մակարդակով կպահանջվեր 23 տարի։

Շուրջ երկու տասնյակ կարևոր արդյունաբերական արտադրանքի գծով (մոլիբդեն, պղնձարջասպ, սինթետիկ կաուչուկ, շարժական էլեկտրակայաններ, մետաղահատ հաստոցներ, կենտրոնախույս պոմպեր) մեր հանրապետությունը տալիս է միութենական արտադրանքի 5—35 տոկոսը։ Սովետական Հայաստանի 526 միավորումների ու ձեռնարկությունների արտադրանքը 362 անգամ գերազանցում է 1913 թվականի մակարդակը։

1920 թվականի արհեստագործական փոքրիկ ձեռնարկությունից մինչև ամենաբարձր զարգացած արդյունաբերություն՝ հաշվիչ մեքենաներ ու գերճշգրիտ սարքեր, փոքրիկ Ձորագէսից մինչև Հայաստանի ատոմային էլեկտրակայան, էջմիածնի հնօրյա ջրանցքից մինչև Ախուրյանի հզոր ջրամբար, ճանապարհազրկությունից մինչև Երևանի մետրոպոլիտեն, արևից այրված աղուտներից մինչև ծաղկուն այգիներ ու ոռոգելի դաշտեր՝ ահա մեր անցած ուղին։ Խաղաղ, ստեղծարար աշխատանքի այդ տասնամյակները հիմնովին փոխել են երկրի դեմքը, նրա մարդկանց ճակատագիրը։

Այդ տարիները անդադար պայքարի, ստեղծագործական որոնումների, դեպի գալիքը անկասելի ձգտման տարիներ էին, դրանք իրենց հետ բերում էին պատմական լավատեսություն, ինքն իրեն, աշխարհը ճանաչելու և վերափո-





խելու մեծագույն ցանկություն։ Մեր անցած այդ ճանապարհի ամեն մի մետրը գրավվել է սխրանքով ու նաև տառապանքով, հերոսությամբ ու անձնվեր աշխատանքով, կառուցումով ու պայքարով։

Հայ ժողովուրդը թևակոխել է իր վերածննդի յոթերորդ տասնամյակը, ապրելով ստեղծագործ ուժերի ծաղկման մի նոր շրջան, հաստատ ու վստահ նայելով ապագային՝ ապավինելով լենինյան կուսակցության կենսահաստատ գաղափարներին, Սովետական Միության տնտեսական ու պաշտպանական հզորությանը, մեր ժողովուրդների եղբայրությանն ու բարեկամությանը։

Հատկապես տպավորիչ են մեր հանրապետության նվաճումները վերջին տասնամյակում։ Այդ տարիները, որոնք մեծ նվաճումների, մեծ վերափոխումների տարիներ էին, արժանի տեղ կգրավեն Սովետական Հայաստանի տարեգրության մեջ։ Ստեղծարար աշխատանքի այդ ժամանակահատվածը շատ բանով փոխեց հանրապետության նկարագիրը, նրա սոցիալ-կուլտուրական դեմքը։ Այդ տարիներին գործարկվեցին Հայկական ատոմակայանն ու Արփա—Սևան խոշորագույն ջրատարը, Երևանի մետրոպոլիտենի առաջին հերթը, վեր խոյացավ «Զվարթնոց» օդանավակայանի նոր համալիրը, օրերս իր դռները լայնորեն բացեց մարզական-համերգային հոյակերտ կառույցը։ Այս սքանչելի կառույցները մարմնավորում են մեր հասարակության հիանալի առավելությունները՝ սովետական ժողովուրդների միասնությունն ու փոխօգնությունը, ինտերնացիոնալիզմը, դրանք կուսակցության հոգատարության վառ արտահայտությունն են։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության միասնական կոմպլեքսում, ապահովելով արտադրության ճիշտ մասնագիտացում և արդյունավետ միջհանրապետական տնտեսական կապեր, Հայկական ՍՍՀ-ն դարձել է ժամանակակից արդյունաբերության ու բարձր զարգացած գյուղատնտեսության հանրապետություն։

Հանրապետությունում մեծ զարգացում են ստանում արդյունաբերության միանգամայն նոր ճյուղեր՝ ռադիոէլեկտրոնային, ճշգրիտ հաստոցաշինության, ավտոմոբիլային, միկրոկենսաբանական և այլն։ Մեր արդյունաբերական արտադրանքը լայնորեն օգտագործվում է ոչ միայն եղբայրական հանրապետություններում, այլև արտահանվում է աշխարհի շատ երկրներ։

Իր դեմքը լիովին փոխել է հայկական գյուղը։ Կուսակցության ագրարային քաղաքականության շնորհիվ հանրապետության գյուղատնտեսությունը հասել է զարգացման նոր աստիճանի։ Որակական խոր տեղաշարժեր են կատարվել հատկապես վերջին տարիներին՝ ձևավորվել է հզոր մեքենայական պարկ, յուրացվել են հազարավոր հեկտար երբեմնի մեռյալ քարքարոտներ ու աղուտներ, գցվել պտղի, խաղողի նոր այգիներ, իրականացվել է գյուղի սոցիալական զարգացման լայն ծրագիր։

Անցած տարիներին հայ ժողովուրդը վիթխարի նվաճումների է հասել գիտության ու կուլտուրայի ասպարեզներում, դարձել համատարած գրագիտության, գիտական հսկայական պոտենցիալ ունեցող հանրապետություն։

«Սովետական Հայաստանը,— նշել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը,— որը բազմազգ սովետական պետության ընտանիքում պատմական ամենակարճատև ժամանակում դարձավ հզոր ինդուստրիայի, ժամանակակից բարձր զարգացած գյուղատնտեսության, մեծ գիտության և բարձր կուլտուրայի հանրապետություն, մարքսիզմ-լենինիզմի, գիտական սոցիալիզմի գաղափարների կենարար ու ստեղծարար ուժի, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության հոյակապ օրինակ է...»։

Հանրապետության ձեռք բերած հաջողությունները հիրավի մեծ են ու նշանակալի, բայց և քիչ չեն անելիքները։ Էկոնոմիկան զարգացման առավել ինտենսիվ ուղու վրա փոխադրելու կուսակցության առաջադրած կուրսը պահանջում է առանձնահատուկ ուշադրություն դարձնել արտադրության արդյունավետության բարձրացմանը, կուսակցական, պետական, աշխատանքային

կարգապահության ամրապնդմանը, որով և մեծապես պայմանավորված է հնգամյակի պլանների հաջող կատարումը։

Ինչպես հայտնի է, հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման նոր բնագծերը տասնմեկերորդ հնգամյակում և հետագա հինգ տարիների համար նախանշված են ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների փաստաթղթերում, ետհամագումարյան պլենումների որոշումներում։

Մեր հանրապետությունում և՛ արդյունաբերության, և՛ գյուղատնտեսության, և՛ ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի զարգացման տեմպերը բավականին բարձր են։ Դրանք իրականացնելու համար անհրաժեշտ է մինչև վերջ կենսագործել արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, վերջնական բարձր արդյունքների հասնելու սկզբունքային կուրսը։ Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ նպաստել էկոնոմիկայի հիմնական պրոբլեմների լուծմանը, արտադրական ու գիտատեխնիկական պոտենցիալի առավել հմուտ օգտագործմանը, ամբողջ տնտեսական մեխանիզմի ռիթմիկ, անխափան աշխատանքի ապահովմանը։ Դրանց հաջող իրականացման համար անհրաժեշտ է յուրաքանչյուր աշխատողի հասարակական գիտակցության և ստեղծագործական ակտիվության, քաղաքական ու բարոյական կուլտուրայի, բարեխղճության ու պատասխանատվության հետագա բարձրացում։ Կուսակցական կոմիտեները, բոլոր սկզբնական կազմակերպությունները իրենց ամբողջ գաղափարախոսական, մասսայական-քաղաքական, կազմակերպչական աշխատանքը պետք է կառուցեն վերոհիշյալ պահանջների ոգով։

Հանրապետությունում տիրում է քաղաքական ու աշխատանքային բուռն վերելքի մթնոլորտ։ Կոմունիստների, բոլոր աշխատավորների աշխատանքի ու պայքարի նշանաբանն է՝ բոլոր ուժերը կուսակցության ծրագրերի իրականացմանը։

Այն ամենը, ինչին մեր հանրապետությունը, մեր ժողովուրդը հասել են անցած տասնամյակների ընթացքում, սկիզբ է առել Հոկտեմբերից, նրա կենարար շնչից ու գաղափարներից։

Մեր հաղթանակները ձեռք են բերվել Լենինի կուսակցության ղեկավարությամբ։ Մեր ժողովուրդը միշտ հավատացել է կուսակցությանը, և այդ հավատը օգնել է նրան կառուցելու իր նոր կյանքը, հաղթահարելու իր ճանապարհին ծառացած բոլոր դժվարությունները։

Այդ ընթացքում միշտ մեզ հետ են եղել մեր բարեկամները՝ ռուս մեծ ժողովուրդը, սովետական մյուս ժողովուրդները։ Մենք միշտ միաբան ենք, միանական են մեր գործերն ու խոհերը, մեր երազանքները։

Հանրապետության բոլոր կոմունիստները, բոլոր աշխատավորները, է՛լ ավելի սերտորեն համախմբված կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը, տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում նորանոր հաջողություններով կբազմապատկեն մեր մեծ հայրենիքի տնտեսական ու հոգևոր պոտենցիալը։

---

ՍՄԿԿ XXVI համագումարի

որոշումները գործողության մեջ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ԳՈՅԱՎՈՐՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Յ. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ**
ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ գոյավորումն ու զարգացումը կոմունիստական ֆորմացիայի կազմավորման օրինաչափությունն է։ Ուստի պատահական չէ, որ սոցիալիստական ընկերակցության երկրների բոլոր կուսակցական փաստաթղթերում սոցիալիստական ապրելակերպի արմատավորումը առաջադրվում է որպես նոր հասարակարգի կառուցման կարևորագույն ծրագրային խնդիր։ Պատմականորեն սոցիալիստական առաջին կենսաձևը եղավ բազմազգ սովետական ժողովրդի ապրելակերպը, ժողովուրդ, որը լենինյան կուսակցության ղեկավարությամբ ընթանում է դեպի կոմունիզմ, ողջ մարդկությանը ցույց տալով սոցիալական առաջընթացի ուղին։

Մեր երկրում սոցիալիստական շինարարության առաջին իսկ քայլերից նրա օրգանական մասն է եղել աշխատավորների նոր ապրելակերպի հաստատումը։ Այն գոյավորվել է բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և առաջավոր մտավորականության դաշինքի, մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների եղբայրական բարեկամության ամրապնդման հետ միասին։

ՍՄԿԿ XXVI համագումարը կոնկրետ սահմանեց սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման ուղիները։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ առանձնացված էր հատուկ բաժին սոցիալիստական ապրելակերպի նյութական և հոգևոր հիմունքների ամրապնդման և նոր մարդու կերպավորման վերաբերյալ։ Այստեղ շեշտված է, որ կուսակցության սոցիալական քաղաքականության անբաժանելի բաղադրամասերից մեկը սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման նպատակով տարվող աշխատանքն է։

Ընդհանրապես զարգացած սոցիալիզմի ըմբռնման և, մասնավորապես, սոցիալիստական ապրելակերպի պրոբլեմների ստեղծագործական մշակման գործում առանձնահատուկ նշանակություն ունեն ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և 1983 թ. հունիսյան պլենումների որոշումները և ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Յու. Վ. Անդրոպովի ծրագրային ելույթները։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում Յու. Վ. Անդրոպովը, խոսելով արդի պայմաններում մեր կուսակցության ծրագրի նկատմամբ առաջադրվող պահանջների մասին, շեշտեց, որ այն «նախ և առաջ պետք է լինի զարգացած սոցիալիզմի պլանաչափ ու համակողմանի կատարելագործման, հետևաբար նաև դեպի կոմունիզմ հետագա առաջընթացի ծրագիր» (ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի նյութերը։ «Հայաստան» հրատ., 1983 թ., էջ 10)։ Այդ ծրագրի բաղկա-

ցուցիչ մասն է սովետական ապրելակերպի կատարելագործումը։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշման մեջ մեր կուսակցության կուրսը սահմանող հիմնական խնդիրների թվում նշված է սովետական ապրելակերպի հիմքերի ամրապնդումը։ Որոշման մեջ սովետական ապրելակերպի պրոպագանդման վերաբերյալ հատուկ կետում ցույց են տրված այն հիմնական արժույթները, որոնց հետ նա կապված է։ Այնտեղ ասված է. «Հարկավոր է հմտորեն և ստեղծագործաբար պրոպագանդել սովետական ապրելակերպը, սոցիալիզմի հիմնարար արժույթները։ Հարկավոր է պաշտպանել հասարակական պրակտիկայում եղած ամենաառաջավորը, հաստատել և վառ կերպով բացահայտել աշխատավոր մասսաների կյանքի նոր որակը, որը ներառնում է կոլեկտիվիզմն ու ընկերականությունը, բարոյական առողջությունն ու սոցիալական լավատեսությունը, վաղվա օրվա հանդեպ յուրաքանչյուր մարդու վստահությունը, աշխատանքի և սպառման, վարքի ու կենցաղի բարձր կուլտուրան։ Դաստիարակչական աշխատանքում հաջողությունն աներևակայելի է առանց բաշխման սոցիալիստական սկզբունքի խստիվ կիրառման, սպառման հանրային ֆոնդերի ճիշտ օգտագործման համար մղվող հետևողական պայքարի» (Նույն տեղը, էջ 82—83)։

Սոցիալիստական ապրելակերպի զարգացման պրոբլեմին առաջնահերթ ուշադրություն է նվիրվում նաև սոցիալիստական ընկերակցության երկրների եղբայրական կուսակցություններում, նրանց վերջին համագումարների փաստաթղթերում։

Վերջին տարիներս մեր երկրում և սոցիալիստական մյուս երկրներում մեծ աշխատանք է ծավալվել սոցիալիստական ապրելակերպի էությունն ու հիմնական գծերը, նրա կատարելագործման ուղիները հետազոտելու նպատակով։ Միևնույն ժամանակ մեծ ուշադրություն է նվիրվում սոցիալիստական ու բուրժուական ապրելակերպերի միջև եղած արմատական հակադրության բացահայտմանը։ Այժմ այս հարցը գտնվում է արդի գաղափարախոսական պայքարի կենտրոնում։

Սոցիալիստական ապրելակերպը կոմպլեքսային պրոբլեմ է, որն ընդգրկում է սոցիալական պրակտիկայի բոլոր ոլորտները։ Ուստի բնական է, որ այդ պրոբլեմն ուսումնասիրում են հասարակագիտության բոլոր բնագավառների մասնագետները՝ փիլիսոփաները, տնտեսագետները, գիտական կոմունիզմի ներկայացուցիչները, պատմաբանները, իրավաբանները, ազգագրագետները, հոգեբանները և ուրիշներ։ Նրանց ջանքերով կատարվել է օգտակար ու արժեքավոր շատ բան, որը տեսական ու գործնական մեծ նշանակություն ունի։ Պատշաճը հատուցելով կատարված աշխատանքին, պետք է նշել, որ ոչ բավարար լուսաբանված է մնում այնպիսի մի հարց, ինչպիսին է ինտերնացիոնալի և ազգայինի դիալեկտիկան սովետական ժողովրդի ապրելակերպում։ Մինչդեռ մեր կուսակցությունը սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում մշտական ուշադրություն է դարձրել այդ հարցին՝ որպես կոմունիստական ֆորմացիայի կազմավորման ու զարգացման արմատական պրոբլեմներից մեկի։

«ՍՄԿԿ-ի կոլեկտիվ միտքը գիտական կոմունիզմը հարստացրեց զարգացած սոցիալիզմի մասին ուսմունքով։ Կուսակցությունը սահմանեց, որ սովետական հասարակությունը գտնվում է պատմականորեն տևական այդ փուլի սկզբում, բացահայտեց դրա զարգացման ռեալ դինամիկան։ Դա պահանջում է ակտիվացնել գիտական որոնումը, ապահովել գիտական հիմնարկությունների, բոլոր հասարակագետ գիտնականների վճռական շրջադարձը դեպի երկրի առջև ծառացած հիմնական գործնական խնդիրները» (Նույն տեղը, էջ 79)։

Ռեալ գոյություն ունեցող և նոր առաջացող հակասությունները ժամանակին հաղթահարելու հիման վրա սոցիալիստական հասարակության միասնության անշեղ ամրապնդումը հասուն սոցիալիզմի կատարելագործման և սովետական ապրելակերպի հետագա զարգացման կարևորագույն օրինաչափությունն է։

Կոմունիստական ֆորմացիայի առաջացման նոր օրինաչափությունների թվում առանձնահատուկ տեղ ունեն սոցիալիստական ապրելակերպի ձևավո-



րումն ու զարգացումը և դրա աստիճանական վերաճումը կոմունիստական ապրելակերպի։ Այդ օրինաչափությունը ամենից առաջ բնութագրում է հասարակական կեցության այնպիսի նոր ձևերի հաստատումն ու կատարելագործումը, ինչպիսիք են ազատ աշխատանքը, ազատ մարդկանց ընկերական համագործակցությունն ու փոխադարձ օգնությունը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, կոլեկտիվիզմը, ինտերնացիոնալիզմը։ Երկրորդ, սոցիալիստական ապրելակերպի զարգացումը կոմունիստական ֆորմացիայի լինելության օրինաչափությունն է այն պատճառով, որ անխզելիորեն կապված է կոմունիստական շինարարության հիմնական խնդիրների՝ նոր հասարակության նյութատեխնիկական բազայի ստեղծման, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման, համակողմանիորեն զարգացած անհատի դաստիարակության հետ։

Երրորդ, սոցիալիստական ապրելակերպի զարգացումը անխզելիորեն կապված է նոր հասարակարգի հիմնական օրենքի գործողության հետ, որի էությունն է, ինչպես մատնանշել է Վ. Ի. Լենինը կուսակցության առաջին ծրագիրը մշակելիս, ապահովել հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունն ու ազատ համակողմանի զարգացումը։ Նա այդ հարցին վերստին անդրադարձել է կուսակցության երկրորդ ծրագիրը կազմելիս, նոր հասարակարգի բարձրագույն նպատակը բնորոշելով որպես «հասարակական-արտադրողական պրոցեսի պլանաչափ կազմակերպում հասարակության բոլոր անդամների բարեկեցության ապահովման և համակողմանի զարգացման համար...» (ԵԼԺ, հ. 32, էջ 188)։ Այստեղ շեշտվում է ողջ ազատագրված ժողովրդի համար իսկապես սոցիալական հավասարության հասնելու մարքսիստական գաղափարը։ Ամեն ինչ ժողովրդի համար, հանուն ժողովրդի՝ որպես կոմունիզմի գլխավոր կերտողի լիակատար բարեկեցության ու համակողմանի զարգացման— այս է նոր հասարակության բարձրագույն նպատակը ու դրա իրականացման մայրուղին։ Կոմունիստական ֆորմացիայի բարձրագույն նպատակի նման գիտական ըմբռնումը որոշում է սոցիալիստական ապրելակերպի բոլոր սուբյեկտների խոհերն ու գործողությունները։

Վ. Ի. Լենինը մեր կուսակցության այդ մեծ նպատակին հասնելը կապում էր կայուն խաղաղության հետ։ Նա շեշտում էր, որ մենք ընթանում ենք «դեպի կոմունիստական հասարակության, ընդհանուր բարեկեցության և կայուն խաղաղության լուսավոր ապագան» (ԵԼԺ, հ. 36, էջ 96)։ Կոմունիստական շինարարության երկմիասնական խնդրի լուծումը՝ ընդհանուր բարեկեցության և կայուն խաղաղության հասնելը միշտ եղել է մեր կուսակցության իդեալը, սոցիալիստական գաղափարախոսության և սոցիալիստական ապրելակերպի բնորոշ հատկանիշը։ Զարգացած սոցիալիզմի կատարելագործման հետ զուգընթաց ավելի ու ավելի բարենպաստ պայմաններ են ստեղծվում այդ իդեալի կենսագործման համար։ Այդ մասին են վկայում սովետական մարդկանց կենսապայմանների բարելավման նպատակով ՍՄԿԿ XXVI համագումարում ընդունված «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում», ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի առաջադրած պարենային ծրագրում նախատեսված միջոցառումները։ Այդ փաստաթղթերում նշված սոցիալական նպատակներին հասնելը կուսակցությունը կապում է ռեալ սոցիալիզմի միջազգային դիրքերի ամրապնդման հետ։

Ապրելակերպի զարգացման խնդիրների առաջադրումը, այդ խնդիրների գործնական քաղաքական նշանակության բարձրացումը անհրաժեշտ են դարձնում հետազոտել սոցիալիստական ապրելակերպի էությունը և հասարակական կեցության զանազան ոլորտներում դրա դրսևորման ձևերը, ինտերնացիոնալի ու ազգայինի դիալեկտիկան ապրելակերպի զարգացման պրոցեսում։

Ապրելակերպը ընդհանուր սոցիոլոգիական կատեգորիա է։ Այն արտացոլում է յուրաքանչյուր հասարակական-տնտեսական ֆորմացիայի զարգացման որոշակի կողմերը։ Ապրելակերպի գիտական բնորոշումը ամենաընդհանուր ձևով առաջին անգամ շարադրել են Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը իրենց վաղ շրջանի երկերում։ Դեռ 1844 թվականին Կ. Մարքսը գրել է, որ «գիտակցական





դասակարգերի, աշխատավորների բոլոր խավերի, իսկ հետևաբար, աշխատավորների ու բանվոր դասակարգի բաղադրամասը կազմող բոլոր անհատների գիտակցականությունը, կազմակերպվածությունը, հեղափոխականությունն ու մարտունակությունը:

Մարքսիզմ-լենինիզմի գիտական կոնցեպցիայի լույսի ներքո քննության առնելով ապրելակերպը՝ որպես ընդհանուր սոցիոլոգիական կատեգորիա, կարելի է, մեր կարծիքով, դրան տալ այսպիսի սահմանում. ապրելակերպը հասարակության բոլոր սոցիալական խավերի, ազգերի ու ազգությունների, կուսակցությունների և հասարակական մյուս կազմակերպությունների, աշխատավորական և ընտանեկան բջիջների և, վերջապես, անհատների կենսագործունեության ընդհանրացված ու խտացված արտահայտությունն է: Համապատասխանաբար սոցիալիստական ապրելակերպը հարկավոր է դիտել որպես սոցիալիստական հասարակության բոլոր սոցիալական սուբյեկտների ամբողջական կենսագործունեություն, որը որոշվում է օբյեկտիվ պայմաններով, ամենից առաջ՝ արտադրության սոցիալիստական եղանակով:

Սոցիալիստական ապրելակերպի պրոբլեմների ուսումնասիրման պրոցեսում հաճախ շոշափվում է այն հարցը, թե երբ է առաջանում սոցիալիստական ապրելակերպը և որոնք են նրա ձևավորման հիմնական փուլերը: Այս հարցին տրվում են ոչ միանշանակ պատասխաններ: Որոշ հեղինակներ պնդում են, որ սոցիալիստական, ավելին՝ կոմունիստական ապրելակերպը առաջանում է դեռ կապիտալիզմի ընդերքում՝ պրոլետարիատի ու բուրժուազիայի դեմ նրա պայքարի երևան գալու հետ: Մյուսները գտնում են, որ սոցիալիստական ապրելակերպը սկսում է կազմավորվել միայն զարգացած սոցիալիզմի պայմաններում: Այս դրույթները ճշմարտության մաս կամ որոշ բաժին են պարունակում: Բայց գիտությունն ընդհանրապես և հատկապես գիտական կոմունիզմը կոչված են տալու հնարավորին չափ ամբողջական, ավելի լրիվ ճշմարտություն:

Քննության առնելով սոցիալիստական ապրելակերպի ծագման, առաջացման ու զարգացման օրինաչափությունները, մեր կարծիքով, կարելի է հանգել հետևյալ հետևության. սոցիալիզմի նյութական և հոգևոր նախադրյալները, այդ թվում նաև սոցիալիստական ապրելակերպի նախադրյալներն ու նրա առանձին տարրերը առաջանում են դեռևս կապիտալիզմի ընդերքում, բուրժուազիայի դեմ պրոլետարիատի մղած դասակարգային պայքարի պրոցեսում: Այդ ընթացքում առաջանում են պրոլետարական ապրելակերպի զանազան կողմերը՝ դասակարգային հեղափոխական համերաշխությունը, համախմբվածությունը կապիտալիստական շահագործման դեմ մղվող մարտում և այլն: Ըստ երևույթին, այս պրոցեսները նկատի ունենալով, որոշ գիտական աշխատողներ ու դասախոսներ կապիտալիզմի ժամանակաշրջանի պրոլետարների ու պրոֆեսիոնալ հեղափոխականների ապրելակերպը լրիվ նույնացնում են սոցիալիստական ապրելակերպի հետ: Մեր կարծիքով, ճիշտ ու դիալեկտիկական է պրոլետարական ապրելակերպի առանձին կողմերը դիտել որպես սոցիալիստական ապրելակերպի սաղմեր, որը, որպես շահագործումից ազատագրված աշխատանքի վրա հիմնված ամբողջական, որակապես նոր երևույթ, առաջանում է միայն սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո:

Նոր ապրելակերպի առաջացման ու զարգացման գլխավոր փուլերը համապատասխանում են կոմունիստական ֆորմացիայի ձևավորման հիմնական փուլերին:

Սոցիալիստական ապրելակերպի առաջացման առաջին փուլն ընդգրկում է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանը, երբ հիմնականում սոցիալիզմի կառուցման հետ բանվոր դասակարգի ստեղծարար կենսագործունեության նոր սկզբունքները վարքագծի ընդհանուր նորմեր են դառնում աշխատավորների մեծամասնության համար: Արդեն այդ փուլում սովետական մարդիկ գործով ցույց տվեցին նոր ապրելակերպի ողջ կենսահաստատ ուժը Հայրենական մեծ պատերազմի ժամանակաշրջանում:

Սոցիալիստական ապրելակերպի զարգացման երկրորդ փուլն ընդգրկում է զարգացած սոցիալիզմի կառուցման ողջ ժամանակաշրջանը, որի ստեղծ-



մամբ վերջնականապես ձևավորվում է այդ որակապես նոր հասարակական երևույթը: Պատահական չէ, որ այս փուլում միայն քաղաքական և գիտական գրականության մեջ սկսել են այն ուսումնասիրել որպես հրատապ նոր պրոբլեմ:

Երրորդ՝ ժամանակակից փուլը, բնութագրվում է սոցիալիստական ապրելակերպի, որպես կոմունիզմի կառուցման կարևորագույն կողմի, կատարելագործմամբ, որի իմացությունն ամբողջությամբ դրսևորվում է կուսակցության ստրատեգիայի՝ այս փուլում տեղի ունեցող հետագա զարգացման պրոցեսում:

Սոցիալիստական ապրելակերպի ձևավորման հիմնական փուլերը ժամանակի տեսակետից համընկնում են սովետական ժողովրդի՝ որպես միասնական սոցիալական և ինտերնացիոնալ հանրության, ձևավորման փուլերին: Միասնական բազմազգ ժողովուրդն ունի նաև իրեն համապատասխանող միասնական սովետական ապրելակերպ, որը պատմականորեն առաջին սոցիալիստական կենսաձևն է: Բայց զարգացած սոցիալիզմի արդի փուլում միասնական սովետական ապրելակերպում դեռևս առկա են առանձնահատկություններ, որոնք բնորոշ են բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, սովետական մտավորականությանը: Նրբերանգներ ու յուրահատկություններ կան նաև ազգերի ապրելակերպում, քաղաքային և գյուղական կացութաձևերում, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մարդկանց, ներդասակարգային զանազան սոցիալական խմբերի կենսագործունեությունում:

Դասակարգային և ներդասակարգային տարբերությունների հաղթահարման հետ զուգընթաց, որը ձեռք է բերվելու զարգացած սոցիալիզմի համասեռության ավելի բարձր աստիճանի և դեպի լիակատար սոցիալական միատարրություն հետագա առաջընթացի շրջանակներում, բոլոր սոցիալական խմբերում, ազգերի ու ազգությունների կյանքում ավելի ու ավելի են գերակշռելու միասնական սոցիալիստական ապրելակերպի ընդհանուր հատկանիշները, որոնք բնութագրում են հասարակության աճող ինտեգրացումն ու ինտերնացիոնալացումը: Այս դիալեկտիկական պրոցեսը կշարունակվի ընդհուպ մինչև սոցիալիստական ապրելակերպի վերաճումը կոմունիստականի:

Սոցիալ-դասակարգային տարբերություններից զերծ կոմունիստական ապրելակերպի զարգացման սկզբնական աստիճաններում դեռևս գոյություն կունենան ազգային տարբերությունների հետ կապված նրբերանգներ: Եվ դա միանգամայն հասկանալի է, քանի որ ազգային տարբերությունները վերանում են զգալիորեն ավելի դանդաղ, քան սոցիալ-դասակարգային տարբերությունները: Ավելին, եթե նախապես առանձին երկրների շրջանակներում դասակարգային տարբերությունները կվերանան դեռ զարգացած սոցիալիզմի փուլում, ապա ազգային տարբերությունները վերջնականապես կվերանան համաշխարհային կոմունիզմի լիակատար հաղթանակի պայմաններում միայն, ըստ որում նրա վերընթաց զարգացման բարձրագույն աստիճաններում: Լենինը սովորեցնում էր, որ համաշխարհային կոմունիզմի հաստատմամբ միայն «կստեղծվի ազգերի ավելի արագ մերձեցում ու միավորում, որը կավարտվի պետության մահացմամբ» (ԵԼԺ, հ 30, էջ 28): Մենք այժմ ավելի շատ բան գիտենք այն մասին, թե ինչպիսին կլինեն միասնական ինտերնացիոնալ հատկանիշները ապագա սերունդների ապրելակերպում, քան այն, թե ինչպիսին կլինեն ազգային առանձնահատկությունների դրսևորումները: Դա ցույց կտա ապագան: Մենք գիտենք, որ միասնական կոմունիստական ապրելակերպի ձևավորման մայրուղին ինտերնացիոնալի և ազգայինի դիալեկտիկական զուգակցումն է՝ ընդհուպ մինչև դրանց կատարյալ միաձուլումը դասակարգային բաժանման և սոցիալական տարբերություններից զերծ համամարդկային ինտերնացիոնալ միասնության մեջ:

Սոցիալիստական ապրելակերպն ունի դրսևորման տարբեր ձևեր հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր ոլորտներում: Տնտեսական ոլորտում սոցիալիստական ապրելակերպի առանձնահատկություններն ու բնորոշ հատկանիշները որոշվում են հասարակական սեփականության տիրապետությամբ, ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման պլանաչափությամբ, էկոնոմիկայի ղեկավարման գործում դեմոկրատիզմի ու ցենտ-

ծագործաբար աշխատել, առանց գործազուրկ մնալու երկյուղի, անվճար օգտ-
վել բժշկական սպասարկումից, վստահ լինել իր ապագայի նկատմամբ և
այլն: Բոլոր այս և մյուս իսկական մարդկային իրավունքները սահմանա-
դրականորեն երաշխավորված են սովետական պետության կողմից: Սոցիա-
լիստական հասարակության անդամների բացարձակ մեծամասնությունը, օգտ-
վելով այդ իրավունքներից, ցույց են տալիս սովետական հասարակության և
պետության հանդեպ իրենց պարտականությունների կատարման օրի-
նակ, հաջողությամբ աշխատում է կոմունիստական շինարարության բոլոր
ճակատներում: Բայց հասարակության մի մասը կազմում են այնպիսի մար-
դիկ, որոնք չարաշահում են սոցիալիզմի առավելությունները՝ օգտվում են
երաշխավորված իրավունքներից և մոռանում իրենց պարտականությունները
հասարակության հանդեպ: Սովետական մարդկանց այդ մասի մոտ իրենց
իրավունքների ու պարտականությունների նկատմամբ ունեցած վերաբերմուն-
քում նման տարբերությունը ծնում է մեր կյանքի ստվերոտ կողմերը:

Բացասական երևույթներ դրսևորվում են հասարակական կյանքի զանա-
զան ոլորտներում: Սովետական հասարակագետների կարևորագույն խնդիրն
այն է, որ ՍՄԿԿ ծրագրային փաստաթղթերի ոգով բացահայտեն այդ երևույթ-
ների կոնկրետ պատճառները և ցույց տան դրանք վերացնելու իրական ուղի-
ները: Սովորաբար բացասական երևույթների պատճառները բացատրելիս
վկայակոչում են կապիտալիզմի վերապրուկները: Սա ճիշտ է, բայց ամենևին
ոչ բավարար: Այդպիսի երևույթներ առաջանում են նաև աշխատանքի կազմա-
կերպման սոցիալիստական սկզբունքների և մարդկանց կենսագործունեության
այլ կարգի խախտումների, բարոյական նորմերի պահպանման նկատմամբ
սոցիալական վերահսկողության թուլացման հետևանքով: Այս պատճառների
և աշխատավորական կոլեկտիվներում քաղաքական-դաստիարակչական աշ-
խատանքի թերությունների հետևանքով կապիտալիզմի վերապրուկները հող
են գտնում աշխուժացման ու տարածման համար: Դրանց դեմ մղվող պայքա-
րում հարկավոր է օգտագործել սոցիալիզմ կառուցողների ավագ սերնդի դաս-
տիարակության փորձը, հաշվի առնելով նոր, հատկապես հոգևոր պահանջ-
մունքների բավարարման հարաճուն հնարավորությունները:

Սոցիալիստական ապրելակերպի կատարելագործումն ու դրա ստեղծա-
նական վերաճումը կոմունիստականի պահանջում են հաղթահարել անհատի
ներքին զարգացման մեջ գոյություն ունեցող հակասությունները նրա կենսա-
գործունեության նոր գծերի և հնի ամեն տեսակ մնացուկների միջև: Նորի և
հնի միջև մղվող այդպիսի պայքարում է ձևավորվում ամբողջական, համա-
կողմանիորեն զարգացած ներդաշնակ անհատը: Իրական կյանքում հասա-
րակության մեջ զանազան դիրք գրավող մարդկանց մի որոշակի մասի մոտ
հակասություն կա կոմունիստական գիտելիքների և ներքին համոզմունքների
անհասունության միջև, մեծադղորդ խոսքերի ու վատ գործերի միջև, կոմու-
նիստական մարդասիրության վեհ սկզբունքների քարոզի ու քաղքենիական
հոգեբանության միջև, կոլեկտիվիզմի կոչերի և միայն անձնական բարեկե-
ցության եսամոլ ձգտումի միջև և այլն, և այլն: Բարոյական այս երկատվա-
ծությունը անհամատեղելի է սոցիալիստական ապրելակերպի հետ:

Փորձը ցույց է տալիս, որ համեմատաբար ավելի հեշտ է կոմունիստական
գիտելիքներ ձեռք բերել, քան դրանք դարձնել պրակտիկայում իրականացվող
հաստատուն կոմունիստական համոզմունքներ: Եվ այստեղ գործնական վե-
րափոխիչ գործունեությունը հանդես է գալիս որպես չափանիշ՝ ստուգելու
համար, թե մարդու ստացած գիտելիքները լոկ բառային բալաստ են, թե
պրակտիկայում ծառացող պրոբլեմների հաջող լուծման ներգործուն միջոց:

Այստեղ նկատենք, որ նոր հասարակության բոլոր սուբյեկտների առօրյա
կենսագործունեության մեջ դրսևորվում է հեղափոխական թափը կոմունիս-
տական գործարարության հետ զուգակցելը: Վերջինս ենթադրում է բնության
և հասարակական զարգացման օրենքների խոր իմացության վրա հիմնված
լայն մտահորիզոն, հանգամանորեն ու խոր մտածված պրոբլեմների համար-
ձակ առաջադրումներ, որոնք հաշվի են առնում դրանց լուծման հետևանքները:
Կոմունիստական գործարարությունը հասարակության բոլոր սուբյեկտների



կենսագործունեության մեջ ոչ միայն անխոհեմ գործամոլության և նեղմիտ
պրակտիցիզմի հակաթույնն է, այլ, ամենագլխավորը, նա հասարակության և
անհատի զարգացման մեջ գոյություն ունեցող և նոր առաջացող հակասու-
թյունների հաղթահարման կարևորագույն միջոց է: Ոչ հակամարտական հա-
կասությունների ժամանակին բացահայտման ու հաղթահարման մշտապես
գործող մեթոդ են քննադատությունն ու ինքնաքննադատությունը: Կուսակցու-
թյունը յուրաքանչյուր կոմունիստից, յուրաքանչյուր կուսակցական կազմա-
կերպությունից պահանջում է զարգացնել քննադատությունն ու ինքնաքննա-
դատությունը, համարձակորեն բացահայտել թերություններն ու վրիպումները,
ակտիվորեն ձգտել դրանց վերացմանը, վճռականորեն ու հետևողականորեն
պայքարել ինքնահանգստացման, պարադայնության, մեծամտության դեմ, հա-
կահարված տալ քննադատությունը ճնշողներին:

Մեր կարծիքով, եթե հասարակության մեջ զանազան հակասությունները
հաղթահարելու համար գլխավոր նշանակություն ունի քննադատությունը, ապա
անհատի ներքին երկատվածությունը հաղթահարելու համար առաջնահերթ
նշանակություն ունի ինքնաքննադատությունը: Բայց դրանց համար ընդհա-
նուր է ստեղծարար ու կոնստրուկտիվ բնույթը, որը բացառում է դեմագոգիան
և ինքնախարազանումը, որոնք և հասարակության, և անհատի համար դժվա-
րացնում են առաջընթաց շարժումը դեպի կոմունիզմ: Վ. Ի. Լենինը առանձին
մարդկանց կողմից հակահասարակական էքսցեսների հնարավորությունը կան-
խատեսել է նույնիսկ կոմունիզմի ժամանակ: Այս հարցում ևս մարքսիզմ-
լենինիզմի կանխատեսումները համընկնում են: Կոմունիստական ֆորմացիայի
պայմաններում, երբ որպես զարգացման արմատական աղբյուր կմնան լոկ
ոչ անտագոնիստական հակասությունները, կարող են լինել, ինչպես գրել է
Մարքսը, առանձին հակահասարակական էքսցեսներ «անհատական անտագո-
նիզմի» իմաստով (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 13, с. 7—8): Ան-
հատի երկատվածության վերացումը, որի մասին խոսվեց վերևում, չի նշա-
նակում, որ կոմունիզմի ժամանակ կվերանան բոլոր հակասությունները ան-
հատի զարգացման գործում: Բայց այդ հակասությունները այլևս կապված
չեն լինի կապիտալիզմի վերապրուկների հետ, այլ կարտացոլեն կոմունիզմի
վերընթաց զարգացման բնորոշ գծերը: Այսպես, կարելի է կանխատեսել հա-
կասություն անհատի անշեղորեն աճող ընդունակությունների և յուրաքանչյուր
ավյալ ժամանակահատվածում դրանց իրականացման սահմանի միջև: Այն
կհաղթահարվի մարդկանց պրակտիկ գործունեության պրոցեսում: Այդ կարգի
հակասություններ արդեն գոյություն ունեն զարգացած սոցիալիզմի պայման-
ներում:

Անհատի զարգացման գործում եղած այդ հակասությունները ողջ կոմու-
նիստական ֆորմացիայի հիմնական շարժիչ հակասության՝ հասարակության
բոլոր անդամների ստեղծարար գործունեության հիման վրա հասարակական
արտադրության անընդհատ աճի և ժողովրդական մասսաների ու յուրաքանչյուր
անհատի նոր առաջացող պահանջմունքների միջև եղած հակասության դրսե-
վորման կոնկրետ ձևերից են: Ապագայում ևս գիտակցական ստեղծագործական
աշխատանքը կլինի ապրելակերպի միջուկը: Այս մասին հարկ է լինում խոսել
այն պատճառով, որ մեր գիտական գրականության մեջ երբեմն կարելի է
հանդիպել այնպիսի պնդման, որ կոմունիզմի ժամանակ կվերանան տարբե-
րությունները աշխատաժամանակի ու ազատ ժամանակի միջև: Իհարկե, կո-
մունիստական հասարակարգում մարդկանց ապրելակերպի մեջ էապես կփոխ-
վի աշխատանքային և ազատ ժամանակի հարաբերակցությունը, բայց երբեք
չեն վերանա դրանց տարբերությունները:

Արդի պայմաններում անհատի կոմունիստական դաստիարակության մեջ
անհրաժեշտ է մշտական ուշադրություն նվիրել դասակարգային գիտակցու-
թյան ձևավորմանը: Այստեղ ևս ծագում են նոր պրոբլեմներ, որոնք պահան-
ջում են գիտականորեն հիմնավորված լուծումներ: Օրինակ, ծագում է այս-
պիսի մի կենսական պրոբլեմ՝ ինչպես զուգակցել առաջին հայացքից անհա-
մատեղելի պրոցեսները՝ շարժումը դեպի անդասակարգ հասարակարգ և դա-
սակարգային գիտակցության զարգացումը հատկապես կոմունիզմ կառուցող-

ների երիտասարդ սերնդի մեջ: Այս իրական պրոբլեմը լուծվում է յուրաքանչյուր անհատի սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու միջոցով, այսինքն, որպեսզի նա խորապես ըմբռնի այն, որ մեր երկրում հաջողությամբ կոմունիզմ կառուցելով և իմպերիալիստական ուժերի ամեն տեսակ ոտնձգություններից անձնվիրաբար այն պաշտպանելով, մենք դրանով իսկ գործնականում ձգտում ենք հասնել համաշխարհային բանվոր դասակարգի վերջնական նպատակին:

Սոցիալիստական ապրելակերպը ոչ թե տեղական, ռեգիոնալ, այլ ինտերնացիոնալ երևույթ է, որը համակողմանիորեն արտահայտում է նոր հասարակարգի էությունը: Պրոբլեմի այս կարևորագույն կողմը դեռ անբավարար է լուսաբանված մեր գրականության մեջ, թեպետ այն ունի ոչ միայն տեսական, այլև գործնական նշանակություն սոցիալիստական ընկերակցության երկրների համար, միջազգային կոմունիստական շարժման բոլոր ջոկատների համար, որոնք կարող են, հաշվի առնելով իրենց ազգային առանձնահատկությունները, ստեղծագործաբար օգտագործել այն ընդհանուրը, ինտերնացիոնալը, որն արդեն ստուգված է ՍՍՀՄ-ում սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության պրակտիկայով:

Գիտական կոմունիզմի, ինչպես և ամբողջ մարքսիզմ-լենինիզմի արմատական ընդհանուր մեթոդաբանական հիմքը մատերիալիստական դիալեկտիկան է, որը հնարավորություն է ընձեռում համակողմանիորեն ուսումնասիրելու սոցիալիստական ապրելակերպը: Այստեղ ընդհանուրը ամենից առաջ ինտերնացիոնալն է, իսկ առանձինը հանդես է գալիս որպես ազգայինը: Ընդհանուրը, ինտերնացիոնալը գոյություն ունի առանձինի, ազգայինի մեջ, վերջինը անխզելիորեն կապված է ինտերնացիոնալի հետ: Իսկական ազգային նվաճումները ազգի առաջընթացն ու ընդհանրապես սոցիալիստական հասարակության հաջող զարգացումն ապահովում են այն պատճառով, որ հենվում են պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վրա: Բացահայտելով այդ դիալեկտիկան, Ֆ. Էնգելսը գրել է, որ «իսկական ազգային գաղափարները... միևնույն ժամանակ միշտ իսկական ինտերնացիոնալ գաղափարներ են» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 33, с. 374): Մարքսիզմ-լենինիզմը պահանջում է ոչ միայն միասնություն, այլև տարբերություն տեսնել ինտերնացիոնալի ու ազգայինի միջև: Քանի որ ինտերնացիոնալը արտահայտում է ընդհանուրը, իսկ ազգայինը՝ առանձինը, ապա մեթոդաբանական այս նախադրյալից հետևում է, որ քաղաքականության մեջ, որտեղ խոսքը հարյուր ու հազար միլիոնավոր մարդկանց բախտի մասին է, անհրաժեշտ է ազգայինը ենթարկել ինտերնացիոնալին, ապահովել ինտերնացիոնալի առաջնայնությունը: ՍՍՀ Միության կազմավորման 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է. «Լինել ինտերնացիոնալիստ, ընդգծում էր Լենինը, նշանակում է մտածել ոչ միայն իր ազգի մասին, այլև նրանից ավելի բարձր դասել բոլորի շահերը...»: Նա սովորեցնում էր պայքարել մանր ազգային նեղմտության, ինքնամփոփության, մեկուսացածության դեմ: Լենինյան պատգամներին հավատարիմ, կուսակցությունը աշխատավորների մեջ դաստիարակում է ամեն կարգի ազգային պրոբլեմներին դասակարգային դիրքերից մոտենալու ունակություն: Այս դրույթները ուղղում են այն հեղինակների սխալները, որոնք իրենց աշխատություններում սահմանափակվում են միայն ինտերնացիոնալը և ազգայինը զուգակցելու անհրաժեշտության ընդունմամբ, բայց մոռանում են լենինյան ցուցումները՝ ազգայինը ինտերնացիոնալին ենթարկելու անհրաժեշտությունը:

Յուրաքանչյուրի համար պարզ է, թե լենինյան այս ծրագրային դրույթը որքան հրատապ է հնչում համաշխարհային կոմունիստական շարժման առանձին փաստերի լույսի ներքո, որտեղ նեղմտորեն ըմբռնված ազգային շահերը երբեմն վեր են դասվում համաշխարհային սոցիալիզմի ընդհանուր շահերից, ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման շահերից, որն ունի հարաճուն ինտերնացիոնալ նշանակություն:

Զարգացած սոցիալիզմի և աստիճանաբար կոմունիզմի անցնելու պայմաններում սոցիալիստական ապրելակերպի մեջ ինտերնացիոնալի և ազգա-



յինի դիալեկտիկայի ուսումնասիրման համար կարևոր նշանակություն ունի մեր ժամանակի ամենաառաջավոր դասակարգի՝ բանվոր դասակարգի, որպես ինտերնացիոնալի գլխավոր կերտողի ու կրողի կենսագործունեության առանձնահատկությունների բացահայտումը հասարակական զարգացման բոլոր ոլորտներում: Բանվոր դասակարգի առաջատար դերի պայմաններում սոցիալիստական ապրելակերպի ինտերնացիոնալ բովանդակությունը արմատավորվում է կոլտնտեսային գյուղացիության և սովետական մտավորականության կենսագործունեության ոլորտում, լրիվ չափով հաշվի առնելով նրանց դերի ու տեղի առանձնահատկությունները հասարակական հարաբերությունների համակարգում:

Ինտերնացիոնալի և ազգայինի զուգակցումը միասնական սովետական ապրելակերպի մեջ նշանակում է ոչ թե ինտերնացիոնալի ավելացման և ամեն ազգայինի պակասեցման միակողմանի մեխանիկական պրոցես, այլ նրանց համակողմանի զարգացման, փոխազդեցության, փոխհարստացման դիալեկտիկական պրոցես: Զարգացած սոցիալիզմի պայմաններում սոցիալիստական ապրելակերպի մեջ ինտերնացիոնալի և ազգայինի որակապես նոր այդ վիճակը կարևոր է շեշտել այն պատճառով, որ, որոշ հեղինակների կարծիքով, կոմունիզմի ճանապարհին տեղի է ունենում միայն ինտերնացիոնալի լոկ աճ՝ ազգայինի նվազեցման դեպքում: Այդ տրամաբանությամբ արդեն մինչև կոմունիզմին հասնելը, դեռ սոցիալիզմի շրջանակներում, կվերանա ազգայինը և կմնա միայն ինտերնացիոնալը: Նման պատկերացումները չեն համապատասխանում ռեալ կյանքին և կոմունիզմի շինարարության օբյեկտիվ օրինաչափություններին:

Սովետական ապրելակերպը, որպես սոցիալիստական ապրելակերպի պատմական առաջին փուլ, առաջացման հենց սկզբից և հետագա զարգացման պրոցեսում դիալեկտիկորեն զուգակցել է ինտերնացիոնալի և ազգայինի միասնությունն ու տարբերությունը: Այդ զուգակցման փորձը միջազգային հսկայական նշանակություն ունի, քանի որ երկրագնդի բնակչության 90 տոկոսը ապրում է զանազան բազմազգ և բազմացեղ պետությունների պայմաններում:

Վ. Ի. Լենինը, խոսելով ինտերնացիոնալի և ազգայինի դիալեկտիկայի մասին, գրում էր, որ «այդ հարցի վերաբերյալ դատողությունների թերությունն ամենից հաճախ և ամենից ավելի պատմական տեսակետի ու կոնկրետության բացակայությունն է» (ԵԼԺ, հ. 30, էջ 429):

Գոյություն ունի այն կարծիքը, թե իբր ինտերնացիոնալը և ազգայինը ծագել են դեռ հին ժամանակներից, անտիկ և միջնադարի ժամանակաշրջանում: Այսպես, նշելով հեռու անցյալի խոշորագույն մտածողների և լուսավորիչների՝ գիտնականների, փիլիսոփաների, գրողների և այլոց հոբելյանը, հաճախ և մամուլում և, հատկապես, բանավոր ելույթներում, նրանց անվանում են ոչ միայն մեծ հումանիստներ ու լուսավորիչներ, այլև ինտերնացիոնալիստներ: Նման գնահատականները խախտում են պատմական մոտեցումը, քանի որ մինչկապիտալիստական դարաշրջանում չի եղել և չէր կարող լինել ինտերնացիոնալը, ինչպես և չեն եղել ազգայինը և բուն ազգը, որը հանդես է գալիս որպես հարաբերությունների տվյալ տիպի կրող:

Իրականում ինտերնացիոնալը և ազգայինը առաջանում են միաժամանակ՝ կապիտալիզմի առաջացման դարաշրջանում: Սոցիալիստական վերափոխումների համար մղվող պայքարի պրոցեսում դրանք ձեռք են բերում որակապես նոր բովանդակություն, փոխվում է նրանց զարգացման ընդհանուր ուղղվածությունը: Կոմունիզմի ժամանակ միայն ինտերնացիոնալի և ազգայինի դիալեկտիկական զարգացումը կավարտվի ողջ մարդկային ցեղի սոցիալական կատարյալ միասնությամբ: Այսպես, անչափ առաջ նայելով, Մարքսը և Էնգելսը հայտնի, բայց մեր կողմից դեռ քիչ օգտագործվող «Կոմունիստ հեղափոխականների համաշխարհային հասարակությունը» աշխատության մեջ գրում էին, որ համաշխարհային կոմունիզմը «պետք է հանդիսանա մարդկային ցեղի կառուցվածքի վերջին ձևը» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 7, с. 551):

Ինտերնացիոնալը և ազգայինը գիտական կոմունիզմի կատեգորիաներ

են, որոնք ունեն իրենց առանձնահատկությունը և որոշակի սահմանները: Ուստի այդ կատեգորիաները չի կարելի շփոթել մյուս կատեգորիաների ու հասկացությունների հետ: «Ինտերնացիոնալ» հասկացության հիմնական գիտական և քաղաքական բովանդակությունը որոշվում է բանվոր դասակարգի՝ որպես նոր կարգի գլխավոր կերտողի, հասարակական դիրքով և պատմական առաքելությամբ: Կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանի առաջատար միտումին՝ ամբողջ հասարակական կյանքի ինտերնացիոնալացմանը լրիվ համապատասխան, որը օրինաչափորեն տանում է դեպի ապագա հասարակության նյութական և հոգևոր հիմքերի ստեղծում, բանվոր դասակարգը իր շուրջն է համախմբում աշխատավոր մասսաներին և կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հետևողականորեն պայքարում է կոմունիզմի լիակատար հաղթանակի համար: Ամեն ինչ ենթարկել այդ պայքարին և այդ հաղթանակին՝ այս է ինտերնացիոնալիզմի խոր իմաստը: Ահա ինչու մարքսիզմ-լենինիզմի դասականների բոլոր աշխատություններում, կոմունիստական կուսակցությունների բոլոր փաստաթղթերում ինտերնացիոնալիզմը բնութագրվում է որպես պրոլետարական, սոցիալիստական: Սա ամենախորն ու ամենաէականն է ինտերնացիոնալիզմի մեջ: Ինտերնացիոնալիզմի ամեն մի ազատ մեկնաբանություն հանգեցնում է նրա դասակարգային էության ամլացման, այդ հասկացության և այնպիսի հասկացությունների միջև եղած սահմանի վերացման, ինչպիսիք են համաշխարհային, համամարդկային, համաժողովրդական, համազգային, միջազգային հասկացությունները:

Որոշ հեղինակներ նույնիսկ փորձում են գիտական գործածության մեջ դնել արհեստականորեն ստեղծված այնպիսի հասկացություններ, ինչպես «ինտերնացիոնալ-դասակարգային», «ինտերնացիոնալ-համամարդկային» հասկացությունները: Իրականում ինտերնացիոնալը հագեցված է դասակարգային, պրոլետարական բովանդակությամբ և համադրվում է ազգայինի հետ:

Ինտերնացիոնալը համամարդկայինի, համաժողովրդականի, միջազգայինի և այլնի հետ նույնացնելու փորձերի հիմքում ընկած է ժամանակակից բարդ ու հրատապ երևույթների ու պրոցեսների նկատմամբ դասակարգային մոտեցման խախտումը, այն բանի անտեսումը, որ ինտերնացիոնալիզմի գլխավոր կրողներն են համաշխարհային բանվոր դասակարգը, միջազգային կոմունիստական շարժումը, մարքս-լենինյան կուսակցությունները: Ուստի, երբ կուսակցական փաստաթղթերում խոսվում է ինտերնացիոնալիզմի մասին, ապա խոսքը միջազգային բանվորական և կոմունիստական շարժման բոլոր ջոկատների արմատական շահերի մասին է, նրանց միասնության մասին:

Ինչպես և բոլոր գիտական հասկացությունները, «ինտերնացիոնալը» և «ազգայինը» զարգանում, հարստանում են բուն ռեալ կյանքին լրիվ համապատասխան: Այսպես, սոցիալիզմի պայմաններում ինտերնացիոնալիզմի կրողներ են արդեն ոչ միայն բանվոր դասակարգը, այլև սոցիալիստական ազգերը ամբողջությամբ: Եվ նույնիսկ այն ժամանակ, երբ կվերանան դասակարգերը, կմնան անդասակարգ սոցիալիստական, իսկ ապա, հասարակության հետագա զարգացման դեպքում, կոմունիստական ազգերը, նրանք էլ կլինեն ինտերնացիոնալիզմի կրողները: Այսպես են ընդլայնվում ինտերնացիոնալի ու ազգայինի շրջանակներն ու բովանդակությունը:

Շեշտել, որ ինտերնացիոնալի գլխավոր և պատմականորեն առաջին կրողը բանվոր դասակարգն է, որի արմատական շահերն ու կոմունիստական իդեալները հնարավորություն են ընձեռում բոլոր երկրների աշխատավոր դասակարգերին միավորվելու մարդկության սոցիալական և ազգային լիակատար ազատագրության համար մղվող պայքարում: Համաշխարհային բանվոր դասակարգի այս ինտերնացիոնալ էությունը բացահայտել ու ցույց են տվել գիտական կոմունիզմի հիմնադիրները:

Դեռ իրենց վաղ շրջանի երկերում Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը գրում էին. «Խոշոր արդյունաբերությունը ստեղծել է մի դասակարգ, որին բոլոր ազգերի մեջ էլ հատուկ են միևնույն շահերը և որի մեջ արդեն ոչնչացված է ազգային մեկուսացածությունը» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 3, с. 61): Էնգելսը պնդում էր, թե «հենց որ բանվոր դասակարգը հասնի քաղաքական տիրապե-



տության, կվերանա ազգային թշնամության ամեն մի առիթ: Քանի որ բանվոր դասակարգը իր էությամբ ինտերնացիոնալ է» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 32, с. 420):

Զարգացնելով Մարքսի և Էնգելսի այս հիմնարար գաղափարները, Վ. Ի. Լենինը նշել է, որ իսկական ինտերնացիոնալիզմը ստեղծվում է «բոլոր երկրների պրոլետարների հեղափոխական համագործակցությամբ» (ԵԼԺ, հ. 36, էջ 376): Ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան ըմբռնման այս առաջատար դասակարգային սկզբունքը արտահայտված է «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» դասական բանաձևում: Այս լոզունգը, որը ցույց է տալիս կոմունիզմի լիակատար հաղթանակի համար համաշխարհային բանվոր դասակարգի բոլոր ջոկատների մղած տևական պայքարի ստրատեգիան, գրված է բոլոր իսկական հեղափոխական կուսակցությունների դրոշին: Այդ դրոշի ներքո պրոլետարական ինտերնացիոնալիզմը պատմականորեն առաջին խոշոր հաղթանակը տարավ մեր երկրում՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության իրականացման և բազմազգ սովետական պետության ստեղծման պրոցեսում: Երկրորդ խոշոր հաղթանակը կապված է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորման ու զարգացման հետ: Բանվոր դասակարգի գաղափարաքաղաքական դիրքերին անցած սոցիալիստական ազգերի ձևավորմամբ ընդլայնվում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի պատմական շրջանակներն ու սոցիալական հիմքերը: Բանվոր դասակարգից բացի ինտերնացիոնալիզմի կրողներ են դառնում աշխատավորների սոցիալական այլ խմբեր, սոցիալիստական ազգերն ու ազգությունները: Սա արդեն որակապես նոր փուլ է պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի զարգացման ու հարստացման գործում: Մեր երկրում զարգացման այդ փուլը հասուն սոցիալիզմի պայմաններում նշանավորվեց սովետական ժողովրդի՝ որպես սոցիալական և ինտերնացիոնալ նոր հանրության, կազմավորման ավարտմամբ, որը ինտերնացիոնալի և ազգայինի բարձրագույն միասնության ցուցանիշն է: Ինտերնացիոնալիզմի սոցիալական բազայի օրինաչափ ընդլայնման շնորհիվ նրա կրողը դարձավ ողջ սովետական ժողովուրդը:

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումն ու զարգացումը, սոցիալիստական ընկերակցության երկրների միասնության ամրապնդումը ևս մի դարակազմիկ ուղենիշ են պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի զարգացման գործում: Ինչպես և ամեն մի զարգացում, այն տեղի է ունենում գոյություն ունեցող հակասությունների հաղթահարման հիման վրա, որի ընթացքում ամրապնդվում է միասնությունը, արագանում է նրանց տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացումը, տեղի է ունենում ազգերի ու նրանց մշակույթի հետագա ծաղկում:

Ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան ըմբռնման մեջ գլխավորը համաշխարհային բանվոր դասակարգի բոլոր ջոկատների պրոլետարական-դասակարգային հեղափոխական համերաշխությունն է: Ինչպես ցույց տվեցին Լեհաստանի իրադարձությունները, հակահեղափոխական տարրերը ցանկանում են կարծեցյալ «համերաշխության» անվան տակ մերժել պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, որի գլխավոր սկզբունքը ոչ թե վերացական «համերաշխությունն» է, այլ համաշխարհային բանվորական շարժման բոլոր ջոկատների, համաշխարհային սոցիալիստական ընկերակցության բոլոր երկրների հեղափոխական համերաշխությունը:

Ինտերնացիոնալիզմը ընդհանուր ոչինչ չունի ազգայինի նկատմամբ նիհիլիստական վերաբերմունքի հետ: Ազգայինը ազգերի բոլոր հիմնական բնորոշ գծերի ամբողջությունն է: Հավասարապես անհիմն է ազգայինի ինչպես նեղ, այնպես էլ ազատ մեկնաբանումը: Ինտերնացիոնալի ու ազգայինի հարաբերակցության նկատմամբ դիալեկտիկական մոտեցման էությունն է՝ կարողանալ տեսնել նրանց անխզելի միասնությունն ու տարբերությունը, ճիշտ զուգակցել դրանք ռեալ գոյություն ունեցող ոչ ներհակ հակասությունների բացահայտման ու հաղթահարման միջոցով: Ինտերնացիոնալի ու ազգայինի միասնությունը մեր ապրելակերպում հիմնված է ստեղծված և անշեղորեն զարգացող միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի վրա, յուրաքանչյուր

*միութենական հանրապետության էկոնոմիկայի զարգացումը ամբողջ երկրի էկոնոմիկայի ընդհանուր զարգացման հետ ներդաշնակորեն զուգակցելու վրա։ Առանց հաշվի առնելու այդ միասնությունն ու ներդաշնակությունը՝ անհնար է հասկանալ ռեալ գործող այն միտումները, որոնց դիալեկտիկական զուգակցումը սոցիալիստական ապրելակերպում ինտերնացիոնալի ու ազգայինի միասնության զարգացման կարևորագույն աղբյուրն է։ Այդ դիալեկտիկան դրսևորվում է փոխադարձաբար կապված երկու միտումների միասնության մեջ։ Առաջին միտումը ուղղված է յուրաքանչյուր միութենական հանրապետության, յուրաքանչյուր ինքնավար հանրապետության, մարզի ու երկրամասի համակողմանի զարգացմանը, երբ լրիվ հաշվի են առնվում նրանց առանձնահատկությունը։ Երկրորդ, առաջատար միտումը նպատակ ունի անշեղորեն հարստացնել ընդհանուրը բոլոր հանրապետությունների ու երկրամասերի զարգացման մեջ, ապահովել դրանց միասնության ամրապնդումը։*

*Հետազոտելով սոցիալիզմի օրոք ազգերի զարգացման երկու միտումների պրոբլեմը, որոշ հեղինակներ անտեսում են ռեալ, օբյեկտիվորեն գոյություն ունեցող ոչ ներհակ հակասությունները, ազգային հարաբերությունների զարգացումը ներկայացնում են որպես անհակասական։ Նրանց համար հակասությունը այս բնագավառում գոյություն ունի ոչ թե օբյեկտիվորեն, այլ որպես գաղափարադաստիարակչական աշխատանքում եղած սխալների ու թերությունների ժամանակավոր հետևանք։*

*Մեր կուսակցությունը մշակում է զարգացած սոցիալիզմի կատարելագործման և աստիճանաբար կոմունիզմին անցնելու գիտականորեն հիմնավորված կուրսը՝ այդ պրոցեսի ռեալ հակասությունները ժամանակին բացահայտելու և հաղթահարելու հիման վրա։ Յու. Վ. Անդրոպովը, խոսելով զարգացած սոցիալիզմի կատարելագործման դիալեկտիկայի մասին, շեշտում է, որ այն ընթանալու է աստիճանից աստիճան առաջ շարժվելու միջոցով, և որ այդ անչափ բարդ պրոցեսը կապված է «առաջացող հակասությունների ու դժվարությունների հաղթահարմամբ, որպես դրանց հետ եղած կապի ամեն մի զարգացում»։ Այնուհետև, զարգացնելով այդ մտքերը, Յու. Վ. Անդրոպովը իր «Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր» հոդվածում մատնանշում է, որ հակամարտական հակասությունների ոչնչացումը սոցիալիզմի ժամանակ չի նշանակում, որ «կարելի է անտեսել ոչ հակամարտ հակասությունները, անտեսել դրանք քաղաքականության մեջ։ Կյանքը սովորեցնում է, որ նման անուշադրության դեպքում իրենց էությամբ հակամարտ չհանդիսացող հակասությունները ևս կարող են լուրջ բախումներ ծնել»։*

*Առանց օբյեկտիվորեն գոյություն ունեցող և նոր առաջացող ոչ հակամարտ հակասությունները ժամանակին բացահայտելու և հաղթահարելու՝ անհնար է ճիշտ հասկանալ նոր մոմենտները ազգային հարաբերությունների զարգացման մեջ, ճիշտ զուգակցել ինտերնացիոնալը և ազգայինը՝ դրանց միասնությունը անշեղորեն ամրապնդելու նպատակով։*

*Սովետական ապրելակերպի միջազգային նշանակությունը համաշխարհային իրադարձությունների վրա մեծ Հոկտեմբերի շարունակվող ազդեցության ցուցանիշն է։ Վ. Ի. Լենինը նշել է, որ զանազան երկրների զարգացման ու դեպի սոցիալիզմ առաջընթացի բոլոր առանձնահատկություններով հանդերձ՝ նրանք վերջին հաշվով կընթանան «պատմության միատեսակ ճանապարհով»* (ԵԼԺ, հ. 38, էջ 230)։ *Այդ ուղիով «վաղ թե ուշ անխուսափելիորեն անցնելու են և մնացած երկրները»* (ԵԼԺ, հ. 44, էջ 368—369)։

*Լենինի այդ հանճարեղ կանխատեսումներն իրականանում են XX դարի երկրորդ կեսին։ Այդ են վկայում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացումն ու զարգացումը, ինչպես նաև նախկինում հետամնաց շատ երկրների թևակոխումը սոցիալիստական կողմնորոշման ուղին։*

Մոսկվա

---

# ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԻ ՎԵՀԱՑՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆ Է

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

*ՄԱՐԴՆ ԻՐ ԲԱԶՄԱՊԻՍԻ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐՈՎ և ունակություններով սոցիալիստական հասարակության հումանիստական նպատակն է։ Վերջինիս իրականացման համար անհրաժեշտ է առողջ ու խելամիտ պահանջմունքների կազմավորում, որոնք լինելով մարդու վարքագծի հիմքը, ներդաշնակ են սոցիալիստական ապրելակերպի բարոյական նորմերին։*

*Պահանջմունքների զարգացումը տևական պրոցես է, որը փաստորեն ընդգրկում է մարդու ողջ կյանքը։ Մարդու անհատական զարգացման ընթացքում փոխվում են նրա տեղը հասարակության մեջ, նրա նպատակներն ու ձգտումները։ Իսկ դա, անշուշտ, առնչվում է համապատասխան պահանջմունքների կազմավորման հետ, ուր կատարվում են վերարժեքավորում ու վերագնահատում։ Մարդը, յուրացնելով, սեփականացնելով նոր պահանջմունքներ, օտարում է իրեն ոչ կենսական արժույթները։*

*Պահանջմունքների վեհացման օրենքը համընդհանուր սոցիոլոգիական օրենք է։ Այդ մասին բազմիցս են նշել մարքսիզմ-լենինիզմի դասականները։ Նրանք առանձնապես անդրադարձել են պահանջմունքների վեհացման մեխանիզմի վերլուծմանը, բացահայտել արտադրության ու սպառման դիալեկտիկան։ Քանզի մարդու գործունեությունը ոչ այլ ինչ է, քան այս կամ այն պահանջմունքի բավարարման պրոցես, ապա անհնար է այդ գործունեությունը պատկերացնել «արտադրություն—սպառում» համակարգի շրջանակներից դուրս։ Արտադրությունը միջնորդավորում է սպառումը, որի համար ստեղծում է նյութ, որոշակի պահանջմունքի բավարարման օբյեկտ, այսինքն սահմանում է տվյալ պահանջմունքի բավարարման բնույթն ու եղանակը։ «Առանց պահանջմունքի չկա արտադրություն,— նշել է Կ. Մարքսը,— սակայն հենց սպառումը վերարտադրում է պահանջմունքը»* (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 46, ч. I, стр. 28)։

*Այսպիսով, արտադրությունն է ստեղծում պահանջմունքի առարկան, կանխորոշում դրա բավարարման եղանակը, արտադրող սուբյեկտի համար հանդես գալիս որպես ուրույն պահանջմունք, կազմավորում սպառողի տենչը։*

*Երբ արտադրությունն ու պահանջմունքը գտնվում են սերտ փոխկապվածության մեջ, նյութական արտադրությունը նույնպես հարուցում է հասարակության պահանջմունքների վեհացում։ Վերջինս ենթադրում է ոչ միայն դրանց զուտ քանակական աճ, այլև որակական փոփոխություններ, հոգեկան վերելքի առումով։ Նյութական պահանջմունքների որակական զարգացումն այն է, երբ դրանք մեծապես հարստանում են հոգեկան բովանդակությամբ։ «Սովը սով է, սակայն սովը, որը հագեցվում է եփած մսով, ուտվում դանակի ու պատառաքաղի օգնությամբ, դա այլ սով է, քան այն, երբ հում միսը կուլ է տրվում ձեռքերի, եղունգների և ատամների օգնությամբ»* (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 12, стр. 718)։

Այսօր հագուստը, բնակարանը ծառայում են ոչ միայն նրա համար, որպեսզի մարդու օրգանիզմը պահպանեն արտաքին ազդեցություններից։ Դրանցում առարկայացված է հասարակության զարգացման տվյալ աստիճանի կուլտուրան։ Ուստի, բացի իր ուղղակի, ի սկզբանե օժտված նշանակությունից, դրանք բավարարում են նաև գեղագիտական պահանջմունքները։ Սպառման կառուցվածքում կատարվում են փոփոխություններ, ավելանում է ոչ սննդային ապրանքների բաժինը, որը կոչված է նաև բավարարելու սպառողների հարաճուն էսթետիկական ճաշակը։

Պահանջմունքների վեհացման օրենքը հասարակական զարգացման ամեն մի փուլում լրացվում է յուրակերպ հատկանիշներով, որոնք բնորոշ են տվյալ հասարակական-տնտեսական ֆորմացիային, հասարակության զարգացման տվյալ շրջանին։ Կապիտալիզմի պայմաններում պահանջմունքների վեհացման օրենքը ճանապարհ է հարթում տարերայնորեն, քանի որ կապիտալիստական արտադրությունը, ինչպես նկատել է Կ. Մարքսը. «կարգավորվում է ոչ թե անմիջականորեն հասարակության պահանջմունքներով, կատարվում է ոչ թե ...վերջինիս հսկողության ներքո, այլ կարգավորվում է արտադրաուժերով, որոնց ամեն մի կապիտալիստ տնօրինում է անկախ հասարակության պահանջմունքներից...» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 26, ч. III, стр. 118)։

Ճիշտ է, արտադրության մեքենայական ինդուստրիայի զարգացումը, գիտատեխնիկական հեղափոխությունը կապիտալիզմի օրոք ևս հարուցում են ոչ միայն ողջ բնակչության պահանջմունքների մակարդակի աճ, այլև օբյեկտիվ հնարավորություններ են ստեղծում դրանց բավարարման համար։ Սակայն բուրժուական աշխարհում, աշխատավորների պահանջմունքների հարաճուն զարգացման միտումի հետ միաժամանակ, գործում է սոցիալական առումով հակադիր՝ աղքատության աճի միտումը։ Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, անհամապատասխանությունը բուրժուազիայի պահանջմունքների և ողջ հասարակության պահանջմունքների աճող մակարդակի և աշխատավոր մասսաների կենսամակարդակի միջև (ԵԼԺ, հ. 4, էջ 262)։ Սրվում են սոցիալական հակասությունները, առավել ակներև են դառնում կոնֆլիկտը անհատի ձգտումների համակողմանի զարգացման, պահանջմունքների բավարարման և նրա ռեալ դրությունը հասարակության մեջ։ Կապիտալիզմի պայմաններում, ինչպես ասում էր Կ. Մարքսը, բանվորը բացառապես կարող է բավարարել միայն առօրյա պահանջմունքները, որոնք անհրաժեշտ են կյանքի պահպանման և բանվորական ուժի վերարտադրության համար։ Սակայն պարբերաբար սրվող ճգնաժամերի պայմաններում կապիտալիստական սիստեմը հաճախ անկարող է բավարարելու նույնիսկ այդ պահանջմունքները։

Կապիտալիզմի օրոք նկատելի է պահանջմունքների անհամաչափ, աններդաշնակ զարգացում։ Սպառում ամեն գնով, միայն թե սպառում, դա արդի կապիտալիստական հասարակության պաշտամունքն է, որը հանգեցնում է նրան, երբ որոշ պահանջմունքներ զարգանում են մյուսների հաշվին, չափազանցվում, իսկ դրանց կրողներին դարձնում ստրուկներ։ Դա առաջին հերթին վերաբերում է նյութական պահանջմունքներին։ Կապիտալիստական հասարակությունում, եթե բանվորին հաջողվում է ձեռք բերել ավտոմեքենա, մենատուն, ևս դառնում է սպառողական հոգեբանության զոհ։ Բուրժուազիային կապիտալիստական էկոնոմիկայի լծակների օգնությամբ հաջողվում է աշխատավորության մի մասի հոգեբանության մեջ ներարկել բարեկեցության քաղքենիական ըմբռնում, որին ձգտելով, բանվորները պատրաստ են բաղմապատկելու կապիտալիստի շահույթը։

Սպառողական հասարակության բնորոշ գիծն է և այն, որ այստեղ ապրանքները օգտվում են պահանջարկով և գնվում ոչ այնքան իրենց ուղղակի կոչման համապատասխան, որքան հանուն վարկի։ Գնողին անհրաժեշտ է հաստատվելու որոշակի հասարակական մակարդակում, ապացուցելու համար, որ ինքն արժանի է նոր պաշտոնի և նոր աշխատատեղի։ Այդպիսի մարդը հաճույքով կբավարարվեր ունեցած իրերով և հետագայում, սակայն, սոցիալական շրջապատը նրան համառորեն մղում է նոր ձեռքբերումների, հաշվի չառնելով ոչ իր հնարավորությունները և ոչ էլ իր՝ անձի անհատականությունը։ Կապիտալիստական հասարակությունում սպառման ստանդարտները հաճախ բանական չեն և բխում են ուրիշներից ետ չմնալու եսապաշտական մտայնությունից։ Դժվար է հուսալ, որ նման ազդեցության տակ ընկած անհատը կարող է գիտակցել, որ իր վրա բռնանում են։ Աշխատանքի մարդու հոգեկանի վրա սպառման պաշտամունքի ներգործությամբ բուրժուազիան լուծում է շահախնդիր պրոբլեմ՝ մանիպուլյացիայի պասսիվ օբյեկտների են վերածվում սպառողները։



Կապիտալիստական հասարակությունում սպառողական հոգեբանությամբ տառապող մարդը կտրվում է սոցիալ-քաղաքական պրոբլեմների լուծմանը ակտիվ մասնակցելուց։ Ինչպես գրում է արևմտագերմանացի պրոֆեսոր Է. Նյունգը, սպառման հասարակության մարդկանց մոտ համոզմունք է մշակվում, որ «բարիքները պետք է դրսից գան և հազիվ թե թերությունները վերացնելու համար սեփական ջանքեր պահանջվեն։

Կապիտալիզմի ջատագովները ճգնում են սպառման պաշտամունքը պրոպագանդել նաև սոցիալիստական հասարակությունում։ Հակակոմունիզմի տեսաբանները փորձում են Սովետական Միության կյանքը ներկայացնել ծուռ հայելու մեջ։ Այսպես, նրանք ասում են, թե սովետական երկրի սոցիալ-տնտեսական կյանքում առավել ուշադրություն է դարձվում հասարակությանը ապահովելու ոչ թե բարոյական, այլ նյութական արժեքներով։ Ոչ անհայտ Զ. Բժեզինսկին սևով սպիտակի վրա գրում է, թե «Սովետական հասարակությունը սովորաբար ձգտում է հասնել կապիտալիստական Արևմուտքի ավելի բարձր սպառողական ստանդարտներին»։ Բուրժուական պրոպագանդան շարունակում է որոնել եղանակներ ու մեթոդներ՝ գովաբանելու սպառման հասարակության արժույթները։ Այդուհանդերձ, իրականությունը լիովին հերքում է այդ առասպելը։ Քանզի գործազրկությունը, թանկությունը, միլիոնների աղքատությունը, հարկերի աճող բեռը, ինֆլյացիայի պատճառով նվազող կենսաթոշակներն աշխատավորական զանգվածներին նետում են հուսախաբության ու հոռետեսության ճահիճը։

Սկզբունքային այլ բնույթ է ստանում պահանջմունքների վեհացումը սոցիալիզմի պայմաններում, հատկապես զարգացած սոցիալիստական հասարակությունում։ Միայն սոցիալիզմի կառուցմամբ հնարավոր դարձավ ապահովելու ողջ ժողովրդի պահանջմունքների իսկական վեհացումը։ Այդ համընդհանուր սոցիոլոգիական օրենքը սոցիալիստական հասարակության պայմաններում առաջին անգամ համընկավ սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողության հետ, այն է՝ առավել լրիվ բավարարել մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքները։

Սոցիալիզմի օրոք հասարակության ու պահանջմունքների զարգացման փոխադարձ կապը դրսևորվում է ոչ միայն պահանջմունքների հարաճուն բավարարումով, այլև հատկապես դրանց զարգացմամբ ու վեհացմամբ։ Սոցիալիստական հասարակությունում գոյավորվում է կապիտալիստականի համեմատությամբ պահանջմունքների առավել բարձր մակարդակ, որը հեղափոխականացնող ազդեցություն է ունենում ընդհանրապես ապրելակերպի վրա, հանդիսանալով հասարակական առաջընթացի հզոր խթան։

Սոցիալիստական հասարակությունում պահանջմունքների վեհացման օրենքի գործողությունն ունի առանձնահատուկ գծեր և հատկանիշներ։ Նախ, դա պահանջմունքների զարգացման պլանաչափությունն է, որը բխում է սոցիալիստական արտադրության և ողջ հասարակության էությունից։ Սոցիալիստական հասարակությունը, ելնելով սոցիալական զարգացման օրենքների գիտական ճանաչումից, հնարավորություն ունի կանխատեսելու ու պլանավորելու պահանջմունքները։ Դա արտացոլվում է կուսակցության սոցիալական քաղաքականությունում, որը նախատեսում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը երկրի, հանրապետությունների տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլաններում, աշխատանքային կոլեկտիվների սոցիալական զարգացման ծրագրերում։

Պահանջմունքների բավարարման պլանավորումը պայմանավորված է դրանց վեհացման օրենքի գործողությամբ։ Եթե հետևենք վերջին քան-երե-

սոն տարում սովետական մարդկանց պահանջմունքներում տեղի ունեցած փոփոխություններին, ակներև է, որ այդ ժամանակամիջոցում դրանք զգալի աճել են, ընդլայնվել ու հարստացել։ Հետագայում ևս պահանջմունքները կփոփոխվեն թե՛ քանակապես, թե՛ որակապես, աստիճանաբար ձերբազատվելով բուրժուական ու մանրբուրժուական հատկանիշների դրսևորումներից։ Դրա համար ապագա կոմունիստական հասարակությունում մարդու պահանջմունքներն իրենց բազմազանությամբ ու ծավալով զերծ կլինեն քմահաճույքներից ու ավելորդություններից, իսկ խորքային, կառուցվածքային փոփոխությունները կընթանան հոգևոր պահանջմունքների հարստացման հունով։

Սոցիալիզմի պայմաններում այդ օրենքի գործողության բնորոշ առանձնահատկությունը նշանակում է, որ շնորհիվ բոլոր աշխատավորների նյութական ու սոցիալական դրության հավասարեցման ու սոցիալ-դասակարգային տարբերությունների աստիճանական հաղթահարման, կատարվում է հասարակության բոլոր սոցիալական խավերի պահանջմունքների մակարդակների հավասարեցում, ուժեղանում է պահանջմունքների բավարարման սոցիալական համապատասխանությունը։ Սակայն այդ հավասարեցումը և համապատասխանությունը չպետք է հասկանալ ինչպես ինչ-որ միասնականացում ու համահարթում։ Սոցիալ-համաչափ զարգացման և սոցիալիստական հասարակության բոլոր անդամների պահանջմունքների բավարարումը պետք է հասկանալ իբրև նրանց հավասար հնարավորությունները վսեմացնելու իրենց պահանջմունքները։ Ամեն մի սովետական քաղաքացի, անկախ հասարակության մեջ գրաված տեղից, իրավունք ունի օգտվելու նյութական ու հոգևոր արժեքներից, զարգացնելու ունակություններն ու պահանջմունքները։ Սոցիալիստական հասարակության տարբեր դասակարգերի ու սոցիալական խավերի պահանջմունքներն իրենց հիմքում քիչ են տարբերվում իրարից։ Դա առաջին հերթին վերաբերում է նյութական պահանջմունքներին։ Սակայն դասակարգերի ու սոցիալական խավերի միջև տարբերությունը հոգևոր զարգացման մակարդակով հետզհետե նվազում է։ Պահանջմունքների համաչափ բավարարման գործում մեծ դեր են խաղում սպառման հասարակական ֆոնդերը, որոնցից հավասար չափով օգտվելու իրավունք ունեն սոցիալիստական հասարակության բոլոր անդամները։

Պահանջմունքների վեհացման օրենքի գործողությունը դրսևորվում է ոչ միայն դրանց բարդացմամբ, այլև նրանով, որ դառնում են առավել բազմապիսի։ Լենինը շեշտել է այդ պրոցեսի մեծ նշանակությունը, որ կոմունիզմը դաստիարակելու, սովորեցնելու ու պատրաստելու է համակողմանի զարգացած ու համակողմանի պատրաստված մարդկանց, որոնք կարող են ամեն ինչ անել։

Այսպիսով, սոցիալիզմի հիմնական նպատակը՝ աշխատավորների մշտական հարաճուն պահանջմունքների առավել լիովին բավարարումը, համընկնում է անհատի համակողմանի զարգացման անհրաժեշտության հետ։ Անհատի պահանջմունքների կազմավորման ու ներդաշնակ զարգացման կարևոր նախադրյալ է մարդկանց կենսամակարդակի բարձրացումը։ Նյութական պահանջմունքների բավարարումն այն տնտեսական հիմքն է, որի վրա զարգանում ու կատարելագործվում են բոլոր պահանջմունքները, կազմավորվում է համակողմանի զարգացած մարդը, ակտիվանում է նրա կենսագործունեությունը։

Կուսակցությունը և կառավարությունը մշտապես հոգ են տանում բարձրացնելու սովետական մարդկանց կենսամակարդակը։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, աճել են բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները։ Դեռևս անցած հնգամյակի վերջին բնակչության մոտ կեսի ընտանիքի յուրաքանչյուր անդամին ամիսն ընկնում էր հարյուր ռուբլուց ավելի, այն ժամանակ, երբ 1970 թ. նման եկամուտ ուներ միայն բնակչության տասնութ տոկոսը։ Բանվոր ծառայողների միջին աշխատավարձը աճել է տասնվեց, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վճարումը ավելացել է քսանվեց տոկոսով։ Ընթացիկ հնգամյակում և առաջիկա տասնամյակում իրագործվում է ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման լայն ծրագիր։ Սովետական ժողովրդի նյութական պահանջմունքների բավարարմանը նվիրված



կուսակցության սոցիալական քաղաքականության արդյունքն է սոցիալիստական հասարակության անդամների պահանջմունքների կառուցվածքի փոփոխումը՝ հոգևոր պահանջմունքների արագ աճը (կրթություն, որակավորման բարձրացում, մտահորիզոնի ընդլայնում)։ Սովետական կարգերին, սոցիալիստական ապրելակերպին բնորոշ է երեկոյան ու հեռակա ուսուցման զանգվածային տարածումը, աշխատանքի զուգակցումը ուսման, ինքնակրթության հետ։ Աշխատավորական լայն զանգվածների մոտ զարգանում է պահանջմունքը ոչ միայն օգտվելու հոգևոր արժեքներից, այլև ստեղծելու այդպիսիններ։ Այդ են վկայում աշխատավորության մասնակցությունը տեխնիկական ու գեղարվեստական արարման աշխատանքներին։

Պահանջմունքների վեհացման պրոցեսում հոգևոր արժեքների համակարգում առանձնապես կարևորվում է սովետական մարդկանց սոցիալ-քաղաքական ակտիվությունը։ Աշխատավորների սոցիալ-քաղաքական գործունեությամբ կարելի է դատել նրանց սոցիալական պահանջմունքների առկայության մասին։ Սովորաբար հոգևոր պահանջմունքները բավարարվում են ստեղծված արժեքների անմիջական յուրացմամբ՝ կրթության բարձրացում, ընթերցանություն, արվեստի ստեղծագործությունների հետ հաղորդակցում և այլն։ Սոցիալական պահանջմունքների բավարարումը անհապաղ ենթադրում է գործունեության պրոցես, որի շնորհիվ մարդը զգում է ձեռք բերված նպատակի կարևորությունը, հասարակությանը օգտակար լինելու գիտակցությունը։

Սոցիալիստական հասարակության անդամների զգալի մասի համար արդեն իրագործված սոցիալական վերափոխումները, գիտատեխնիկական և կուլտուրական հեղափոխության հասումները մեծապես նպաստել են, որպեսզի նրանց մոտ աշխատանքային գործունեությունը աստիճանաբար վերածվի առաջին կենսապահանջմունքի, բարոյական բավականության, որը պահանջմունքների վեհացման օրենքի գործառնության դրսևորումներից է։ Սոցիալիստական հասարակության առաջավոր անդամներն աշխատանքում տեսնում են իրենց ունակությունների, էության ուժերի, ինքնահաստատման արտահայտման միջոցը։ Դա ցայտուն դրսևորվում է սովետական մարդկանց պայքարում հանուն աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի բարձրացման, ստանձնած պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու, սոցիալիստական մրցությունը ծավալելու շարժման մեջ։ Հասուն սոցիալիզմի պայմաններում սոցիալական ակտիվության պահանջմունքի բավարարման այդ ձևը կրում է համընդհանուր բնույթ, վերածվում իրոք համաժողովրդական շարժման։ Նման մթնոլորտում աշխատավոր զանգվածների շրջանում լայն թափ են ստանում տեխնիկական ստեղծագործությունը, նորարարությունը։ Հարկ է նկատել, որ կապիտալիզմի պայմաններում սկզբունքորեն բացառվում է բանվորների մասսայական մասնակցությունը տեխնիկական արարմանը։ Բանը ոչ միայն այն է, որ ձեռնարկատերերին ձեռնտու չէ արտադրության մեջ ներդնել որևէ նորարարական առաջարկություն։ Գլխավոր պատճառն այն է, որ իրենք բանվորները շահագրգռված չեն տեխնիկական ստեղծագործությամբ, քանի որ իրենց առաջարկությունների կիրառումը հաճախ հանգեցնում է գործազուրկների բանակի ավելացման։

Ինչպես վկայում են սոցիոլոգիական հետազոտությունները, սոցիալիստական հասարակության պայմաններում նորարարների ստեղծարար գործունեության գլխավոր դրդապատճառը շատ դեպքերում ոչ թե հատուցման նկատառումն է, այլ ստեղծագործության, արարման պահանջմունքը, ունակությունների, գիտելիքների դրսևորումը, աշխատանքը թեթևացնելու, հետաքրքրական, հրապուրիչ դարձնելու մղումը։

Սոցիալիստական հասարակության անդամների մասնակցությունն արտադրության կառավարմանը, հասարակության ու պետության գործերին, տեխնիկական ստեղծագործությանը, սոցիալիստական մրցությանը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական շարժմանը, այդ բոլորն աշխատավորների սոցիալական ակտիվության ձևեր են, որոնք բնորոշ են սոցիալիստական ֆորմացիային և վկայում են սովետական ժողովրդի հոգևոր պահանջմունքների վեհացման մասին։

*խաների նկատմամբ, կան շատ ծնողներ, որոնք երես են տալիս երեխաներին, դիմում են զոհողությունների, զրկում իրենց, միայն թե բավարարեն նրանց քմահաճույքները։ Ավելին, երեխաներին չեն սովորեցնում իրենց պահանջները համապատասխանեցնել ընտանիքի բյուջեի, հասարակության հնարավորությունների հետ, չեն սովորեցնում հարգել ուրիշների պահանջմունքները։ Արդյունքը լինում է այն, որ աճում են մեծահասակ անբաններ, պորտաբույծներ, կյանքը վատնողներ, որոնք չափից ավելի մեծ պահանջներ են ներկայացնում հասարակությանը։ Կիրքը իրերի, խրախճանքների նկատմամբ փակում է նրանց առջև կյանքի հմայքն ու վեհությունն ընկալելու կարողությունը, ամլացնում մյուս բոլոր մարդկային պահանջմունքները։ Այդպես է աճում բարոյական այլանդակը, հաճախ՝ նաև հանցագործը։*

*Ընտանիքը, սերտ համագործակցած դպրոցի, աշխատանքային կոլեկտիվի, հասարակայնության հետ, կոչված է աճող սերնդին ներարկելու աշխատանքի, գիտելիքների պահանջմունք, մարդկանց հետ հաղորդակցվելու պահանջմունք, մշակելու ազնվաբարո վարքագիծ։ Գիտելիքներն առաքինի են դարձնում մարդուն, բարձրացնում նրա կուլտուրան, դաստիարակում սեր բնության, այլ մարդկանց, ժողովուրդների նկատմամբ։*

*Անհատի պահանջմունքներն իրենցից ներկայացնում են շարժվող, բաց և ոչ թե ներփակ համակարգ, որը հնարավոր է կառավարել, ձևավորել։ Դրանց ակտիվ, նպատակասլաց կերպավորման մեջ մեր կուսակցությունը տեսնում է սոցիալական քաղաքականության հիմնական խնդիրներից մեկը, որը նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում։*

*Բազմապիսի են սովետական մարդկանց պահանջմունքներն ու դրանց բավարարման եղանակները։ Պահանջմունքների վեհացման պրոցեսի գիտական կառավարումը, հասարակության բոլոր անդամների մոտ խելամիտ պահանջների ու շահերի նպատակասլաց դաստիարակումը սոցիալիստական քաղաքակրթվածության կազմավորման ու զարգացման բաղկացուցիչ մասն են։*

---

## Կուսակցական կյանք.

## Հաշվետվություններ և ընտրություններ

# ՄԱՐԴՈՒ ԵՎ ԲՆՈՒԹՅԱՆ ԴԱՇԻՆՔԸ

### ՀՈՂԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՄԱՐԴԻԿ

ՄԵՂՐՈՒ ԿԻՐՃ։ ԾԻԿԱՎՈՒՆ, ԼԵՐԿ ու սրագագաթ լեռներով երիզված գետահովիտը կանաչ օազիս է։ Դիտում ես ամուլ, գրեթե բուսազուրկ լեռնալանջերը, նրանց հարևանությամբ գետի հովիտն ի վեր ծավալված այգեստանները ու զարմանում մարդու արարչագործության վրա։ Տքնել է նա, զուլալ քրտինքը խառնել քարին ու թփին, բնությունից մետր առ մետր հող նվաճել ու նույնիսկ լեռան ժայռեղեն կրծքին պտղատու ծառեր ու խաղողի վազեր տնկել, հիմնել այգիներ՝ կտոր առ կտոր, հատված առ հատված ու կանաչ խնդությունը սփռել է լանջերն ի վեր։

Վաղնջական ժամանակներից են մեղրեցիները աճեցնում մերձարևադարձային պտուղների հազվագյուտ տեսակներ՝ նուռ ու նուշ, արքայախնձոր ու թուզ, նաև՝ ծիրան ու դեղձ, սալոր ու կեռաս, խաղող ու ընկույզ։ Եվ խաղողի ու պտուղների մշակությունը դարձել է ավանդույթ, փոխանցվել սերնդից սերունդ, դարձել հողի անխոնջ մշակի հիմնական զբաղմունքը։

Մեղրու կիրճում արևն առատ է, և մեղրեցիները կարողանում են բնության պարգևածին հավելել իրենց բազկի ուժն ու հոգու եռանդը, մռայլ քարաստանը վերածել հրաշք այգեստանի։

Մեղրի քաղաքատիպ ավանը, որ համանուն շրջանի կենտրոնն է, ամփոփված է բարձրում, ծավալվել է կիրճն ի վեր։ Երբ նայում ես այդ բարձրությունից, հայացքիդ առջև բացվում է անզուգական ու ինքնատիպ, իր նմանը չունեցող մի գեղեցիկ համայնապատկեր։ Ուր որ է կսկսվի աշնան տերևաթափը, ու այգիներում գույների խաղ է։ Բերքն ու բարիքը ամբարվել են, սակայն այս ու այնտեղ դեռ շարունակվում է աշխատանքի հնքը. շրջկենտրոնի կոլտնտեսության մարդիկ իրենց տարերքի մեջ են. սիլոսացու եգիպտացորենի ու բանջարեղենի վերջին հատվածների բերքն են ժողովում նրանք։

Կոլտնտեսության նախագահ Սուրեն Խաչատրյանի և կուսկոմիտեի քարտուղար Ռուբեն Հայրապետյանի հետ մտնում ենք այգի։ Նորշենք կոչվող հանդամասում ենք, Մեղրի գետի աջակողմում։ Կես հեկտարից փոքր-ինչ պակաս տարածության վրա դեղձենիներ են տնկված։

— Այստեղ,— ասում է նախագահը,— հին, խառը, նվազ բերքատու այգի էր՝ միջնակներով ու քարակույտերով զատված հողակտորներով։ Մաքրեցինք, միջնակները վերացրինք, իսկ քարերը դուրս հանեցինք ու անցած տարվա գարնանը հիմնեցինք դեղձենու զտասորտ այգի։ Քանի դեռ ծառերը փոքր են, միջշարային տարածությունն առհասարակ օգտագործում ենք։ Այստեղ, օրինակ, գարնանը վաղահաս կարտոֆիլ ցանեցինք ու հեկտարի հաշվով 150 ցենտներ բերք հավաքեցինք, հետո սիլոսացու եգիպտացորեն ցանեցինք ու հիմա նույն տարածությունից հեկտարի հաշվով 500 ցենտներ կանաչ զանգված ենք ստանում։

Մատղաշ դեղձենու այս այգեհատվածը կոմունիստ Իլյա Սարգսյանի բրիգադի տնօրինության ներքո է։ Ջինվորների պես շղթա կազմած՝ բրիգադի մարդիկ պապենական մանգաղով հնձում են ցողունները և խրձեր կապած լցնում ավտոմեքե-

նայի թափքը: Մանգաղի գոյությունը Մեղրու պայմաններում միանգամայն օրինաչափ է. հողը սակավ է, այգեմիջյան տարածությունների օգտագործումը՝ հույժ անհրաժեշտություն, իսկ մեքենան չի կարող մտնել այգու մեջ...

Մեղրի եմ այցելել շրջկենտրոնի կոլտնտեսության կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովին մասնակցելու և այն լուսաբանելու հանձնարարությամբ, ուստի և փորձում եմ իմանալ, թե կոմունիստներն ինչպես են մասնակցում հանրային արտադրությանը: Ուղեկիցներս հարցիս վրա երկար չեն խորհում: Նախագահն աչք է ածում հնձողների կողմն ու մատնացույց անում նրանցից մեկին.

— Օղակավար Ներսես Արզումանյանը, օրինակ, լավ աշխատող է, պահանջկոտ է իր և ուրիշների նկատմամբ, իր բարեխղճությամբ օրինակ է ծառայում օղակի անդամներին, սկզբունքային կոմունիստ է, թերությունը չի հանդուրժի, տեղը գա, կքննադատի թերացողներին, չի նայի՝ շարքային է, թե ղեկավար...

Կուսկոմիտեի քարտուղար Ռ. Հայրապետյանը լրացնում է նախագահին.

— Կոմունիստները մեծ ավանդ ունեն բրիգադի հաջողություններում: Նորիկ Պողոսյանը կենսաթոշակառու է, բայց գարնանից աշուն մասնակցում է բոլոր տնտեսակի աշխատանքներին, եռանդով լեցուն կին է: Կամ Խորայել Գևորգյանը յոթանասունչորս տարին է բոլորել ու դարձյալ հանգիստը աշխատանքի մեջ է տեսնում, կոլտնտեսության ստեղծման առաջին օրվանից այգում է, ծառերի հետ: Բարեխիղճ, պարտաճանաչ կոմունիստ է, կուսակցական ժողովներում էլ ակտիվություն է դրսևորում: Ողջ տարին գործի մեջ է: Այս տարի 20—25 տոննա խոտ է հնձել ու հանձնել տնտեսությանը: Անցած տարվա արդյունքներն ավելի բարձր են,— կատակում է,— դա՛, մեկ տարով ջահել էր...

Բնութագրելով կոմունիստներին, ամեն մեկի հասցեին դրվատանքի ջերմ խոսք ասելով՝ կուսկոմիտեի քարտուղարը նրանց մեջ առանձնացնում է հատկապես Գարեգին Գրիգորյանին: Օղակավար է ու բրիգադի կուսկազմակերպության քարտուղարը: «Հենց նրա մասնակցությունը բավական է,— ասում է քարտուղարը,— որ մարդիկ զգաստանան ու աշխատեն ջանասիրաբար, ինքն այդպիսի օրինակ է տալիս ջահելներին»:

Օգտագործում եմ կարճատև դադարն ու զրուցում Գ. Գրիգորյանի հետ: Յոթանասունվեցամյա այր է, բարձրահասակ, ուղիղ կեցվածքով, ճակատին կնճիռներ կան, գլուխն ու դեմքը ճերմակով է պատած, սակայն իր տարիքից ջահել է երևում: Եռանդով առնեցուն, ժպիտը՝ դեմքից անպակաս, ծիծաղը՝ աչքերում: Քառորդ դար ներքին գործերի Մեղրու բաժնում է աշխատել, կապիտանի կոչումով անցել կենսաթոշակի, երբ տակավին հիսուն տարեկան էլ չկար: Հո չէր կարող ձեռքերը ծալել ու նստել... Եվ ընդմիշտ կապվեց հողի հետ, ծառի ու վազի հետ: Հողը, ծառն ու վազը վաղուց է սիրել. ծառայական պարտականությունները կատարելու տարիներին էլ հաճախ օգնության էր հասնում շերամապահ կնոջը, ծառ ու վազ մշակում, խաղող ու պտուղ հավաքում: Ու հիմա երիտասարդական ավյունով ու եռանդով երիտասարդներին հավասար գործ է անում:

Տասնինը կոմունիստ կա բրիգադում, ու բրիգադավարը՝ Ի. Սարգսյանը, գոհ է բոլորից: Եվ ցուցանիշներն էլ հիմնականում գոհացուցիչ են. 145 տոննա պտղի պլան են ունեցել այս տարի, բայց 200 տոննա են տվել, 18 տոննայի փոխարեն 20 տոննա բանջարեղեն են հավաքել, կատարել 200 տոննա խոտի կուտակման առաջադրանքը: Բրիգադավարը հավաստում է, որ տակավին բանջարեղեն ու խոտ ունեն հավաքելու: Հետո ափսոսանք է հայտնում, որ խաղողի առաջադրանքը երկու տոննայով թերակատարել են: Պատճա՞ռը. վերակառուցման ենթակա հին, նվազ բերքատու այգի ունեն, որ լերկ լեռան փեշին է ու անհեռանկարային, տեղը նռան այգի են հիմնելու: Եվ կարտոֆիլի բերքից (թեև հեկտարից 150 ցենտներ) է դժգոհ. «Կարտոֆիլի բերքն այս տարի քիչ էր»: Անշուշտ, լավ է, երբ կոմունիստը քննադատաբար է վերաբերվում իր գործին, իր արածին: Դա ինքնին հետագա հաջողության գրավական է:

Աշխուժություն, աշխատանքային եռուզեռ է և սիլոսի խրամատի մոտ: Միալար հնչում են սիլոսահատ մեքենան ու խրամատը մամլող ԴՏ—75 տրակտորը: Մեխանիկ Արթուր Ղազարյանը հիշում է թվերը: «Ինչպե՞ս չհիշեմ, մազերս այստեղ են սպիտակել»,— ասում է նա ու տեղեկացնում, որ օրական 30—35 տոննա սիլոսացու եգիպտացորենի կանաչ զանգված է գալիս դաշտից, 560 տոննա արդեն մանրացրել



են: Կոլտնտեսության նախագահն ավելացնում է, որ 18 հեկտար սիլոսացու եգիպտացորենն աճեցրել են ավելի քան 40 հողակտորում, և դրանից 10 հեկտարը խոզանացան է, այսինքն՝ երկրորդ բերք: Իսկ դա հողի ռացիոնալ օգտագործման ցայտուն օրինակ է... Ասել է, թե ամեն ինչ արվում է առատ բերք ու բարիք ստանալու համար:

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՄՏԱՀՈԳՈՒԹՅԱՄԲ

Օրը հալվում է, ու խաղաղ երեկոն իր քողն է փռում Մեղրու կիրճի վրա: Շրջկենտրոնի կոլտնտեսության կոմունիստները այգիներում ու ֆերմաներում գործն ավարտել ու հիմա շտապում են ակումբ՝ մասնակցելու իրենց հաշվետու-ընտրական ժողովին: Կուսկոմիտեն հաշիվ է տալու երեք տարվա գործունեության մասին: Դա, ըստ էության, իրենց իսկ՝ բոլոր կոմունիստների, հաշվետվությունն է: Մի ստվար ջոկատ են կազմում նրանք. 78 մարդ, որ ներգրավված են հինգ բրիգադային կուսկազմակերպություններում:

Ինչպես և սպասվում էր, հաշվետու-ընտրական ժողովում հիմնական խոսակցությունը ծավալվեց ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1982 թ.) պլենումի հաստատած պարենային ծրագրի իրականացման, հանրային արտադրության կուսակցական ղեկավարման հարցերի շուրջ:

Հարկ եղավ մինչև ժողովը ծանոթանալ կուսկոմիտեի նիստերի և կուսակցական ժողովների արձանագրություններին: Ուսումնասիրությունից պարզ դարձավ, որ կուսկոմիտեին առանձնապես մտահոգել է աշխատանքի բոլոր տեղամասերում կարգուկանոնի հաստատումը: Տակավին 1981-ի մայիսին կոմիտեն իր արտահերթ նիստում քննարկել է գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետական մթերումների տասնմեկերորդ հնգամյակի պլանները չորսուկես տարում կատարելու վերաբերյալ Աբովյանի շրջանի գյուղատնտեսության աշխատողների հայրենասիրական նախաձեռնությունը և ջերմորեն արձագանքել դրան: Ու Մեղրու կոլտնտեսության աշխատավորները նույնպես այդպիսի պատրաստակամություն են հայտնել: Անասնապահությունը գյուղում հարվածային ճակատ դարձնելու վերաբերյալ կուսակցության համագումարի պահանջը և պարենային ծրագրի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1982 թ.) պլենումի որոշումները գործողության իսկական ուղեցույց են դարձել կոլտնտեսության կուսկազմակերպության, նրա կոմիտեի, բոլոր կոմունիստների համար:

Եվ, բնականաբար, ինչպես կուսկոմիտեի հաշվետու զեկուցումը, այնպես էլ կոմունիստների ելույթները համակված էին հանրային արտադրության վերելքն ապահովելու, դրա առջև եղած խոչընդոտները շուտափույթ հաղթահարելու մտահոգությամբ:

«Արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը,— հաշվետու զեկուցման մեջ ասաց կոմիտեի քարտուղար Ռ. Հայրապետյանը,— տասնմեկերորդ հնգամյակի անցած ժամանակաշրջանում մեր կոմունիստների, բոլոր աշխատավորների համար եղել է ամենօրյա պրակտիկ գործունեության կարևորագույն խնդիրը»: Իսկ ինչպե՞ս է լուծվել այդ խնդիրը: Զեկուցողն իրազեկ պահեց, որ տնտեսությունը հաջողությամբ եզրափակեց տասներորդ հնգամյակը. նախատեսված պլանից ավելի պետությանը վաճառեց մեծ քանակությամբ պտուղ, բանջարեղեն, կաթ, միս, բուրդ, ձու: Իսկ տասնմեկերորդ հնգամյակի անցած ժամանակաշրջանում պետական մթերակայաններ են ուղարկվել այնքան պտուղ, խաղող ու բանջարեղեն, միս, բուրդ ու ձու, որ ակամայից համոզվում ես, թե, իրոք, կան բոլոր նախադրյալները՝ հնգամյակը չորս ու կես տարում փակելու համար: Մեղրեցիները դրան կհասնեն իրենց հայրենանվեր աշխատանքով ու ներքին ռեզերվների խելամիտ օգտագործմամբ:

Բարեհաջող են ընթացիկ հնգամյակի առանցքային տարվա գործերը. արդեն կատարվել են պետությանը պտուղ ու խաղող, կաթ ու բուրդ վաճառելու տարեկան առաջադրանքները: Եվ դա արտադրության աճի շնորհիվ: Բավական է ասել, որ պլանից ավելի արտադրվել է 20 տոննա խաղող, 200 տոննա պտուղ: Անասնապահության զարգացման համար ստեղծվում են լավ նախադրյալներ: Հաշվետու-ընտրական ժողովում ասվեց, որ անցյալ տարի, պահանջվածից զգալիորեն պակաս խոտ ու սիլոս կուտակելու պատճառով, մսուրային շրջանում անասունները թերանվեցին, և տնտեսությունը նահանջեց արդեն նվաճած բարձր բնագծերից: Դրությունն աս-

տիճանաբար շտկվում է: Նախ՝ լուծվում է և կերի բազան ամրապնդելու հարցը: Նախատեսված 850-ի փոխարեն, կուտակվել է շուրջ 1.800 տոննա խոտ, 600 տոննայի փոխարեն՝ ավելի քան 700 տոննա սիլոս: Հոկտեմբեր ամսին, օրինակ, 1982-ի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, օրական 100 կգ ավելի կաթ էր ստացվում: Արմատավորվում է կովերի մեքենայական կիթը:

Կոմունիստների ջանքերը ապարդյուն չեն անցել: Սակայն հաշվետու-ընտրական ժողովում և՛ զեկուցողը, և՛ մտքերի փոխանակությանը մասնակցած կոմունիստները նշեցին, որ նվաճած բնագծերը իրենց դեռևս չեն գոհացնում, կարելի էր ավելի բարձր արդյունքներ ունենալ: Եվ իրենք էլ թվարկեցին այն խոչընդոտները, որոնք խանգարել են առաջընթացին: Դրանք եղել են և՛ օբյեկտիվ, և՛ սուբյեկտիվ բնույթի: Այս տարի բնությունը չուրախացրեց իր բարեհաճությամբ. ձմեռն անսովոր երկարեց, իսկ հետո էլ կարկուտից տուժեցին այգիները: Կամ՝ տասնամյակներ առաջ գործարկված պահածոների գործարանն այլևս անկարող է մշակել շրջանում ու նաև իրենց կոլտնտեսությունում ստացված ամբողջ միրգը: Հայկոոպն էլ ուշացրել է պտղի իրացումը, թեև նախապես պայմանագիր էր կնքել տնտեսության հետ: Զեկուցողը և ելույթ ունեցողները (Ե. Մելիքսեթյան, Գ. Գրիգորյան, Վ. Ջհանգիրյան և ուրիշներ) ասացին, որ գրեթե 50 տոննա դեղձ ու 20 տոննա միջահաս խնձոր է փչացել: Եվ դա ոչ միայն մթերողների, այլև տնտեսության մարդկանց անհոգության հետևանքն է: Կարելի էր ավելի շատ բերք հավաքել, եթե այգիների ոռոգումն ու բուժումը կատարվեին ժամանակին:

Հողի արդյունավետ օգտագործման մտահոգություն կար օղակավար, բրիգադային կուսբյուրոյի քարտուղար Գ. Գրիգորյանի ելույթում: «Հողը,— ասաց նա,— ամեն բարիքի աղբյուր է, պետք է հոգատարությամբ վերաբերվել դրան: Երբեմն ծառերի ու վազերի բուժման ու փոշոտման գործը հանձնարարվում է ոչ գիտակ մարդկանց...»:

Կոլտնտեսության նախագահ Ս. Խաչատրյանն իր ելույթում ասաց, որ կապալային աշխատանքը լավ նորույթ է և պետք է ներդնել, մյուս տարի կստեղծենք անկարգագիր վարձատրման մեքենայական օղակ: Նա միաժամանակ քննադատեց մասնագետներին, բրիգադավարներին ու ֆերմաների վարիչներին՝ իրենց հնարավորություններից ցածր աշխատելու, երբեմն գործից բացակայելու համար: Եվ դրանով բացատրեց, որ ոռոգման ջուրը ռացիոնալ չի օգտագործվում, իսկ այգիները ջրի կարիք են զգում: Թերացումներ կան նաև ֆերմաներում. դեռևս ցածր է անասնապահական մթերքների արտադրության, անասունների մթերատվության մակարդակը: Նա նշեց, որ բրիգադային կուսկազմակերպությունների քարտուղարներն անբավարար են օգնում բրիգադավարներին:

Ինչպես տեսնում ենք, թերություններն ու թերացումները բացահայտվել են, այդ կապակցությամբ քննադատական խոսքեր են ասվել, բայց և այնպես դժվար չէր նկատել, որ այդ ամենը չբավարարեց ժողովականներից շատերին: Եվ կարծես այդ տրամադրությունն արտահայտեց ութսուներեքամյա կոմունիստ Դավիթ Ստեփանյանը, երբ ասաց, թե քննադատությունը թույլ էր, քարտուղարն էլ կուսկոմիտեի հաշվետու զեկուցման մեջ չբացահայտեց կոմունիստների թերությունները, մինչդեռ նրանք մեծ ուժ են, եթե ամեն մեկն իր տեղամասում լավ աշխատի, ապա արդյունքներն ավելի գոհացուցիչ կլինեն: Ամեն մի ճյուղի ղեկավար պետք է ժամանակին որոշի, թե ինչպիսի միջոցներով կատարի պլանը:

Եվ, իրոք, քննադատական խոսքը բավական չէ: Այն պետք է հասցեագրված լինի, ցույց տրվի, թե այս կամ այն թերության համար ով է մեղավոր: Հակառակ դեպքում քննադատությունը դառնում է ինքնանպատակ և գործին ոչ մի օգուտ չի կարող բերել: Այս առումով կաղում էին և՛ հաշվետու զեկուցումը, և՛ ոմանց ելույթները: Ըստ էության, հաշվետու զեկուցման այդ թերությունը բացասական ազդեցություն ունեցավ ելույթների վրա...

Միանգամայն տեղին էր ՀԿԿ Մեղրու շրջկոմի առաջին քարտուղար Ա. Վարդանյանի ելույթում արտահայտված կշտամբանքը: «Քննադատությունը,— ասաց նա,— բոլոր աշխատանքների հաջողության գրավականն է: Առանց քննադատության և ինքնաքննադատության հնարավոր չէ վերացնել թերությունները, ճիշտ ասաց Դավիթ քեռին, քննադատությունը պետք է դաս լինի: Մինչդեռ ժողովում քննադատությունը



թույլ էր, ոչ ոք հանդես չեկավ ինքնաքննադատությամբ: Ցավալի է, երբ ձեռքից բաց է թողնվում արդեն նվաճած բնագիծը և խնդիր է դրվում նորից վերականգնել այն: Մինչդեռ այսօրվա ձեռքբերումը վաղը չի կարող բավարարել մեզ»: Կուսշրջկոմի առաջին քարտուղարը, ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումի պահանջների լույսի ներքո, կոմունիստների ուշադրությունը հրավիրեց քննադատության ու ինքնաքննադատության ըստ ամենայնի ուժեղացման, բոլոր տեղամասերում աշխատանքային, կատարողական ու կուսակցական կարգապահության ամրապնդման, կադրերի պահանջկոտության ու պատասխանատվության բարձրացման, տնտեսական ու քաղաքական խնդիրների ճիշտ զուգակցման, դրանց լուծման հնարավորությունների խելամիտ օգտագործման և այլ հարցերի վրա: Նա խնդիր դրեց ժողովականների առջև՝ կշռադատել առկա հնարավորությունները, հաշվի առնել բոլոր ռեզերվները և կտրուկ միջոցներ ձեռնարկել բարձր բնագծեր նվաճելու համար... Նա առաջ քաշեց կոմունիստի բարոյական կերպարի հարցը. կոմունիստը պետք է մշտապես գտնվի իր կոչման բարձրության վրա, անհաշտ լինի թերությունների հանդեպ, պայքարի անտարբերություն կոչվող չարիքի դեմ:

## ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՊԱՀՈՎՈՒՄԸ

Ինչպես նշվեց կուսկոմիտեի հաշվետու զեկուցման մեջ, «Մեկ տասնյակից ավելի ագիտատորներ ու քաղինֆորմատորներ պարբերաբար լինում են կոլտնտեսականների շրջանում և կուսակցության ու կառավարության որոշումները հասցնում նրանց: Լայն ագիտացիա է տարվում պարենային ծրագրի իրականացման գործում աշխատավորների ուժերի մոբիլիզացման համար»:

Իրողություն է. կուսկոմիտեն լուրջ հետևություն է արել պարենային ծրագրի գաղափարական ապահովման, տնտեսական ու քաղաքական աշխատանքի զուգորդման վերաբերյալ կուսակցության պահանջներից և այդ ասպարեզում իր գործունեությունն առավել աշխուժացրել է ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումից հետո: Գործարար մթնոլորտում է անցել պլենումի արդյունքների և կոլտնտեսության կուսկազմակերպության խնդիրների մասին հարցի քննարկումը կուսակցական ժողովում: Այստեղ էլ արձանագրվել է, որ քաղդպրոցների ունկնդիրները մեծ հետաքրքրությամբ են ուսումնասիրել «Ազատ հանրապետությունների Միությունը», «Կուսակցության պարենային ծրագիրը» թեմաները, ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումի նյութերը: Պրոպագանդիստները տեսական հարցերը շաղկապել են տնտեսության առօրյա խնդիրների, պետական պլանների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման հետ:

Գաղափարական դաստիարակության, քաղաքական-մասսայական աշխատանքի հարցերը պատշաճ կերպով արծարծվեցին կուսակցական հաշվետու-ընտրական ժողովում: Խնդիր դրվեց արմատապես բարելավել քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության գործը, բարձրացնել պրոպագանդիստների պատասխանատվությունը, սոցիալիստական մրցության դաստիարակիչ դերը, աշխուժացնել ակումբի գործունեությունը և այլն:

Սոցիալիստական մրցության ղեկավարման և կազմակերպման նկատմամբ մշտական ուշադրության շնորհիվ այն այստեղ, իրոք, դարձել է աշխատանքային դաստիարակության ու հանրային արտադրության վերելքի գործուն միջոց: Ամեն տարի մշակվում են սոցմրցության պայմանները, հաստատվում կուսկոմիտեի, կոլտնտեսության վարչության, արհմիության տեղկոմի ու ԼԿԵՄ կոմիտեի համատեղ նիստում: Սահմանվել են և մրցողների նյութական ու բարոյական խրախուսման միջոցները: Մրցության հաղթողներին խրախուսելու համար միայն անցյալ տարի կոլտնտեսության վարչությունը հատկացրել է ավելի քան 40 հազար ռուբլի:

Հաշվետու զեկուցման մեջ, ճիշտ է, շոշափվեցին նաև ներկուսակցական աշխատանքի գրեթե բոլոր հարցերը, սակայն այստեղ ևս նկատելի էր հիմնական բացը. թերությունների կապակցությամբ արված քննադատությունն անդեմ, անհասցե էր: Այսպես. «Հաճախ կուսկոմիտեի երաշխավորած կադրը վստահված տեղամասում չի արդարացնում իրեն, ինչ-որ տեղ նրա մոտ չի բավարարում աշխատանքի փորձը, գործի նկատմամբ պատասխանատվությունը, սրտացավ վերաբերմունքը»: Կարելի՞ էր կոնկրետ օրինակով հիմնավորել ասածը: Անշուշտ:

## ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԺՈՂՈՎԻՑ ՀԵՏՈ

Ավարտվեց հաշվետու-ընտրական ժողովը: Ընտրվեցին նորընտիր կուսկոմիտեի ու շրջանային կուսկազմակերպության հերթական կոնֆերանսի պատգամավորներ, մշակվեց հետագա գործունեության ծավալուն ծրագիր: Նորընտիր կուսկոմիտեն կազմակերպության ղեկը նորից վստահեց Ռ. Հայրապետյանին: Ժողովը, կարելի է ասել, անցավ բարձր մակարդակով: Միայն ափսոսում ես, որ որոշ հարցեր չգտան իրենց սպառիչ լուծումը: Մինչդեռ, երբ ծանոթանում ես կուսկազմակերպության ողջ աշխատանքին, կոմիտեի երեք տարվա գործունեությանը, ապա համոզվում ես, որ գործ ունես կուսակցության մարտունակ ջոկատի հետ: Արտադրության կուսակցական ղեկավարման, կազմակերպական ու քաղաքական աշխատանքի, կոմունիստների ավանգարդային դերի ապահովման հարցերը մշտապես գտնվել են կուսկոմիտեի տեսադաշտում: Վկայությունը՝ կոմիտեի նիստերի ու կուսակցական ժողովների արձանագրությունները, ընդունած որոշումների կատարման խելամիտ կազմակերպումը, կոմունիստների աշխատանքային ներդրումները: Կազմակերպության պոտենցիալ հնարավորությունները իրավունք են տալիս հուսալու, որ նորընտիր կուսկոմիտեն, որտեղ ընդգրկվել են արտադրության առաջավոր ու ակտիվ կոմունիստներ, պատվով կլուծի իր առջև ծառացած նոր խնդիրները, կշտկի վրիպումները: Կուսակցության Մեղրու շրջանային կոմիտեում ևս այն կարծիքին են, որ ինչպես տնտեսության, այնպես էլ կուսկազմակերպության գլուխ կանգնած են բանիմաց ու գործը սիրող մարդիկ: Կուսկոմիտեի քարտուղար Ռ. Հայրապետյանը և կոլտնտեսության նախագահ Ս. Խաչատրյանը գաղափարապես կոփված կոմունիստներ են, հեղինակություն վայելող ղեկավարներ, կուսշրջկոմը նրանց հետ մեծ հույսեր է կապում...

Եվ ահա ժողովի հաջորդ օրը նախագահի ու քարտուղարի հետ մտքեր եմ փոխանակում ժողովում բացահայտված թերությունների վերացման, տնտեսության զարգացման հեռանկարների շուրջ: Հոգսերը տակավին շատ են, հեռանկարները՝ հուսադրող ու պայծառ: Հոգսերի մասին խոսվեց նաև հաշվետու-ընտրական ժողովում. դաշտերն ու այգիները մեքենահարմար չեն, մելիորացիոն աշխատանքները դանդաղում են, շինանյութերի կարիք է զգացվում և այլն:

Մեծ է Մեղրու կոլտնտեսության տեսակարար կշիռը շրջանի ընդհանուր էկոնոմիկայում: Նրան բաժին է հասնում արտադրվող ու մթերվող պտղի 30—35, խաղողի 13 տոկոսը, կաթի ու մսի գրեթե մեկ քառորդը: Այստեղից էլ՝ նրա զարգացման հեռանկարների կարևորությունը շրջանի առաջընթացի գործում:

Առաջիկա տարիներին ևս պտղաբուծությունը լինելու է տնտեսության առաջատար ճյուղը: Կոլտնտեսության նախագահն այդ առթիվ ասում է.

— Մեր տնտեսության հողային ռեսուրսները, Մեղրի գետի հովտում այգիների ընդարձակման հնարավորությունը խիստ սահմանափակ են: Սակայն փորձում ենք նոր ռեզերվներ հայտնաբերելու միջոցով անկարելին կարելի դարձնել: Ագարակ ավանի մերձակայքում յուրացրել ենք հինգ հեկտար նոր հողեր և հատկացրել մերձարևադարձային կուլտուրաներին: Նախատեսել ենք առաջիկա տասը տարում վերակառուցել բոլոր այգիները, դժվարամատչելի տեղանքներում խաղողի այգիները կփոխարինենք պտղատուով՝ դարավանդների ձևով, իսկ խաղողի այգիները կհիմնենք հարթ տեղերում, որտեղ հնարավոր լինի մեքենայացնել մշակության ու բուժման աշխատանքները: Պարզ է՝ գործը հեշտ կլինի, բերքը՝ առատ:

Նախագահին հիշեցնում եմ հաշվետու զեկուցման հետևյալ միտքը. «Կալեր հանդամասում կան հողային ընդարձակ տարածություններ, որոնք կարելի է օգտագործելի դարձնել»: Ու նա վերծանում է.

— Իրոք, այդպես է, դա մեր վերին գոտին է, շրջկենտրոնից բավականաչափ հեռու: Այդտեղ արդեն քսան հեկտարից ավելի հարթեցվել ու հնարավոր է մշակել: Լքյալ հողատարածություն էր, երեսուն տարուց ավելի չի մշակվել: Եկող տարի այնտեղ կհարթեցնենք ևս 30—40 հեկտար խոպան հողեր: Նախատեսվում է այդտեղ ջրարբիացնել և քսան հեկտարի վրա սիլոսացու եգիպտացորեն ցանել, մնացածը հատկացնել բազմամյա խոտաբույսերին: Իսկ գյուղամերձ այգիների վերակառուցման ընթացքում կստեղծենք տաս—տասներկու հեկտարանոց զանգվածային ցանքադաշտ՝ սիլոսացու եգիպտացորենի համար: Դրանով իսկ մի կողմից՝ մեկընդմիշտ



կլուծենք կերի բազայի ամրապնդման հարցը, մյուս կողմից՝ կմեքենայացնենք կերարտադրությունը:

Ակամայից հիշում եմ հաշվետու-ընտրական ժողովում իր իսկ՝ նախագահի արտահայտած հետևյալ միտքը. «Հողերի հարթեցման և մեքենայացման միջոցով հնարավոր է այժմյան 1.000-ի փոխարեն կստակել 2.000 տոննա խոտ, օգտագործել ձեռքի մեքենայական հնձիչներ»: Ու քանի որ խոսք եղավ կերի բազայի շուրջ, հարցնում եմ անասնապահության զարգացման հեռանկարներից: Նախագահն ասես հարցիս էր սպասում, իսկույն պատասխանում է.

— Մտադիր ենք եկող տարի կառուցել կոմպլեքսային մեքենայացված կովանոց՝ 300 գլխի համար, դա, ըստ էության, կաթնային համալիր կլինի: Տեղական բուծման և ընտրության միջոցով կբարելավենք կովերի ցեղական կազմը, կարմատավորենք տավարի մսատղաշի ինտենսիվ բտումը: Չմոռանամ ասել, պարենային ծրագրին համապատասխան, սոցիալական հարցեր էլ կլուծենք. նախատեսել ենք կառուցել բնակելի շենք՝ երիտասարդությանը տնտեսության հետ կապելու համար, էլեկտրական լուսավորություն անցկացնել հեռավոր գոմերում ու ոչխարանոցներում, անասնապահների համար ստեղծել կուլտուր-կենցաղային լավ պայմաններ: Կկառուցենք նաև 2—3 կիլոմետր այգեմիջյան ճամփաներ, որով հնարավոր կլինի նվազեցնել ձեռքի աշխատանքը, հեշտացնել բերքի փոխադրումը, կանխել կորուստները:

Հեռանկարների շուրջ գրասենյակում ծայր առած զրույցը շարունակվում է ճանապարհին: Մեղրի գետի աջակողմում, ճամփեզրին ճահճուտ է, կուսկոմիտեի քարտուղարն ասում է, որ այս հանդամասը Հերաթ է կոչվում, իսկ նախագահն ավելացնում է.

— Եգիպտացորենի զանգվածային ցանքադաշտն այստեղ ենք ստեղծելու: Ճահճուտը կչորացնենք ու, ա՜յ,— ձեռքը մեկնում է դեպի վեր,— մինչև լեռան լանջը կմշակենք, տասներկու հեկտար զանգվածային ցանքադաշտ կունենանք, երկու անգամ եգիպտացորեն կցանենք ու հեկտարից 1.000 ցենտներ միջին բերք կապահովենք, սիլոսի հարցը կլուծենք:

Բրդհոնջ հանդամասի մոտ նախագահը տեղեկացնում է.

— Տասնհինգ տարի առաջ այս դաշտը թփուտ էր ու հին, նվազ բերքատու խառը այգի՝ մանր կտորներով: Բուլդոզեր չկար, կիսատ-պռատ հարթեցրինք, հիմա և՛ տեխնիկա կա, և՛ փորձ, աստիճանաբար կվերակառուցենք ու կհիմնենք տասը հեկտարանոց խաղողի զանգվածային մեքենահարմար այգի: Մեկուկես հեկտարի վրա արդեն վազեր ենք տնկել: Առանց խաղող չի լինի: Երեք հեկտարանոց զանգվածային այգի էլ կհիմնենք Արաքսի մերձակա դաշտում, մի մասում արդեն վազեր կան, առաջիկայում և եկող տարվա գարնանը մնացածը կպատենք վազերով:

Ծրագիր չէ, այլ իրողություն. վերջին մեկ տասնամյակում միջնակների, ճահճուտների, մացառուտների, ավելորդ առվափոսերի ու ամուլ ծառերի վերացման հաշվին բնությունից նվաճվել է տասը հեկտար հողատարածություն, պտղատու և խաղողի այգի հիմնվել: Կարող է թվալ, թե աննշան թիվ է, սակայն եթե հաշվի առնենք, որ Մեղրու կոլտնտեսությունում մեկ հեկտարը առնվազն ութ հազար ռուբլու դրամական եկամուտ է բերում, ապա պարզ կլինի, թե ինչպիսի կարևորություն ունի բնությունից նվաճած ամեն մի թիզ հողը...

Եվ այսպես, Մեղրու կոլտնտեսության մարդիկ, կոմունիստները թիզ առ թիզ հող արարելու, քայլ առ քայլ արտադրության վերելքի նախադրյալներ ստեղծելու միջոցով իրականացնում են կուսակցության հռչակած պարենային ծրագրի իրենց բաժինը, խթանում շրջանի գյուղատնտեսության առաջընթացը... Կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովի մշակած միջոցառումների իրականացումը, նորընտիր կուսկոմիտեի ակտիվ գործունեությունը, անշուշտ, կնպաստեն այդ պրոցեսի արագացմանը...

**Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ**

# ՈՒՂԵՎՈՐԻ ՀԱՅԵՑԱԿԵՏՈՎ

ՄԵՐ ԿՈԼԵԿՏԻՎԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ գնահատականը տալիս է ուղևորը, գնահատում են բոլորը, ամեն օր, ամեն ժամ: Ցավոք, մենք լավ գիտենք, որ այն հաճախ անբավարար է լինում:

Երևանի քաղաքային էլեկտրատրանսպորտի վարչության կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում իր ելույթն այսպես սկսեց տրոլեյբուսի № 1 հավաքակայանի վարորդ Մ. Ավետիսյանը: Ծարքային կոմունիստի ելույթում խտացված ձևով արտահայտվեցին հաշվետու ժամանակաշրջանում՝ վերջին երեք տարում կուսկազմակերպության ու նրա կոմիտեի կատարած և՛ դրական աշխատանքը, և՛ բացթողումները, և թե տրանսպորտայինների մտահոգությունը գործերի վիճակն արմատապես շտկելու մասին: Ելույթում թվերը, ցուցանիշները քիչ էին: Հիմնական շեշտը նա դրեց կոմունիստների, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի պատասխանատվության բարձրացման, խղճով ու արդյունավետ աշխատելու հարցերի վրա:

— Այժմ, երբ ամենուրեք, ամբողջ սրությամբ դրված է կարգապահությունն ամրապնդելու խնդիրը,— ասաց նա,— հասարակական տրանսպորտի հստակ աշխատանքի ապահովումը ստացել է ավելի մեծ նշանակություն. մենք պարտավոր ենք ամեն ինչ անել, որպեսզի բանվորներն ու ծառայողները ժամանակին հասնեն աշխատավայր, վերադառնան տուն...

Հիշում եմ, անցյալ տարվա վերջերին, երբ մայրաքաղաքի կուսկազմակերպություններում քննարկվում էին ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի արդյունքները, այդ հարցերի շուրջ մամուլում հանդես էին գալիս աշխատավորները, մարդիկ, տվյալ կոլեկտիվի հետ առնչվող խնդիրների հետ միաժամանակ, գրեթե ամենուրեք խստորեն քննադատում էին մարդատար տրանսպորտի ձեռնարկություններին, առաջ քաշում հասարակական տրանսպորտի աշխատանքը բարելավելու խնդիրը՝ որպես աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու նախապայմաններից մեկը:

— Տրոլեյբուսի № 1 հավաքակայանը,— շարունակեց Մ. Ավետիսյանը,— գերակատարել է ընթացիկ տարվա ինը ամիսների առաջադրանքները: Դա մեր սկզբնական կուսկազմակերպության, լավագույն վարորդների աշխատանքի արդյունքն է: Սակայն քիչ չեն նաև այն մեքենավարները, որոնք անբավարար են կատարում իրենց պարտականությունները, անփույթ են վերաբերվում շարժակազմի հետ, երբեմն կանգառներում չեն կանգնեցնում տրոլեյբուսները, կանգառները չեն հայտարարում, կոպտում են ուղևորներին: Մի խոսքով, դեռևս ցածր է սպասարկման կուլտուրան: Դա հատկապես վերաբերում է երիտասարդ, նոր ընդունված վարորդներին: Հետևապես, վարչության բոլոր կոմունիստների պարտքն է ուժեղացնել վարորդական անձնակազմի, մանավանդ երիտասարդների հետ տարվող դաստիարակչական աշխատանքը, կանխել հոսունությունը:

Կադրերի հոսունության նվազումը, ինչպես նշված էր կուսկոմիտեի հաշվետու զեկուցման մեջ, որով հանդես եկավ կոմիտեի քարտուղար Է. Մեհրաբյանը, կոլեկտիվի համար դարձել է կենսական պրոբլեմ: Օրինակ, 1981 թվականին վարչության համակարգում աշխատանքի է ընդունվել 932 մարդ, ազատվել՝ 821-ը, այդ թվում համապատասխանաբար՝ 270 և 204 վարորդ: Հոսունությունը կազմել է 28,3 տոկոս: Այս տարի այն զգալիորեն նվազել է, նկատվում է կոլեկտիվի կայունացման միտում, սակայն վիճակը դեռևս հեռու է բավարար լինելուց: Ներկայումս, նախատեսված 784-ի փոխարեն, հավաքակայաններում աշխատում են ընդամենը 654 վարորդներ, ընդ որում մի մասը՝ համատեղությամբ: Այս պայմաններում հստակ երթևեկության ապահովման, չվացուցակի պահպանման մասին խոսելն ավելորդ է:

Քաղաքի էլեկտրատրանսպորտի ցանցը տարեցտարի ընդլայնվում է, երևան են



գալիս նոր թաղամասեր, նշանակում է՝ ավելի մեծ թվով ուղևորներ են օգտվում մարդատար տրանսպորտի այս ձևից, հետևապես նրան ներկայացվող պահանջներն ավելի են մեծանում: Թե ինչպիսի արագ տեմպերով է զարգանում, ինչպես է ամրապնդվում նրա նյութատեխնիկական բազան, երևաց զեկուցման մեջ բերված տվյալներից: Վերջին երեք տարում գործարկվել են ծովակալ Իսակովի փողոցով անցնող, ինչպես նաև Էրեբունի թաղամասը քաղաքի կենտրոնի հետ կապող տրոլեյբուսի գծերը՝ յուրաքանչյուրը 13,5 կմ երկարությամբ: Շուտով տրոլեյբուսները կհասնեն նաև Հարավ-արևմտյան թաղամաս, Ջրվեժ ավանը: Բացի այդ, շահագործման է հանձնվել ինը քարշային ենթակայան: Շարժակազմը համալրվել է տրամվայի 58 և տրոլեյբուսի 82 միավորով, ընթացքի մեջ է այլ օբյեկտների կառուցումը:

Վերադաս մարմինների օժանդակությամբ զգալիորեն բարելավվել են տրանսպորտայինների աշխատանքային, կուլտուր-կենցաղային պայմանները, կոլեկտիվի անդամներին հատկացվել են զգալի քանակությամբ բնակարաններ, անձնական օգտագործման ավտոմեքենաներ, առողջարանների ուղեգրեր, սկսել են գործել պանսիոնատը և պիոներական ճամբարը: Բարելավվել է երթևեկության կտրոնների իրացումը:

Այս ամենը դրականորեն է ազդել կոլեկտիվի բարոյահոգեբանական մթնոլորտի վրա, նպաստել մարդկանց ուժերի մոբիլիզացմանը, իր ելույթում ասաց վարչության պետ Ս. Հարությունյանը: Հաշվետու ժամանակաշրջանում վարչության ցուցանիշներն սկսել են բարձրանալ. ընթացիկ տարվա ինը ամիսների արդյունքներով կատարվել են շարժակազմի օգտակար գործակցի և վազքի, եկամուտների առաջադրանքները, տնտեսվել են 2,1 մլն կիլովատտժամ էլեկտրաէներգիա, շուրջ 100 հազար ռուբլու նյութեր: Առավել բարձր ցուցանիշներ են ապահովել տրամվայի № 1 և տրոլեյբուսի № 1 հավաքակայանները, ուր ստեղծված է մոբիլիզացիոն վիճակ, լավ են կազմակերպված սոցիալիստական մրցությունը, առաջավորների խրախուսումը: Նրանց օրինակով պետք է աշխատեն նաև մյուս կոլեկտիվները, արդյունավետ օգտագործվեն գոյություն ունեցող ռեզերվները:

Իսկ որ այդպիսիք շատ կան, վկայում են զեկուցման մեջ հիշատակված թվերը: Այսպես. ենթակայանների և կոնտակտային ցանցի խափանման պատճառով այս տարվա ինն ամսում տեղի է ունեցել շարժակազմի երթևեկության ընդհատման 132 դեպք՝ 100,4 ժամ ընդհանուր տևողությամբ: Պատկերն ամբողջացնելու համար նշենք, որ 105 դեպք՝ 205 ժամ տևողությամբ էլ եղել է էներգացանցի կողմից՝ էլեկտրական հոսանքը անջատելու պատճառով: Կան նաև այլ բնույթի բացասական երևույթներ. գծային ծառայության անձնակազմի մեղքով նույն ժամանակամիջոցում շարժակազմի դադարի տևողությունը կազմել է 122 ժամ:

Այս թվերի ետևում կարելի է պատկերացնել հարյուրավոր ու հազարավոր երևանցիների, որոնք կանգառներում սպասել են երկար, ուշացել աշխատանքից կամ տուն վերադառնալիս նյարդայնացել, հոգնել, վատ տրամադրությամբ տեղ հասել: Ակնհայտ է, որ վատ տրամադրությունն ուղղակիորեն բացասաբար է ազդում մարդու աշխատանքի արտադրողականության վրա: Պակաս վնաս չի հասցնում գծից՝ շարժակազմի ժամկետից շուտ հավաքակայան վերադառնալը: Այսպես, անցյալ տարի ժամկետից շուտ վերադարձել է տրամվայի 3.550 վագոն և 7.350 տրոլեյբուս, որոնց կեսից ավելին՝ տեխնիկական անսարքության և ցածրորակ նորոգման պատճառով: Նույն ժամանակամիջոցում փակուղիներում պարապուրդ է տվել 3.275 վագոն և 4.157 տրոլեյբուս:

Հաշվետու ժամանակաշրջանում ՀԿԿ Երևանի քաղկոմի բյուրոն երեք անգամ անդրադարձել է հասարակական տրանսպորտի, այդ թվում՝ քաղաքային էլեկտրատրանսպորտի աշխատանքներին: Ընթացիկ տարվա մայիսին քաղկոմի բյուրոն, քննարկելով «Քաղաքի մարդատար տրանսպորտային ձեռնարկությունների կուսկազմակերպությունների աշխատանքները ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի պահանջների լույսի ներքո» հարցը, քննադատական խիստ խոսք է ասել նաև էլեկտրատրանսպորտի վարչության և «Հայուղևորտրանս» տրեստի հասցեին, նշել դիսպետչերական աշխատանքի անբավարար դրվածքը, շարժակազմի տեխնիկական վատ վիճակը, երթևեկության խիստ անհամաչափությունը «պիկ» ժամերին և ուշ երեկոյան: Քաղկոմի բյուրոն արձանագրել է, որ քաղաքային մարդատար տրանսպորտում տեղ գտած թերությունները հիմնականում տնտեսական ղեկավարների ան-

բավարար աշխատանքի, ինչպես նաև ադմինիստրացիայի և ապարատի գործունեության նկատմամբ սկզբնական կուսկազմակերպությունների թույլ վերահսկողության հետևանք են:

Անդրադառնալով այդ որոշմանը, զեկուցողը նշեց, որ այն քննարկվել է վարչության համակարգի բոլոր 11 սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, ձեռնարկվել են համապատասխան միջոցներ:

— Թվում էր, որ այսօր Երքաղկոմի բյուրոյի՝ մայիսին ընդունած որոշման մասին կխոսվի մանրամասնորեն, այն առումով, թե հիշյալ որոշման ո՞ր կետերն են կատարվել, որո՞նք են ընթացքի մեջ և ի՞նչ է արվում այստեղ նշված թերությունները վերացնելու համար,— իր ելույթում ասաց Սպանդարյանի կուսշրջկոմի քարտուղար Թ. Սարգսյանը:— Սակայն դա գրեթե տեղի չունեցավ: Անշուշտ, վերջին շրջանում վարչության ցուցանիշները լավանում են, աշխատանքի մեջ որոշ տեղաշարժ է նկատվում, բայց այն դեռ հեռու է այսօրվա պահանջները բավարարելուց: Ձեր կոլեկտիվի աշխատանքը առնչվում է յուրաքանչյուր երևանցու, մայրաքաղաք ժամանած ամեն մի հյուրի հետ: Այստեղից էլ այն մեծ պատասխանատվությունը, որն ընկնում է կազմակերպության, կոմունիստների, կոլեկտիվի բոլոր անդամների վրա: Ինչպես նախորդ հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում, այնպես էլ այս տարի մի շարք կազմակերպություններում իրավացիորեն քննադատական խիստ խոսք է ասվում մարդատար ձեռնարկությունների, այդ թվում՝ էլեկտրատրանսպորտի վարչության հասցեին: Հետևապես, երևանցիները դեռևս դժգոհ են ձեր աշխատանքից: Այս վիճակից դուրս գալու հիմնական ուղին կոմունիստների պատասխանատվության բարձրացումն է բոլոր տեղամասերում, կարգապահության, հատկապես կատարողական կարգապահության ըստ ամենայնի ամրապնդումը:

Իսկ դրան հասնելու միջոցներից մեկը կոլեկտիվի շրջանում մասսայական-քաղաքական և գաղափարախոսական աշխատանքի ուժեղացումն է: Հաշվետու ժամանակաշրջանում կուսկոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները որոշ աշխատանք են կատարել կոլեկտիվի անդամների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, նրանց սովետական հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու, տնտեսագիտական գիտելիքները հարստացնելու ասպարեզում: Այդ նպատակին են ծառայում մարքսիզմ-լենինիզմի հիմունքների, գիտական կոմունիզմի, կոմունիստական աշխատանքի դպրոցներն ու սեմինարները, կոմերիտական ուսուցումն ու տնտեսագիտական կրթության օղակները, ուր ընդգրկված են կոլեկտիվի ավելի քան 2.000 անդամներ: Աշխատավորների առջև դասախոսություններով հանդես են գալիս «Գիտելիք» ընկերության անդամները: Այդ մասին, ինչպես նաև սոցիալիստական մրցության կազմակերպման և նրա դաստիարակիչ դերի, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու հարցերի շուրջ խոսեցին կոմունիստներ Վ. Մադոյանը, Դ. Հակոբյանը, Գ. Մանուկյանը և ուրիշներ:

Հաշվետու-ընտրական ժողովը միաժամանակ նշեց, որ գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքը շատ օղակներում չի գտնվել իր բարձրության վրա, կոլեկտիվի զգալի թվով անդամներ դուրս են մնացել գաղափարական-քաղաքական ազդեցության ոլորտից: Հաճախ դաստիարակչական աշխատանքը փոխարինվել է վարչարարությամբ, աշխատողներին տույժեր տալով: Այսպես, միայն անցյալ տարի հավաքակայանների վարորդները 340 անգամ ենթարկվել են կարգապահական պատասխանատվության, այսինքն տույժ է կրել յուրաքանչյուր երկրորդ վարորդը:

Անշուշտ, վարչական տույժը ևս դաստիարակության միջոց է, բայց, ինչպես վկայում են էլեկտրատրանսպորտի աշխատանքում գոյություն ունեցող թերությունները, այդ միջոցը այնքան էլ արդյունավետ չի եղել: Հիմնականը, ինչ խոսք, համբերատար, հետևողական դաստիարակչական աշխատանքն է, դրա արդյունավետության ու ներգործունության բարձրացումը, այն կոլեկտիվին առաջադրված խնդիրների հետ հմտորեն շաղկապելը: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում, կարգապահության ամրապնդումը ոչ թե կարճատև կամպանիա է, այլ ամենօրյա քրտնաջան աշխատանք: Հաշվետու ժողովը խնդիր դրեց առաջին հերթին հետևողական, սիստեմավորված աշխատանք կազմակերպել երիտասարդների, տրանսպորտ եկած նորեկների հետ, մի բան, որը, ըստ էության, անտեսվել է: Մինչդեռ նման աշխատանքի համար կան բավարար ուժեր: Այստեղ կոմունիստների թիվը



հասնում է 300-ի, կոլեկտիվի գրեթե նույնքան անդամներ ունեն նույն տեղում աշխատելու 25 տարուց ավելի ստաժ: Սակայն, ցավոք, աշխատանքի և կուսակցության վետերանների, լավագույն տրանսպորտայինների, վարպետ-դաստիարակների ուժը բավարար չի օգտագործվում:

Կոլեկտիվն ունի նաև պրոբլեմներ, որոնց լուծումը պահանջում է այլ կազմակերպությունների օգնությունը: Խոսքը, նախ, վերաբերում է էլեկտրատրանսպորտայինների շարքերը երիտասարդ, որակյալ բանվորներով համալրելուն: Այժմ ինչպե՞ս է լուծվում հավաքակայանները մեքենավարներով ու վարորդներով ապահովելու հարցը. հիմնականում պրոֆտեխնիկական ուսումնարանի միջոցով: Դա, անշուշտ, լավ է:

— Բայց վատն այն է, որ ուսումնարանի սովորողները մեծ մասամբ համալրվում են ոչ թե երևանցի երիտասարդների, այլ հանրապետության շրջաններից եկածների հաշվին,— ժողովի նախօրյակին կուսկոմիտեում տեղի ունեցած զրույցի ժամանակ ասաց տրամվայի № 2 հավաքակայանի դիրեկտոր Ա. Սարգսյանը,— այստեղից էլ երիտասարդներին բնակարանով ապահովելու և այլ դժվարություններ են ծագում, որոնք հոսունության պատճառ են դառնում: Ի դեպ, վարորդական կազմը լավ աշխատելու, առաջադրանքները գերակատարելու դեպքում բավական բարձր աշխատավարձ է ստանում, բայց մայրաքաղաքի երիտասարդները խուսափում են մեզ մոտ գալ...

Հարցը, իրոք, արժանի է Երևանի ժողկրթության և պրոֆտեխկրթության մարմինների ղեկավարների ուշադրությանը: Կուսակցությունը պահանջում է դպրոցում ուժեղացնել աշխատանքային դաստիարակությունը, մասնագիտական կողմնորոշման նպատակով պատանիների ու աղջիկների շրջանում տարվող աշխատանքը: Խնդիր է դրվում նրանց ավելի ու ավելի շատ կողմնորոշել դեպի բանվորական մասնագիտությունները, շրջանավարտների մոտ անմիջականորեն նյութական արտադրության ոլորտում աշխատելու հակում դաստիարակել: Այս առումով Երևանի բազմաթիվ դպրոցներում ևս նկատելի տեղաշարժեր կան: Գուցե նպատակահարմար է տրամվայի և տրոլեյբուսի հավաքակայանների մոտակայքում գտնվող որոշ միջնակարգ դպրոցներում ստեղծել տրամվայի մեքենավարի և տրոլեյբուսի վարորդի խմբակներ, դպրոցականներին սովորեցնել այդ գործը, սեր պատվաստել այդ մասնագիտության նկատմամբ, ինչպես որ մայրաքաղաքի մի քանի դպրոցներում ուսումնասիրում են ավտոգործը: Երևանի կառուցապատմանը զուգընթաց երկարում են նաև տրոլեյբուսի ու տրամվայի գծերը, հետզհետե ավելի ու ավելի շատ մեքենաներ են դուրս գալիս երթուղիներ, ուստի աստիճանաբար մեծանում է մեքենավարների կարիքը: Հետևապես, էլեկտրատրանսպորտի համար որակյալ բանվորական կադրերի պատրաստման գործն ավելի ճիշտ հունի մեջ դնելը դարձել է հրամայական պահանջ:

Մյուս պրոբլեմը կապված է երթևեկության կտրոնների հետ: Ինչպես հայտնի է, երթևեկության կտրոնների իրացումը ներկայումս մասամբ կատարվում է քաղաքի աշխատավորական կոլեկտիվների օժանդակությամբ: Այս հարցում, ինչքան էլ տարօրինակ թվա, իրենք՝ տրանսպորտայինները, հիմնականում հանդես են գալիս միայն պահանջողի դերում: Այս վիճակը շտկելու, նորմալ հունի մեջ դնելու հիմնական նախապայմանը տրանսպորտի աշխատանքի արմատական բարելավումն է, սահմանված չվացուցակների պահպանումը, ինչպես և տրամվայ-տրոլեյբուսներում (հասկանալի է, նաև ավտոբուսներում) երթևեկության կտրոնները դակելու նկատմամբ խիստ հսկողության սահմանումը: Այս գործում տիրող անպատասխանատվությունը մեկնաբանությունների կարիք չի զգում: Գրեթե ամեն ինչ թողնված է ուղևորների խղճի վրա՝ կտրոնը կդակի, լավ, չի դակի, ոչի՛նչ, մեկ է հիմնարկ-ձեռնարկությունների հասարակական կազմակերպությունների ուժերով տվյալ ամսվա կտրոնները կվճառվեն, և էլեկտրատրանսպորտի վարչությանը կփոխանցվի համապատասխան գումար: Այսինքն՝ նա կկատարի եկամուտների պլանը: Երկրի ո՛րևէ այլ քաղաքի հասարակական տրանսպորտում նման «ազատ» երթևեկություն չեք տեսնի:

Ծարժակազմում հսկողություն իրականացնելու համար վարչությանը հատկացված է հարյուր հաստիքային միավոր: Ժողովում նշվեց, որ այդ հաստիքները միայն կիսով չափ են օգտագործվում. իբր մարդիկ չեն ցանկանում այդ գործով զբաղվել: (Երևի ավելի ճիշտ կլինի ասել, որ վարչության ղեկավարությունը, կուսկոմիտեն, համապատասխան բաժինները չեն ցանկանում այդ հարցով զբաղվել):

Իսկ հսկիչները ինչպե՞ս են իրականացնում իրենց պարտականությունները: Ուղղակի պետք է ասել՝ վատ: Նախ, նրանք հազվադեպ են երևում. դրանում անբարեխիղճ ուղևորները վաղուց են համոզվել ու չարաշահելու առիթը բաց չեն թողնում: Եվ հետո, անհասկանալի է, թե ինչու նրանք ապավինում են միայն կանգառներում ուղևորներին ստուգելու պրակտիկային: Չբացառելով ստուգման այդ եղանակի անհրաժեշտությունը, մենք, այնուամենայնիվ, գտնում ենք, որ հսկիչների հիմնական նպատակը պետք է լինի պրոֆիլակտիկ աշխատանքը, այսինքն՝ հասնել նրան, որ ուղևորը նախապես անպայման դակի երթևեկության կտրոնը: Այդ կարգը վաղուց կիրառվում է երկրի այլ քաղաքներում և իրեն լիովին արդարացնում է: Այդ քաղաքներում հսկիչները, բարձրանալով շարժակազմ, մեկը՝ առջևի, մյուսը՝ ետևի դռնից, ուղևորներին խնդրում են նախապատրաստել դակած կտրոնները կամ տոմսերը, հերթով ստուգում են ու անտոմս ուղևոր հայտնաբերելու դեպքում տեղն ու տեղը տուգանում: Այս ձևի շնորհիվ տվյալ մեքենայում գտնվող ուղևորների ստուգումը կատարվում է շատ արագ, արդյունավետ, տասնյակ մարդիկ դակում են իրենց կտրոնները և վերջ: Այսինքն, ապահովվում է հիմնական նպատակը՝ տրանսպորտով անտոմս ուղևորների երթևեկության կանխումը:

Այս հարցն ունի նաև այլ, մեր կարծիքով, ֆինանսականից ոչ պակաս կարևոր կողմ՝ դաստիարակչական: Դպրոցական երեխան, ամեն անգամ տրանսպորտից օգտվելիս, նկատում է, թե ինչպես բազմաթիվ ուղևորներ երթևեկում են անտոմս, խախտում սահմանված կարգը: Այսպիսով, փոքրիկ երևանցին, շատ վաղ հասակից ականատես է լինում մասսայական կարգազանցության: Եվ նրանցից շատերը իրենք են սկսում անտոմս երթևեկել: Քաղաքացիական պարտքի ու պատասխանատվության, բարեխղճության ու ազնվության վերաբերյալ դպրոցում նրա լսածը բախվում է կյանքում տեղ գտած այս արատավոր երևույթի հետ: Եվ դժվար չէ կռահել այն հետևանքները, որ մանկան հոգում կարող է թողնել մեծահասակների այդ վարքագիծը:

Մեզ մոտ անտոմս ուղևորներին իրենք՝ պարտաճանաչ ուղևորները, ոչ մի ուշադրություն չեն դարձնում: Իսկ Մոսկվայում, Լենինգրադում, այլուր բոլորս վկա ենք եղել, թե ինչպես քաղաքացիներից որևէ մեկը, նկատելով, որ ուղևորը տոմսի արժեքը չի մուծել կամ կտրոնը չի դակել, հիշեցնում է այդ մասին, կամավոր կարգով հասարակական հսկիչի դեր ստանձնում: Պարզապես կատարում է իր քաղաքացիական պարտքը:

Այս առումով մենք՝ երևանցիներս, ընդօրինակելու շատ բան ունենք: Անելիքներ ունեն նաև տրամվայ-տրոլեյբուսների, ավտոբուսների վարորդները: Կոմունիստ Մ. Ավետիսյանն իր ելույթում նշեց, որ բարեխիղճ վարորդը նաև հսկիչ է: Իրոք, կան մեքենավարներ, որոնք իրենց այդ պարտականությունը վատ չեն կատարում: Ինչպես կանոն, վարորդի նախազգուշացումից հետո ուղևորներն սկսում են աշխուժորեն դակել կտրոնները:

Ցավով պետք է նկատել, որ նման վարորդների թիվը դեռևս փոքր է: Եվ դա վկայում է, որ կոլեկտիվում, հատկապես վարորդների շրջանում քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, նրանց մեջ ակտիվ կենսադիրքորոշման դաստիարակությունը ներգործուն ու արդյունավետ չեն: Ավելին, եթե հաշվետու-ընտրական ժողովում հարևանցիորեն հիշատակվեց պրոպագանդիստական ու դասախոսական աշխատանքը, ապա կուսկազմակերպությունների ագիտկոլեկտիվների, քաղինֆորմատորների խմբերի գործունեության վերաբերյալ ոչ մի բառ չասվեց ու պարզ չդարձավ, թե այդպիսիք ընդհանրապես գոյություն ունեն, թե ոչ: Չխոսվեց նաև այն մասին, թե ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան և ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումների որոշումների կատարման նպատակով ինչ միջոցներ են ձեռնարկվել, ինչպիսի աշխատանք է կատարվում:

...Քաղաքային էլեկտրատրանսպորտի վարչության կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովից անցել էր մի քանի շաբաթ: Մայրուղիներից մեկում վերջերս դարձյալ իրար ետևից շարվել էին տրամվայները: Մի քանի օր անց նկատեցի կանգնած տրոլեյբուսների շարանը: Նշանակում է՝ հաշվետու-ընտրական ժողովի ընդունած որոշումը բավարար չի կենսագործվում, դեռևս ոչ բոլոր կոմունիստները և ղեկավար աշխատողներն են անհրաժեշտ հետևություն արել հաշվետու-ընտրական ժողովում ծավալված առողջ, սկզբունքային քննադատությունից:

**Դ. Գ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ**

# ԺԱՄԱԳՈՐԾՆԵՐԻ ՄՈՏ

ԼՈՒՅՍԵՐՈՎ ՈՂՈՂՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀՈՒՄ դեռ իրարանցում կար. մեկը գնում էր դեպի վերջին շարքերը, մյուսը՝ բարձրանում բեմ ու անհայտանում վարագույրների ետևում, երրորդը՝ արագ է մտնում ու հայացքով որոնում ընկերոջը, որը, հավանաբար, իր համար տեղ պիտի պահեր...

Ոչ ոքի չեմ ճանաչում: Գիտեմ, միայն, որ ժամագործ են՝ «Սևանի» արտադրական միավորման Երևանի ժամացույցի գործարանի բանվոր-ծառայողներ: Կոմունիստ են նրանք. եկել են հաշվետու-ընտրական ժողովի: Մեծ մասամբ կանայք են, ջահել աղջիկներ:

Դեռ հինգ—վեց րոպե ժամանակ կա մինչև ժողովը: Նայում եմ դահլիճում նստած այս ժամագործներին և ակամա ընկնում մտքերի ետևից: Մտածում եմ, թե ինչպես մարդն իր օրերն սկսել է չափել հնագույն ժամանակներից: Սկզբում պարզից էլ պարզ ձևով՝ ցերեկ ու գիշեր: Հետո նա ցերեկը բաժանել է մի քանի մասի՝ առավոտ, կեսօր, իրիկուն: Ավելի ուշ քարի վրա գծեր է փորագրել ու արևի լույսով ցերեկվա տևողությունը բաժանել մասերի: Դա մարդու առաջին ժամացույցն էր: Սակայն արևի ժամացույցը անուղղելի թերություն ուներ՝ դա միայն արևոտ ցերեկվա համար էր: Այնինչ մարդուն պետք էր ժամանակը չափել նաև ամպամած օրերին, նաև՝ գիշերը: Եվ հնարամիտ մարդն ստեղծել է ջրի ժամացույցը: Ջուրը մի ամանից դանդաղորեն թափվել է մի ուրիշ ամանի մեջ ու այդպես չափել ժամանակը: Հետագայում նույն սկզբունքով մարդը պատրաստել է ավազե ժամացույց: Այդպես անցել են դարեր... Իսկ ե՞րբ և ո՞վ է ստեղծել իսկական ժամցույցը...

Իմ մտքերն ընդհատվեցին: Ժողովն սկսվեց: Նախագահության անդամները բարձրացան բեմ: Նրանց մեջ ես ճանաչեցի մի քանի մարդու: Ռոզա Գրիգորյանի հետ ծանոթացել էի մի քանի օր առաջ: Նա ժամացույցի գործարանի գալվանապատման արտադրամասի պետն է, կուսկոմիտեի քարտուղարի տեղակալը: Այն ժամանակ նրա հետ մենք շրջագայեցինք ձեռնարկության բոլոր արտադրամասերում: Ինձ առանձնապես հետաքրքրում էր, թե որտեղից է սկսվում և որտեղ է ավարտվում ժամացույցի պատրաստումը:

— Մերը հենց իսկական գործարան է,— ասաց իմ ուղեկիցը,— ժամացույցի բոլոր մասերը ինքներս պատրաստում, ինքներս էլ հավաքում ենք: Միայն գունավոր ու սև մետաղները, ճկազանգվածի հումքը, մի խոսքով, նյութերն ենք դրսից ստանում:

Մենք մի արտադրամասից անցնում էինք մյուսը, հաճախ կանգնում այս կամ այն սրամիտ մեքենայի մոտ, նայում բանվորների գործը, նրանց ստեղծածը: Շատ տեղամասերում նորոգման-վերակառուցման աշխատանքներ էին կատարվում:

— Մեր միավորման դիրեկտորը,— բացատրում էր Ռոզա Գրիգորյանը,— անհանգիստ մարդ է: Նրան միշտ որևէ տեղում ինչ-որ բան դուր չի գալիս: Շարունակ որոնումների մեջ է, ուզում է, որ ամեն տեղ ամեն ինչ կատարյալ լինի: Երեք—չորս տարի է, ինչ նա եկել է մեր գործարան, ու շարունակ վերակառուցումների մեջ ենք: Ինքներդ էլ տեսնում եք, թե որքան նեղվածք է...

Եվ այսպես, մի տեղ ատամնանիվներ էին պատրաստում, մի ուրիշ տեղ՝ պատվանդան, որի վրա հավաքվում է ժամացույցի մեխանիզմը, մի արտադրամասում մետաղից էին զարթուցիչների պատյան պատրաստում, մի այլ տեղ՝ ճկազանգվածից: Չէ՞ որ կան պատվիրատուներ, որոնք միայն մետաղե պատյանով ժամացույց են ուզում, կան այնպիսիք էլ, որ գերադասում են պլաստմասսան:

— Իսկ սա գալվանապատման արտադրամասն է,— ինձ առաջնորդելով մի շինություն՝ ասաց Ռոզա Գրիգորյանը: Նա ոչ մի գնով զգացնել չտվեց, թե սա իր

քսան հազարից ավելի ժամացույց: Այս տարի յուրացրել ենք էլեկտրոնային զարթուցիչների արտադրությունը: Դրանցից արդեն ամսական թողարկում ենք 16 հազար հատ:

Այնուհետև Անուշ Գևորգյանն անդրադարձավ իրենց գործում տեղ գտած թերություններին: Նա խստությամբ նշեց այսպիսի փաստ. եթե մենք՝ էլեկտրոնային ժամացույցների արտադրամասի աշխատողներս, անողոք բծախնդրությամբ վերաբերվենք մյուս արտադրամասերից ստացվող դետալների նկատմամբ, ապա ընդհանրապես ոչ մի ժամացույց չպիտի հավաքենք, որովհետև այդ դետալները չունեն համապատասխան որակ ու չեն կարող ապահովել ժամացույցի հետագա հստակ աշխատանքը: Եվ ստացվում է այսպիսի պատկեր. ցածրորակ դետալների պատճառով մենք հավաքում-թողարկում ենք ոչ հուսալի ժամացույցներ: Իսկ նյութերի ոչ համաչափ մատակարարումների հետևանքով տալիս ենք պարապուրդներ: Հետո ասաց, որ թե՛ ցածրորակ դետալների թողարկումը, թե՛ մատակարարման խախտումները անկարգապահության արտահայտություն են: Հանրահայտ ճշմարտություն է, որ գործարանի բոլոր արտադրամասերն ու տեղամասերը փոխադարձ սերտ կապի մեջ են: Մի օղակում գործերի ձախողումը անմիջականորեն ազդում է արտադրության շատ գործընթացների, միավորման ընդհանուր աշխատանքի ռիթմի վրա: Ահա թե ինչու չափազանց կարևոր է, որ բոլոր արտադրամասերում մեկընդմիշտ ապահովվի հըստակ, համաչափ աշխատանք:

Կարգապահության ու որակի հարցերի շուրջ իրենց հուզող մտքերն արտահայտեցին ավտոմատ արտադրամասի պետ Լեոնիդ Խաչատրյանը, կադրերի բաժնի վարիչ Եղիշե Բեգլարովը, տեխնիկական վերահսկողության բաժնի պետ Վլադիմիր Հակոբյանը, ժողովրդական վերահսկողության խմբի նախագահ Ստեփան Կարապետյանը, ժողովրդական դեպուտատների 26 կոմիսարների շրջանային գործկոմի նախագահի տեղակալ Յուրի Հակոբյանը:

— Կարգապահությունը,— ասաց Եղիշե Բեգլարովը,— արտադրության կազմակերպման հիմքերի հիմքն է:

— Շատ տեղերում,— շեշտեց Յուրի Հակոբյանը,— կարգապահության հարցը հասցրել են պրիմիտիվության. չափանիշ է համարվում միայն աշխատանքի գալն ու գնալը: Մինչդեռ ամենից կարևորը արտադրական կարգապահությունն է, որով մեծապես պայմանավորված են աշխատանքի արտադրողականության աճը, արտադրանքի բարձր որակի ապահովումը, պետական առաջադրանքների կատարումը:

— Ես չեմ կարծում, թե անկարգապահությունը միտումնավորության հիմքեր ունի,— ասաց «Սևանի» արտադրամիավորման գլխավոր դիրեկտոր Կիմ Գալոյանը:— Դա հիմնականում կապված է անտարբերության հետ: Մի տեղ ստացված դետալը չի համապատասխանում ստանդարտին: Ոչի՛նչ: Այդ դետալը հավաքող բանվորը ամենևին չի անհանգստանում: Նա անտարբերությամբ շարունակում է իր գործը, անպետք դետալը ամրացնում ուր պետք է, մի խոսքով, կատարում է իր պլանը: Այսպիսի անտարբերությունը մեծապես վնասում է մեր ընդհանուր գործին:

Խոսելով ժամացույցների որակի մասին՝ միավորման ղեկավարը այնուհետև ասաց.

— Մեր օրերում գնորդը ժամացույց ընտրելու լայն հնարավորություններ ունի: Բնականաբար, նա կվերցնի առավել ճաշակով ձևավորված, գեղեցիկ ու նորաձև ու ճիշտ աշխատող ժամացույց: Մենք տարեկան գործ ունենք հինգից վեց միլիոն մարդու կամ ընտանիքի հետ և պետք է կարողանանք դիմանալ ժամացույցների լայն տեսականու շնորհիվ ստեղծված մրցությանը: Դիմանանք այնպես, որ ավելի քան հինգ միլիոն գնորդները երես չդարձնեն մեզանից, մեր նոր զարթուցիչներից...

Գնորդները, իհարկե, երես չեն դարձնում... «Սևանի» մակնիշի ժամացույցները մեծ պահանջարկով սպառվում են ոչ միայն Սովետական Միության հանրապետություններում, այլև առաքվում են Կուբա ու Վիետնամ, Մոնղոլիա ու Լեհաստան, Ռումինիա ու Չեխոսլովակիա, Հունգարիա ու Գերմանական Դեմոկրատական Հանրապետություն ու նաև՝ Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն:

Հունգարիայում, Բալատոն լճի ափին մի փոքրիկ, բայց գեղեցիկ քաղաք կա, որ կոչվում է Բալատոն Ալմադի. այսինքն՝ Բալատոնի խնձորի հայրենիք: Ահա այդ



ամառանոցային քաղաքի խանութներից մեկի ցուցափեղկում ժամացույցներ էին դրված՝ ձեռքի, գրպանի, սեղանի, պատի... Դրանք շատ էին ու զանազան երկրների: Եվ այդ ամենի մեջ հպարտորեն կանգնած էր,— համենայնդեպս, ինձ այդպես էր թվում,— մերը՝ հայկական «Սևանի» մակնիշով զարթուցիչը... Ասես հարազատի էինք հանդիպել. այնքա՜ն հաճելի էր Երևանից հազարավոր կիլոմետր հեռու, հունգարական ամառանոցային այդ փոքրիկ քաղաքում մեր ժամացույցը տեսնելը: Ափսոս, որ վաճառողը ռուսերեն չգիտեր, ու մենք էլ հունգարերենից բան չէինք հասկանում, թե չէ հարցեր ունեինք տալու գործակատարին. այսինքն, թե՝ կա՞ն մեր ժամացույցի գնորդներ, մինչև հիմա որքա՞ն է վաճառվել և այլն:

Երևանյան զարթուցիչների պահանջարկը շատ է, և «Սևանի» արտադրամիավորումը շարունակ վերակառուցվում, ընդարձակվում, մեծանում է: Նա իր մասնաճյուղերն ունի Թալինի շրջանի Մաստարա գյուղում և Վարդենիսում: Միաժամանակ միավորումը զինվում է նորագույն տեխնիկայով: Հայտնի է, որ միապաղաղ աշխատանքը, շարունակ նույն գործողության կրկնումը հոգնեցնում, ձանձրացնում են բանվորին: Իսկ արդի գիտությունն ու տեխնիկան հնարավորություններ են ընձեռել ավտոմատացնելու այդպիսի աշխատանքը, ստիպելու, որ այդ գործն անի աչքամիտ մեքենան: 1982 թ. սկսած գործարանում մեծ աշխատանքներ են կատարվում արտադրության մեջ ռոբոտների օգտագործման համար: Անցած տարի տարբեր տեղամասերում ներդրվել է այդպիսի տասը միավոր: Իսկ այս տարվա վեց ամսում գործի են դրվել 22 ավտոմատ մանիպուլյատորներ ու ռոբոտներ: Մինչև այս տարվա վերջը արտադրության մեջ կներդրվի ևս այդպիսի 98 միավոր...

Հաշվետու-ընտրական ժողովի ընդունած որոշման մեջ շեշտը դրվեց արտադրության բոլոր օղակներում աշխատանքային ու տեխնոլոգիական կարգապահության ամրապնդման, արտադրանքի որակի ըստ ամենայնի բարելավման վրա: Երևանյան ժամացույցներին՝ բարձր որակ— ահա ժողովականների մտահոգության գլխավոր խնդիրը:

**Խ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**

## Տասնմեկերորդ հնգամյակի բնագծերում

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՆԱԽԱՊԱՅՄԱՆԸ

Զ. Տ. ՊԱՊՅԱՆ

*ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի պայմաններում բանվորական կադրերի և արտադրության մասնագետների պատրաստումն ու վերապատրաստումն ունեն պետական մեծ նշանակություն: Վ. Ի. Լենինը բնակչության հանրակրթական և կուլտուրական մակարդակի աճը համարել է աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորագույն գործոններից մեկը: Նա նշել է, թե ով ձգտում է կառուցել կոմունիստական հասարակարգ, «պետք է հասկանա, որ միայն արդի կրթության հիման վրա կարող է այդ ստեղծել, և եթե նա չունենա այդ կրթությունը, կոմունիզմը սոսկ ցանկություն կմնա» (ԵԼԺ, հ. 41, էջ 366):*

*Մեր երկրում վիթխարի աշխատանք է կատարվել լենինյան այդ ծրագրային պահանջը իրականություն դարձնելու նպատակով: ՍՄԿԿ XXVI համագումարը բանվոր դասակարգի առաջատար դերի ամրապնդումը պայմանավորեց նրա գաղափարաքաղաքական հասունությամբ, կրթվածությամբ և պրոֆեսիոնալ որակավորմամբ: «Տասը տարի առաջ բանվորների կեսից միայն փոքր-ինչ ավելին ուներ միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) և բարձրագույն կրթություն, իսկ այժմ՝ երեք քառորդը: Ուրախացնում է այն, որ բարելավվում է բանվոր դասակարգի երիտասարդ համալրման պրոֆեսիոնալ պատրաստությունը. 60-ական թվականներին պատանիների և աղջիկների միայն մեկ երրորդ մասն էր մասնագիտություն ստացել պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության սիստեմում, իսկ միայն տասներորդ հնգամյակի ընթացքում՝ 12,5 միլիոն մարդ, այսինքն՝ արտադրություն եկած բանվորների երկու երրորդը: Փոխվում է նաև ժամանակակից բանվորի աշխատանքի բուն բնույթը: Այդ աշխատանքն ավելի ու ավելի է լցվում մտավոր բովանդակությամբ» (*ՍՄԿԿ համագումարի նյութերը, *էջ 84—85):*

*Յու. Վ. Անդրոպովը* Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր *հոդվածում արդի փուլում աշխատանքի կուլտուրայի և արտադրության կազմակերպման բարելավման գործոններից մեկը համարում է մեր բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ փորձը և որակավորումը, ժողովրդական տնտեսության գործիմաց մասնագետների և ղեկավար կադրերի առկայությունը, գիտական, մտավոր այն հզոր պոտենցիալը, որի արտադրողական ուժն այսօր առավել նշանակալի է դառնում:*

*Արդի պայմաններում գիտատեխնիկական առաջընթացի արագացումը և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը ժողովրդական տնտեսության զարգացման հրատապ և փոխկապակցված պրոբլեմներն են: Այժմ, քան երբեք, էկոնոմիկայի արագ զարգացման կարևոր պայմանը խստագույն*



*կազմակերպվածությունն է, աշխատանքային, տեխնոլոգիական և պլանային կարգապահությունը, կարգ ու կանոնը և ձեռներեցությունը:*

*Արդյունաբերության ճյուղերի կառավարման բարդացումը, հաշվողական տեխնիկայի, ինչպես նաև բարձր արտադրողական մեքենաների, հաստոցների և ավտոմատների ներդրումն այսօրվա բանվորից, մասնագետից ու արտադրության ղեկավարից պահանջում են գործիմացություն, լավատեղյակություն, տեխնիկայի տիրապետում, գիտատեխնիկական մտածողության ունակություն, նորի զգացում: Այսօր մեր երկրի հաստոցների պարկը 25 տոկոսով գերազանցում է ԱՄՆ-ին, և այժմ էլ մենք ավելի շատ հաստոցներ ենք արտադրում: Մենք մյուս երկրներին գերազանցում ենք նաև ինժեներների թվով:*

*Ժողովրդական տնտեսության տեխնիկական զինվածության աճը որակապես նոր մոտեցում է պահանջում բանվորական կադրերի և մասնագետների պատրաստման համակարգի կառուցվածքի նկատմամբ: Այսպես, պարենային ծրագրին համապատասխան գյուղին անհրաժեշտ են ո՛չ միայն տրակտորիստներ ու մեխանիզատորներ, այլև անասնապահական կոմպլեքսների օպերատորներ, հսկիչ-չափիչ սարքերի և ավտոմատների մասնագետներ, տեխնիկական դիագնոստիկայի վարպետներ, վարպետ-կարգավորողներ, մեքենատրակտորային պարկը սպասարկող փականագործներ, մեխանիզատոր-մելիորատորներ և այլն:*

*Դրան զուգընթաց՝ ամեն տարի արտադրական ստորաբաժանումներից տարբեր պատճառներով, այդ թվում և կենսաթոշակի անցնելու կապակցությամբ հեռանում են բազմաթիվ որակյալ աշխատողներ: Բնականաբար, արտադրության մարդկանց փոխարինողների պատրաստումը դառնում է օրվա կարևորագույն խնդիրը և ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների առաջնահերթ գործը: Ահա թե ինչու բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների և արտադրության ղեկավարների մասնագիտական-տեխնիկական ու գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացումը մինիստրությունների և գերատեսչությունների գործունեության անբաժանելի մասն է: Ընդհանուր առմամբ արտադրության մեջ կադրային աշխատանքն ընդգրկում է բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների որակավորման բարձրացումը, երիտասարդ բանվորների պատրաստումը և աշխատանքային դաստիարակությունը, բանվորական կադրերի ընդհանուր և մասնագիտական կրթությունը, բուհերի, տեխնիկումների, ուսումնարանների հետ կազմակերպչական կապերը, սովորողների արտադրական պրակտիկայի կազմակերպումը, ինժեներատեխնիկական կադրերի ատեստացիան, բրիգադավարների ու վարպետների պատրաստումը, միջին օղակի ղեկավար կադրերի ռեզերվի ստեղծումը և այլն: Հասկանալի է, որ այս համակարգի առանձին բաղադրամասերը փոխկապակցված են, և կադրերի պատրաստման ու որակավորման բարձրացման հարցերը չեն կարող լուծվել աշխատանքային, քաղաքական և տնտեսական դաստիարակության խնդիրներից անջատ: Աշխատանքային ռեսուրսների արդի պետական քաղաքականությունն իրականացվում է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Ժողովրդական տնտեսության ղեկավար աշխատողների և մասնագետների պատրաստման հետագա բարելավման մասին» (1977 թ.) և «Արտադրության մեջ բանվորների պատրաստման և որակավորման բարձրացման հետագա կատարելագործման միջոցառումների մասին» (1979 թ.) որոշումների և կուսակցության XXVI համագումարի ցուցումներին համապատասխան:*

*Հանրապետության մինիստրություններն ու գերատեսչությունները, շատ ձեռնարկություններ ու կազմակերպություններ ակտիվ աշխատանք են կատարում կադրերի պատրաստման ու վերապատրաստման գործը բարելավելու, իրենց ճյուղերը որոշակի քանակական և որակական համամասնությամբ բանվորական կադրերով ու մասնագետներով ապահովելու նպատակով: Առկա է դինամիկ փոխկապակցվածություն նոր տեխնիկայի ու նորագույն տեխնոլոգիայի ներդրման, դրանց օգտագործման արդյունավետության և բանվորների ու ծառայողների որակավորման կատարելագործման, պրոֆեսիոնալ-տեխնիկական, միջնակարգ և բարձրագույն ուսուցման բովանդակության միջև:*

Առանձնապես դրվատելի է հանրապետության աեմնախոշոր կոլեկտիվներից մեկի՝ «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ադմինիստրացիայի և հասարակական կազմակերպությունների գործունեությունը որակյալ կադրերի պատրաստման ու վերապատրաստման նպատակով։ Բոլոր արտադրամասերում սիստեմատիկ, նպատակասլաց աշխատանք է տարվում աշխատողների մասնագիտական և հանրակրթական մակարդակը բարձրացնելու, նրանց բաներիտ դպրոցներում, տեխնիկումներում և բուհերում ընդգրկելու համար։

Սովորել ցանկացողներին օգնելու նպատակով միավորման ուսումնական մասնաշենքում կազմակերպված են նախապատրաստական դասընթացներ։ Այս գործում մեծ է Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի և քիմիական տեխնիկումի աջակցությունը։ Վերջին տարիներին դասընթացի մասնակից բանվորների կեսից ավելին ընդունվել է պոլիտեխնիկական ինստիտուտ և այլ բուհեր, տեխնիկումներ, ինչպես նաև բուհերի նախապատրաստական դասընթացները՝ երեկոյան և ցերեկային ուսուցմամբ։

Դրական զգալի արդյունք է տալիս ենթաշեֆ 137-րդ և 11-րդ դպրոցներում աշակերտների մասնագիտական կողմնորոշման աշխատանքի կազմակերպումը։ Արտադրության առաջավորները և նորարարները մշտապես լինում են այդ դպրոցներում, մասնակցում թեմատիկ հանդիպումներին, կաբինետների ձևավորմանը և այլն։ Միավորումը մեծ ուշադրություն է նվիրում շրջանի ուսումնական կոմբինատի աշխատանքներին։

Առանձնահատուկ հոգատարություն է ցուցաբերվում այն բանվորների ու ծառայողների նկատմամբ, ովքեր աշխատանքը զուգակցում են բուհերում, տեխնիկումներում, բաներիտ դպրոցներում, որակավորման բարձրացման դասընթացներում սովորելու հետ։ Նրանցից լավագույնները պարգևատրվում են ձեռնարկության նյութական խրախուսման ֆոնդից։

Միավորման ինժեներատեխնիկական աշխատողները հիմնականում որակավորվում են պոլիտեխնիկական ինստիտուտում կազմակերպված դասընթացներում, ինչպես նաև հատուկ հայտերով՝ Մոսկվայի որակավորման բարձրացման ինստիտուտում և դրա մասնաճյուղերում։ Ամեն տարի այդ դասընթացներում արտադրությունից կտրված սովորում է 50 մարդ։

Միավորման ուսումնանյութական բազան հիմնականում կենտրոնացված է առանձին մասնաշենքում, որտեղ ուսումնակոնսուլտացիոն կետին տրամադրված է երեք հարկ։ Բացի այդ, արտադրամասերում գործում են ուսումնական կաբինետներ, դասասենյակներ։ Օգտագործվում է նաև № 2 տեխնիկական ուսումնարանի ուսումնանյութական հարուստ բազան։ Ընդհանուր առմամբ միավորումն ունի 40 ուսումնական շենք և սենյակ, տեխնիկական հարուստ գրադարան։ Այժմ կառուցվում է ուսումնամարզական բազան։

Կադրերի պատրաստման և որակավորման բարձրացման գործում մեծ նշանակություն ունի տնտեսագիտական կրթությունը։ 1981—1982 ուստարում այս սիստեմի 27 դպրոցներում սովորել են 525 ինժեներատեխնիկական աշխատողներ, 1.250 բանվորներ՝ տնտեսագիտական 45 դպրոցներում։ Եվս հազար բանվորներ սովորել են կոմունիստական աշխատանքի հինգ տասնյակ դպրոցներում։ Ուսուցման համակարգը ղեկավարում է տնտեսագիտական կրթության խորհուրդը, որի նախագահն է գլխավոր դիրեկտորի էկոնոմիկայի և պլանավորման գծով տեղակալը։ Կադրերի ամրապնդմանն ու որակավորման բարձրացմանը մեծապես նպաստում է վարպետ-դաստիարակների ակտիվ գործունեությունը։ Միավորման վարպետ-դաստիարակների խորհուրդը գլխավորում է կաուչուկի արտադրության ավագ ապարատավար, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Վաչագան Ազիզյանը։

Միավորման համար նոր բանվորների պատրաստումը հիմնականում իրականացվում է բազային ուսումնարանում։ Գործարկվող և գործող արտադրամասերի համար յուրաքանչյուր տարի պատրաստվում են անհրաժեշտ թվով նոր բանվորներ՝ 12 առաջատար մասնագիտություններով։ Մշտական աշխատանք է կատարվում երկրորդ մասնագիտությանը տիրապետելու համար։ 1981—1982 թթ. պատրաստվել է 700 բանվոր, պլանավորված 500-ի փոխարեն։ Ամեն տարի որակավորումը բարձրացնում են միավորման 800 բանվոր-



ներ։ Այստեղ ուսուցման հիմնական ձևը աշխատանքի առաջավոր մեթոդների դպրոցներն են, որտեղ ընդգրկված է շուրջ 600 մարդ։

Միավորման բազմահազարանոց կոլեկտիվում, որտեղ զգալի թիվ են կազմում երիտասարդները, 1982 թ. հունվարի դրությամբ, միջնակարգ կրթություն չունեին 73 մարդ, որից 1981—1982 ուստարում բանվոր երիտասարդության դպրոցն ավարտել են 14-ը, տեխնիկումները՝ 20-ը։ 1982—1983 ուստարում բուհերում սովորում են 143 մարդ, տեխնիկումներում՝ 130, բաներիտ դպրոցներում՝ 77։

Բանվորների, ինչպես նաև ինժեներատեխնիկական աշխատողների որակավորման բարձրացումը բարերար ազդեցություն է գործում միավորման ողջ գործունեության, տեխնիկատնտեսական պլանների կատարման, կոլեկտիվի սոցիալական զարգացման, մասսաների ստեղծագործական և աշխատանքային ակտիվության բարձրացման վրա։ «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումը արտադրանքի իրացման 1982 թ. պլանը կատարել է 102,4, աշխատանքի արտադրողականությանը՝ 100,7 տոկոսով։

Բանվորների պատրաստման և որակավորման բարձրացման աշխատանքի զգալի փորձ են կուտակել «Հայէլեկտրամեքենա», «Հայէլեկտրաշարժիչ», «Հայէլեկտրաապարատ», «Հայարդկապ» միավորումները, արդյունաբերական շինարարության մինիստրության ձեռնարկությունները։

Ձեռք բերված դրական արդյունքներում զգալի է նաև աշխատանքի պետական կոմիտեի և նրա տեղական մարմինների դերը։ Կոմիտեն վերահսկողություն է իրականացնում արտադրության մեջ բանվորական կադրերի պատրաստման և վերապատրաստման գործի նկատմամբ։ Վերջին շրջանում ուսումնասիրվել և կոմիտեում քննարկվել է արտադրության մեջ կադրերի պատրաստման ու որակավորման բարձրացման վերաբերյալ կուսակցության և կառավարության որոշումների կատարման նպատակով անտառային և փայտամշակման, ինչպես նաև տեղական արդյունաբերության մինիստրությունների գործունեությունը։ Աշխատանքի այդ ձևը կիրառվում է նաև առանձին քաղաքների ու շրջանների մասշտաբով, երբ ուսումնասիրվում են տվյալ գոտու ձեռնարկությունները (օրինակ, Թումանյանի շրջան)։

Ուսումնասիրությունների արդյունքները քննարկվում են ձեռնարկությունների աշխատողների, մասնագետների սեմինար-խորհրդակցություններում, կազմակերպվում կոնսուլտացիաներ և անհրաժեշտ կոնկրետ օգնություն։ Այդ ամենը նպաստում է կադրերի մասնագիտական ուսուցման գործի բարելավմանը։

Հանրապետությունում տասներորդ հնգամյակում պատրաստվել է 423,3 հազար բանվոր, այդ թվում՝ 285,8 հազարը արտադրությունում և 137,5 հազարը՝ պրոֆտեխուսումնարաններում (համապատասխանաբար՝ 67,5 և 32,5 տոկոս)։ Համեմատության համար նշենք, որ իններորդ հնգամյակում այդ թիվը կազմել է 365,5 հազար (արտադրության մեջ՝ 258,8 և ՊՏՈՒ-ներում՝ 97,6 հազար մարդ)։

Հնգամյակում բանվորական կադրերի պատրաստման տեմպերն աճել են արտադրության մեջ 118,8 տոկոսով, ՊՏՈՒ-ներում՝ 110,5, դասընթացային ուսուցման մեջ՝ 140,9 տոկոսով։ Տասներորդ հնգամյակում որակավորումը բարձրացրել են 375,9 հազար բանվորներ (աճը նախորդ հնգամյակի համեմատությամբ՝ 126,4 տոկոս)։ Արտադրության մեջ կադրերի պատրաստման և որակավորման տեմպերն ավելի արագ են աճում ընթացիկ հնգամյակում։

Կադրերի պատրաստման նկատմամբ վերահսկողություն սահմանելու նպատակով սերտորեն համագործակցում են աշխատանքի պետական կոմիտեն և հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեն, որոնք մինիստրություններում ու գերատեսչություններում, քաղաքներում ու շրջաններում, միավորումներում ու ձեռնարկություններում անհրաժեշտ ուսումնասիրություններ են կատարում, համապատասխան օգնություն կազմակերպում բացահայտված թերությունները վերացնելու համար։

Արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում առավել արագ, քան նախկինում, հնանում են ուսումնական հաստատություններում ու

դասընթացներում ստացած գիտելիքները։ Երիտասարդ մասնագետները, պրակտիկայում առնչվելով նոր տեխնիկային և տեխնոլոգիային, հաճախ անակընկալի են գալիս։ Թերևս հարկ կլինի մշակել կրթության այնպիսի համակարգ, որն ապահովի ուսումը մինչև կյանքի վերջը։ Այսպիսի հարցադրումը, թերևս, միակերպ ընդունելի է ինչպես գիտական հաստատությունների, այնպես էլ ժողովրդական տնտեսության ճյուղերի համար։

Խիստ ուսանելի է վորոշիլովգրադցիների փորձը։ Ստախովկա քաղաքի չորս հանքերում 560 ինժեներատեխնիկական աշխատողներից 400-ը (ավելի քան 70 տոկոսը) կրթությունը ստացել է առանց արտադրությունից կտրվելու։ Համանման է պատկերը նաև հարևան «Պերվոմայսկուգոլ» և «Լիսիչանսկուգոլ» հանքերում։ Մեր հանրապետությունում Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի մասնաճյուղեր են գործում այլ քաղաքներում և անմիջականորեն՝ «Հայէլեկտրամեքենա» գիտարտադրամիավորումում, որտեղ սովորում են հարյուրավոր բանվորներ և ծառայողներ։

Առանց արտադրությունից կտրվելու ուսուցումը որոշակիորեն նպաստում է աշխատանքային ճիշտ դաստիարակությանը։ Ուսանողն այստեղ գործնականում խորամուխ է լինում արտադրության գաղտնիքներում՝ ուսուցման սկզբից մինչև վերջ։ Ստացիոնարում սովորող կոլեգայի համեմատությամբ նա ավելի հեշտությամբ է ձեռք բերում վարչական-կազմակերպչական ունակություններ։ Ուստի, անհրաժեշտ է մշտապես ընդլայնել ձեռնարկություններին կից ուսումնական մասնաճյուղերի ցանցը, հեռանկարում դրանց ծախսերը հոգալով ձեռնարկությունների հաշվին կամ էլ տնտհաշվարկի միջոցով։

Կյանքի ուղու ընտրությունը չպետք է զուտ անձնական գործ համարել։ Եվ եթե հնարավոր է ինչ որ ազդեցություն գործել մասնագիտության ընտրության վրա, ապա պետք է հստակ գիտակցել ամբողջ պատասխանատվությունը ոչ միայն տվյալ անհատի ճակատագրի համար, այլև՝ հասարակության առջև, որին պետք է մոտիկ ապագայում իր որակավորումն ի սպաս դնի այդ նույն անհատը։ Հետևաբար, արդի պայմաններում սոցիալիստական արտադրության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները պահանջում են ժողովրդական տնտեսության մեջ կադրերի պատրաստման և որակավորման առաջանցիկ աճ և դպրոցներում ու ձեռնարկություններում մասնագիտական կողմնորոշման ուժեղացում։

Այսօր մեզ հայտնի են չորս հազարից ավելի մասնագիտություններ։ Ինչպես ընտրել այն միակը, որը պետք է ձեզ, որի պահանջները համապատասխանում են ձեր էությանը։ Կյանքում իր տեղը գտնելու համար երիտասարդին օգնում է մասնագիտական կողմնորոշումը, որը ներառում է մասնագիտական ինֆորմացիան, կոնսուլտացիան, ընտրությունը, աշխատանքի տեղավորվելը, համակերպվելը, վարպետ-դաստիարակի օգնությունը և այլն։

Արդի պայմաններում մեծապես կարևորվում է անձնական գործոնը, աշխատողի կրթվածությունը։ Ուստի անհրաժեշտ է ապահովել կրթության բնագավառի առաջանցիկ զարգացումը։ 10 հազար բնակչի հաշվով ուսանողների քանակով մենք առայժմ ետ ենք մնում արտասահմանյան մի քանի երկրներից։ Ահա թե ինչու այդ ոլորտի և դրանում կատարվող ներդրումների աճի տեմպերը պետք է գերազանցեն ինչպես նյութական արտադրության, այնպես էլ գիտության ներդրումների տեմպերը։ Անկասկած, համակարգի կատարելագործումը կպահանջի ծախսերի ավելացում։ Սակայն, դրա հետ մեկտեղ, աշխատողների որակավորման և մասնագիտական բանիմացության բարձրացման, ուսուցման և արտադրողական աշխատանքի միացման, հենց իրենց՝ ուսանողների ու սովորողների գիտահետազոտական աշխատանքների շնորհիվ կմեծանա նաև տնտեսական փոխհատույցը։ Բավական է նշել, որ միայն Նովոսիբիրսկի երկաթուղային տրանսպորտի ինժեներների ինստիտուտի ուսանողների գիտահետազոտական աշխատանքների տնտեսական արդյունքը հատուցում է այդ բուհի պահպանման պետական բոլոր ծախսերը։

Համանման օրինակներ կարելի է բերել նաև երկրի շատ հանրակրթական դպրոցներից, որտեղ աշակերտները ստանում են հարուստ գիտելիքներ և խորացված աշխատանքային պատրաստականություն։ Դա փաստորեն նպաստում է որակյալ բանվորների պատրաստմանը՝ նախկինից առավել բարձր ելակետային բազայի վրա։ Երկրի պրոֆտեխուսուցման համակարգում կա շատ ուսումնարաններ այնքան արտադրանք են թողարկում, որքան նրանց պահպանության պետական ծախսերն են։ Մեր հանրապետությունում նույնպես կան այդպիսի լավագույն ուսումնարաններ։ «Նաիրիտ» ԳԱՄ-ի բազային № 2 տեխնիկական ուսումնարանը տարեկան թողարկում է 140 հազար ռուբլու արտադրանք։ Երևանի № 9 պրոֆտեխուսումնարանն արտադրում է «Ժիգուլի» ավտոմեքենայի լամպեր, որոնց արժեքը հատուցում է ուսումնարանի պահպանման ծախսերի մեկ երրորդ մասը։

Կրթվածությունը մասնագիտության յուրացման ժամկետի կրճատման վճռական գործոնն է և կյանքը հաստատում է, որ կրթական մակարդակի բարձրացմամբ բանվորները մի քանի անգամ ավելի արագ են որակավորվում, քան աշխատանքային ստաժի ավելացման դեպքում։ Բանվորների աշխատանքի բովանդակության փոփոխությունը պայմանավորված է նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի աճով։ Այդ պրոբլեմն իր մեջ պարունակում է մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև տարբերությունների հաղթահարման միտումները, աշխատանքի ստեղծագործական տարրերի աճը և այլն։

Կադրերի պատրաստման և որակավորման մակարդակի բարձրացման համակարգում կարևոր է գիտականորեն հիմնավորված համամասնությունների սահմանումը։ Անհրաժեշտ է լավագույն համամասնություն մշակել պրոֆտեխնիկական և միջնակարգ մասնագիտական ուսուցման համակարգերի միջև։ Առավել նախընտրելի է պրոֆտեխկրթության առաջանցիկ զարգացումը, որը էական սոցիալական դեր կխաղա՝ ապահովելով մասնագիտության և աշխատանքային ուղու ճիշտ ընտրությունը։ Հետագա ուսումնասիրություն է պահանջում նաև արտադրության մեջ և պրոֆտեխնիկական ուսուցման համակարգում բանվորական կադրերի պատրաստման խնդիրը։ Անհրաժեշտ համամասնությունների բացակայությունը, այս կամ այն մասնագետների պակասը կամ ավելցուկը դանդաղեցնում են գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը, դժվարացնում մեր հասարակության սոցիալական մի շարք խնդիրների լուծումը։

Կադրերի պատրաստման և որակավորման բարձրացման համակարգի կատարելագործման խնդրին անդրադարձավ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ հունիսյան պլենումը։ Կարևոր է, որպեսզի հանրապետական գերատեսչությունները լրացուցիչ միջոցներ ձեռնարկեն արտադրության մարդկանց ուսուցման պլանավորումը բարելավելու նպատակով։ Ընդ որում հարկավոր է նկատի ունենալ կադրերի պահանջարկի բավարարման կոմպլեքսային պլանավորումը՝ հաշվի առնելով պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարաններից ստացվող համալրումը, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների շրջանավարտների օգտագործումը և որակյալ բանվորների ընդգրկումը դրսից։ Նպատակահարմար է միավորումների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների համար սահմանել կադրերի պատրաստման առաջադրանքներ՝ ըստ ուսուցման տեսակների ու ձևերի։ Այդ ամենը պահանջում է ուսումնաարտադրական բազայի ընդլայնում և տեխնիկական հագեցում, համասեռ ձեռնարկությունների համար տերիտորիալ ուսումնադասընթացային կոմբինատների ստեղծում։ Անհրաժեշտ է ղեկավար աշխատողների և մասնագետների որակավորման բարձրացման տարեկան առաջադրանքները սահմանել՝ ելնելով ուսուցման մեջ նրանց պարբերաբար ընդգրկելու նպատակահարմարությունից։

Այսպիսով, երկրի սոցիալ-տնտեսական պոտենցիալի անշեղ աճի, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման կարևոր նախապայմանը կադրերի կրթական մակարդակի, նրանց պատրաստման և որակավորման, պլանաչափ, առաջանցիկ տեմպերի ապահովումն է՝ արտադրության մեջ նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրմանը, աշխատանքի ու արտադրության կառավարման հետագա կատարելագործմանը համապատասխան։

---

# ԼԵՌՆԱՅԻՆ ԼԱՆԴՇԱՖՏՆԵՐԻ ՊԱՀՊԱՆՄԱՆ ԵՎ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

**Գ. Բ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Աշխարհագրական գիտությունների թեկնածու

*ՄԱՐԴԿԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ և բնության միջև փոխհարաբերությունների ճիշտ կազմակերպումն առաջնակարգ նշանակություն ունի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի և, առհասարակ, հասարակության հետագա զարգացման համար։ Այն դարձել է ժամանակակից տնտեսական գործունեության առավել կարևոր խնդիրներից մեկը, որի լուծմամբ զբաղվում են ո՛չ միայն գիտության բոլոր ճյուղերը, այլև պետական ու հասարակական կազմակերպությունները։ Պրոբլեմի կանոնավորումն առավել կարևոր է փոքր տարածքով լեռնային երկրների համար, ուր բնական պայմաններն անկայուն դինամիկ բնույթ ունեն։ Եթե դրան ավելացնենք նաև բնակչության բարձր խտությունը, արդյունաբերական ձեռնարկությունների արագ աճը, ապա պարզ կդառնա, թե ինչու լեռնային երկրներում, ինչպիսին մեր հանրապետությունն է, բնության և մարդու միջև փոխհարաբերությունների բարելավումը համարվում է անհետաձգելի խնդիր։*

*Բնության օգտագործման պրոցեսը, որը մարդ և բնություն փոխհարաբերությունների առանցքն է, ունի հնագույն պատմություն, անցել է զարգացման երկու հակադիր փուլ՝ մարդու չկազմակերպված հասարակական գործունեության և ձևավորված հասարակական գիտակցության ժամանակաշրջաններ։*

*Առաջին փուլը բնութագրվում է բնական լանդշաֆտների վրա մարդու գործունեության աննշան ազդեցությամբ։ Այդ ժամանակ փոփոխվել են սոսկ բնության առանձին տարրեր՝ նվազել են առանձին կենսաձևերի քանակը, վերարտադրման տեմպերը և այլն։ Բնական լանդշաֆտների փոփոխություններն այդ շրջանում եղել են վերականգնելի։*

*Մարդ և բնություն փոխհարաբերությունների երկրորդ՝ ժամանակակից փուլը բնութագրվում է բնական պայմանների ու ռեսուրսների օգտագործման աննախադեպ վերելքով, բնության մեջ անդառնալի փոփոխությունների առաջացմամբ։ Գիտատեխնիկական հեղափոխությունը, որը ձևավորված հասարակական գիտակցության արգասիքն է, մարդկանց զինեց բնության վրա ազդելու հզոր միջոցներով։ Վերջիններիս օգնությամբ մարդը շահագործեց բնական կենսածին ռեսուրսները՝ զգալի չափով մեծացնելով անապատների գրավածքը։*

*Ինչպես հայտնի է, բնության մեջ ձևավորված է նյութերի շրջանառության պարփակ կենսաբանական սիստեմ— առանձին օղակներից արտազատված նյութերը օգտագործվում են հաջորդ օղակներում։ Մոտ երկու միլիարդ տարվա բնական այդ պրոցեսի (մինչև մարդու ներգործությունը) արգասիքը եղան երկրի ժամանակակից պատկերն ու նյութական կազմը։ Այժմ այդ անթափոն կենսաբանական շրջանառության մեջ մտցվել են փոփոխություններ։ Կատարելագործված մեքենաների միջոցով բնական ռեսուրսների լայնածավալ տեխնոլոգիական մշակումը մեծացրել է, այսպես կոչված, թափոնների քանակությունը, որոնք և պատճառ են դառնում կենսաոլորտի շրջապտույտում նկատվող «խափանումների»։ Հետզհետե դրանք ավելի ու ավելի հաճախակի և ավերող են դառնում։*



*Այսպիսով, բնության մեջ ստեղծված անբարենպաստությունները հետևանք են արտադրության թափոններով կենսաոլորտի աղտոտվածության, բնական ռեսուրսների, հատկապես հումքի ու էներգիայի ոչ ռացիոնալ օգտագործման բարձր տեմպերի, աշխարհագրական համակարգերի՝ կենսաոլորտ, մթնոլորտ, ջրային ոլորտ և այլնի առավել ինտենսիվ օգտագործման, լանդշաֆտների և էկոլոգիական այլ սիստեմների վատթարացման, բնական եզակի համալիրների վերացման, առանձին կենսաձևերի պակասեցման, անհետացման և այլնի։*

*Մարդկանց արտադրական գործունեությունը բաց երկրաքիմիական սիստեմ է։ Արտադրապրոցեսում այն բնությունից վերցնում է հումք և մշակում՝ նախատեսված արտադրանք ստանալու նպատակով։ Բայց վերջնական արտադրանքը կազմում է ծախսվող նյութական ռեսուրսների միայն չնչին մասը։ Հետագա օգտագործման դեպքում այն ևս դառնում է թափոն։ Ակադեմիկոս Ի. Պետրիանով-Սոկոլովի հաշվարկով արտադրության մեջ մարդկանց ներգրաված բնական ռեսուրսների միայն 2 տոկոսն է ծախսվում անհրաժեշտ արտադրանք ստանալու վրա, մնացած 98-ը՝ թափոններ են, որոնք աղտոտում են մոլորակի բնությունը։ Հասկանալի է, որ նման արտադրասիստեմն ունի հակաբնական բնույթ և կարող է գոյատևել միայն իր թափոնները կենսաոլորտի զանգվածին խառնելու միջոցով, այսինքն՝ գոյություն ունենալ այնքան ժամանակ, քանի կենսաոլորտը կարող է կատարել «ուտիլիզատորի» ֆունկցիա։ Իսկ կենսաոլորտի այդ ունակությունն անսպառ չէ։*

*Այժմ մարդն օգտագործում է երկրի վերականգնվող բնական ռեսուրսների համարյա բոլոր ձևերը՝ գյուղատնտեսության համար պիտանի հողատարածքների մոտ 70 տոկոսը, անտառների բնական վերաճի 50, անուշահամ ջրի 10, հիմնական արդյունագործական կենսաձևերի վերաճի 70 տոկոսը և այլն։*

*Նշենք, որ բնական լանդշաֆտներն անցյալում իրենց հերթին պայմանավորել էին հասարակության զարգացման և գործունեության բնույթը։ Աննպաստ բնական պայմաններ ունեցող երկրներում բնությունն ինքն է նպաստում բնակեցման ցածր խտությանը, որը և իր հերթին սահմանափակում է նյութական արտադրության զարգացման հնարավորությունը, այստեղից և՝ լանդշաֆտների փոփոխման ձևերն ու տեմպերը։ Ինչպես նշում է սովետական նշանավոր աշխարհագրագետ Վ. Ա. Անուչինը, կյանքի համար բարեհաջող աշխարհագրական միջավայրում երկար ժամանակ հասարակությանն ավելի նպատակահարմար էր զարգացնել ոչ թե կյանքի գոյամիջոցների արտադրություն, այլ անմիջական կյանքի արտադրությունն այնքան ժամանակ, որքան միջոցները թույլատրում էին ապահովել բնակչության աճն ու գոյությունը։ Երբ միջոցները չեն ապահովում հասարակության հարաճուն պահանջմունքները, առաջ է գալիս բնության վերափոխման պրոցեսի անհրաժեշտություն (տե՛ս* Анучин В. А. Основы природопользования, М., «Мысль», 1978)*։*

*Կյանքի զարգացման և կենսականորեն անհրաժեշտ միջոցների վերարտադրման առաջընթացը բնորոշ է ամենից առաջ բնական լանդշաֆտների բազմաձև պայմաններ ունեցող երկրներին։ Այդ տեսակետից հատկանշական են չափավոր կլիմա ունեցող աշխարհագրական գոտու երկրները, ուր կյանքի գոյատևման համար մարդն ստիպված է եղել զարգացնել կենսապայմանների վերարտադրությունը, որով և նկատելիորեն փոխել է շրջակա բնությունը։ Տարբեր են նաև առանձին երկրներում ու աշխարհամասերում բնության օգտագործման կոնկրետ ձևերը, երբեմն էլ հետազոտման պրոբլեմները։*

*Տարակազմ լանդշաֆտային պայմաններ ունեցող երկրների համար հրատապ պրոբլեմ է արտադրական-տարածքային կոմպլեքսների ճիշտ կազմակերպումը։*

*Մեր երկրի տարածքի սկզբունքորեն նոր շրջանացումը (որը հաշվի է առնում առանձին շրջանների բնական առանձնահատկություններն ու լանդշաֆտային ներքին կառուցվածքները) նպաստել է ձևավորելու արտադրական տարածքային նոր համալիրներ։ Դրանք հնարավորություն են ընձեռում ավելի ռացիոնալ օգտագործելու բնական ռեսուրսները, ժամանակին ու պատճառա-*

քանված կազմակերպելու նվազող ռեսուրսների վերարտադրման աշխատանքները, բնապահպանվող տարածքների արտադրապրոցեսից հանելու զանազան միջոցառումներ, որոշ դեպքերում գիտակցաբար հրաժարվելու դրանց օգտագործումից։

Ժամանակակից պայմաններում այս կամ այն տարածքի ռեսուրսների բնական պոտենցիալ արժեքը որոշվում է նրանց էկոլոգիական որակով։ Հետևաբար տարածքի կազմակերպման ժամանակ չի կարելի առաջնորդվել միայն տնտեսական չափանիշներով, ինտենսիվ բնաօգտագործումը պետք է բխի նաև միջավայրի պահպանման խնդրից։ Հենց այս ուղղությամբ պետք է ընթանան ժամանակակից գիտական հետազոտությունները— բնական լանդշաֆտներն ու դրանց ռեսուրսները գնահատել ինչպես տնտեսական, նույնպես և էկոլոգիական չափանիշներով։ Այստեղից էլ սկզբնավորվում է բնական լանդշաֆտների վերափոխման նոր ուղղությունը՝ բարձրարժեք էկոլոգիական պայմաններ ունեցող լանդշաֆտների ստեղծումը։ Ավելացնենք, որ առայժմ ոչ բոլոր կուլտուրական լանդշաֆտներն են էկոլոգիապես բարձրարժեք։

Մեր երկրում, զարգացած սոցիալիզմի պայմաններում, արտադրության աճող պահանջները պայմանավորում են բնական ռեսուրսների օգտագործման բարձր տեմպ։ Սակայն մեզ մոտ ևս հասարակական բոլոր ոլորտներում չէ, որ տեխնիկական զինվածության մեծացումն ընթացել է բնության պահպանման հնարավորությունների ընդլայնմամբ։

Լանդշաֆտների պահպանման պասսիվ ձևերն ու մեթոդները պետք է լծորդվեն ակտիվ ձևերով, որոնք սահմանափակում, հաճախ և բացառում են աշխարհագրական միջավայրի հետագա աղտոտումը, արտադրության զարգացմանը զուգընթաց նպաստում բնական համալիրների ու ռեսուրսների արդյունավետ վերարտադրմանը։ Օգտագործման ակտիվ ձևերն ամենից առաջ պետք է տարածվեն բնական ռեսուրսների առավել ինտենսիվ օգտագործվող շրջաններում։ Դրանք հնարավորություն են ընձեռում՝ կատարելու կենսապայմանների որակի բարձրացում, միջավայրի ստրուկտուրայի կանոնավորում (հատկապես բնակավայրային տարածքներում լանդշաֆտների պահպանում ու վերափոխում), ապագա սերունդների համար միջավայրի տարածքային կոմպլեքսների ձևավորում (հաշվի առնելով արտադրության զարգացման հեռանկարները) և այլն։

Բնական պրոցեսներին մարդու ակտիվ միջամտությունը և դրանց բնույթի վերափոխումը, երբեմն էլ նոր միջավայրի ստեղծումը, եղել և մնում են կենսական անհրաժեշտություն։

Մեր երկրում այդ պրոբլեմի լուծման նպատակով նախատեսվում է հաղթահարել հետևյալ դժվարությունները. վերացնել արտադրության մեջ համեմատաբար ցածր մակարդակի էկոլոգիական կողմնորոշում ունեցող տեխնոլոգիան, լրիվին օգտագործել արտադրության թափոնները, հաղթահարել տեխնոլոգիական սխալներն ու անճշտությունները, կազմակերպել ձեռնարկությունների արտադրական կոմպլեքսավորում (նոր արտադրանքի թողարկման ժամանակ), առավել արագ տեմպերով կատարելագործել տեխնիկան։

Ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացը հնարավորություն է ընձեռում՝ նախկինում ցածրարժեք, ոչ կուլտուրական տարածքները վերափոխելու, հարստացնելու և դարձնելու բարձրարժեք լանդշաֆտներ։ Նման վերափոխված լանդշաֆտների ստուգանմուշները (էտալոնները) ևս պետք է ընդգրկել բնապահպան ձևերի ու համակարգերի մեջ։ Դրանց մեծ մասը վերակուլտիվացիայից հետո կօգտագործվեն աշխատավորության հանգստի և բուժման նպատակով։ Հատկապես խիտ բնակեցված շրջաններում, քաղաքների մերձակա «ազատ» տարածությունների վրա ստեղծված անտրոպոգեն լանդշաֆտները (զբոսայգիներ, տնկարկներ և այլն) պետք է ներառվեն պահպանության ռեժիմի մեջ, կանոնավորելով դրանցում բնական պրոցեսների անհրաժեշտ ընթացքը։

Քանի որ միևնույն արդյունաբերական ձեռնարկությունների ազդեցությունը տարբեր բնական լանդշաֆտների պայմաններում տարբեր կերպ է արտահայտվում, ապա միջավայրի պահպանության միջոցառումները պետք է



կոնկրետացվեն ըստ բնական առանձին շրջանների։ Այսպես, լեռնային և հարթավայրային շրջաններում միանման ձեռնարկությունների ազդեցությունը շրջակա բնության վրա լրիվին տարբեր է. պատճառը հարթավայրերում մթնոլորտի համեմատաբար կայուն վիճակն է։ Լեռնային երկրներում, մանավանդ միջլեռնային գոգավորություններում, մթնոլորտի սեզոնային և օրական դինամիկայի հետևանքով առաջանում են տարբեր ձևերի ու ուժգնության քամիներ։ Դրանք ըստ տարվա սեզոնների փոխում են իրենց ուղղությունը։ Նման պայմաններ ունի Երևանի գոգավորությունը։ Հաշվի չառնելով բնության երևույթների նման տարածքային ու ֆունկցիոնալ ստրուկտուրան՝ Երևանի գոգավորության սահմաններում ձեռնարկությունների մեծ մասը կառուցվել է քամիների հոսքերի ուղղությամբ։ Այդ պատճառով էլ արդյունաբերական ձեռնարկություններն իրենց գազափոշիանման թափոններով աղտոտում են քաղաքի օդային ավազանը։ Կամ մի այլ օրինակ. Երևանի շրջակայքում կանաչ գոտին հիմնականում տեղաբաշխված է հարավ-արևելյան սարավանդների լանջերին։ Բայց լեռնահովտային քամիները ամռանը հիմնականում փչում են հյուսիսարևելյան կողմից։ Հետևաբար, քաղաքի տարածքը փոշուց զերծ պահելու համար կանաչ գոտին պետք է ստեղծվեր հիմնականում հողմահար լանջերին։ Նման զանգվածները, որպես քաղաքի «կանաչ թոքեր», քամիները կմաքրեին փոշուց, կհարստացնեին ֆիտոնցիդներով և ապա կուղղեին դեպի քաղաք։

Կարելի է բերել բազմաթիվ օրինակներ ինչպես մեր հանրապետության, նույնպես և երկրի տարբեր շրջանների վերաբերյալ, երբ մարդկանց անհաշվենկատ գործողությունների պատճառով բնական լանդշաֆտը դեգրադացվել է, աղտոտվել ու ապականվել։ Նման գործողություններից են, օրինակ, այնպիսի երկրորդային պրոցեսներ, ինչպես՝ մշակվող հողատարածքների էրոզիան, անտառների ոչնչացման հետևանքով սաստկացող հեղեղները, գրունտների աղակալումը, ճահճացումը, փլուզումները, հողմահղկումը (դեֆլյացիան), արոտավայրերի ճիմապատումը կամ քայքայումը, կենսաձևերի քանակական կրճատումը և այլն։

Այժմ մեր մոլորակի բազմաթիվ շրջաններում, այդ թվում և մեր հանրապետությունում, աճում է ոչ արտադրական նպատակներով տարածքի օգտագործման նշանակությունը. տարածքը դառնում է հաստատուն աճող հասարակական արժեք։ Փոքր երկրների համար այն առավել թանկարժեք բնական ռեսուրս է, դրա պահպանությունը կարևոր խնդիր է տվյալ ժողովրդի ու պետության համար։ Ընդ որում տարածքի գնահատականը ևս չի կարելի որոշել սոսկ տնտեսական չափանիշներով։

Բնության հանդեպ թույլ տված սխալների մեծ մասը հետևանք է բնության վերաբերյալ գիտելիքների պակասի, բնության առանձնահատկությունների, դրա տարրերի ու երևույթների փոխադարձ կապերի, փոխազդեցությունների անտեսման։ Արդի պայմաններում այդ երևույթների զարգացման ու արգելակման վրա այս կամ այն կերպ ազդում են նաև սոցիալ-հասարակական հակադիր սիստեմների միջև գոյություն ունեցող հակասությունները։

Բնական միջավայրի և բուն լանդշաֆտների պահպանությունը, որպես սոցիալ-տնտեսական պրոբլեմ, մեզ մոտ սերտորեն կապված է բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հետ։ Այդ ընդհանուր խնդրի երկու կողմերի դրական լուծմանն են ծառայում ինչպես բնական, նույնպես և ինժեներատեխնիկական գիտությունները։ Որպես օրենք, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը պետք է ապահովվի վերականգնվող ռեսուրսների լայնարձակ վերարտադրությամբ։ Ինչ խոսք, դժվար է ճշգրիտ սահմանել բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ու վերափոխման ուղիները, կանխատեսել բոլոր հետևանքները, որոնք կառաջանան արտադրության պրոցեսում բնության վրա մարդու ունեցած ազդեցությունից։ Նման դժվարությունները բացատրվում են նրանով, որ բնական ռեսուրսներն իրարից անկախ չեն, ժամանակի ու տարածության սահմաններում գտնվում են սերտ կապերի ու փոխազդեցությունների մեջ։ Հետևաբար, բնական ռեսուրսների ճիշտ օգտագործումը պետք է նախատեսի արտադրվող ապրանքների կամ հումքի առավելագույն քանակ՝ ոչ թե քիչ ծախսումների սահմաններում, այլ հնարավոր

պատարածքների ոչ ճիշտ օգտագործումն է, տարածքի անտառապատվածության ցածր տոկոսը, անտառապատման և անտառամելիորատիվ աշխատանքների սահմանափակ տեմպերը։ Ինչպես հարկն է չի կազմակերպվում նաև անտառային լանդշաֆտների պահպանությունը։ Դեռևս շարունակվում է դրանց ակտիվ օգտագործումը արածեցման նպատակներով։ Գիտական հետազոտությունների ծավալման հետ մեկտեղ մեծ են այս հարցում կուսակցական, սովետական, տնտեսական և հասարակական կազմակերպությունների անելիքները։ Պետք է բնակչության մեջ լայնորեն պարզաբանել պետական որոշումների կարևորությունը, դրանց նշանակությունն ու կատարման անհրաժեշտությունը, բարձրացնել աշխատավորության պատասխանատվությունը անտառային հարստությունների պահպանման գործում։ Ավելացնենք, որ Հայաստանի անտառներից անասնագոմերի հանման և արածեցումների արգելման մասին որոշումներ ընդունվել են դեռ 1961 թվականից, բայց մինչև այժմ դրությունը չի փոխվել։

*Վերջին տարիներին հանրապետության տարածքում սկսվել են անտառամելիորատիվ լայն աշխատանքներ. ստեղծվել են արհեստական անտառային տնկարկներ. կանաչ տնկարկների հոծ շերտը գոտևորել է Սևանի կապույտը։ Դաշտապաշտպան անտառներ են ստեղծված Շիրակում, Գուգարքում, Փամբակում, Սյունիքում։ Այս հանրօգուտ գործը պետք է ծավալել, շարունակել։*

Հանրապետության համար բնական լանդշաֆտների և դրանց ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, պահպանման ու վերափոխման կարևորագույն խնդիրներից մեկն էլ տարածքի ճիշտ կազմակերպումն է՝ ըստ ֆունկցիոնալ գոտիների և տնտեսության առանձին ճյուղերի (հողահանդակների պատճառաբանված մասնագիտացումը)։

Լանդշաֆտների պահպանման, վերափոխման ու բարելավման հարցերին մեծ ուշադրություն է նվիրված ՍՄԿԿ XXVI համագումարի և 1982 թ. մայիսյան պլենումի որոշումներում։ Որպես առավել կարևոր խնդիր շեշտված է հողահանդակների պահպանման, վերամշակման և միջավայրը աղտոտումից պաշտպանելու անհրաժեշտությունը։ Հատուկ ուշադրություն է նվիրվել բնական կենսածին ռեսուրսների վերարտադրման, բնակավայրերի շրջակայքում կանաչ գոտիների ստեղծման, պաշտպանական անտառաբուծության զարգացման և կենսական այլ խնդիրների, ինչպես նաև բնական ռեսուրսների ու համալիրների կադաստրային սիստեմների ստեղծման անհրաժեշտությանը։

Այս ամենից բացի, մեր կարծիքով, հանրապետության համար առաջնակարգ նշանակություն ունեն նաև լեռնալանջերի գիտականորեն հիմնավորված դարավանդավորման ու օգտագործման խնդիրները։ Մեզ մոտ լանդշաֆտների պահպանման ու բարելավման աշխատանքների կատարելագործման նպատակով հարկ է կիրառել որոշ կոնկրետ միջոցառումներ։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է աշխատանքները կազմակերպելու և կոորդինացնելու համար ստեղծել իրավասու պետական ծառայություն (այն կկազմակերպի նաև գիտաարտադրական հետազոտությունները՝ լանդշաֆտային խոշոր մասշտաբի հանույթ, քարտեզագրում, գնահատում, տեղեկագրերի կազմում և այլն)։ Այնուհետև, յուրաքանչյուր վարչատնտեսական միավոր, ամեն մի տնտեսություն աշխատանքները պլանավորելիս պետք է նախատեսի նաև բնության պահպանության ու բարեփոխման տարեկան և պարբերական պլաններ ու միջոցառումներ, այդ նպատակին հատկացնելով որոշակի ֆինանսական միջոցներ։ Ամեն մի վարչատնտեսական միավորի, տնտեսության կամ ձեռնարկության սահմաններում ստեղծել մշտական գործող էկոլոգիական հանձնաժողովներ։

Ուժեղացնել տեղական սովետների և արտադրական ձեռնարկությունների (տնտեսությունների) ղեկավարների անձնական պատասխանատվությունը բնությանը հասցված վնասի համար։

Բնապահպանման հիշյալ խնդիրների լուծումը հնարավոր է միայն հասարակության ամենալայն զանգվածների ընդհանուր ջանքերով։ Պայքարելով բնության պաշտպանության համար, մարդը դրանով իսկ պայքարում է երկրի վրա կյանքի հարատևման համար։ Եվ իր բնական վիճակից բնությունը շեղող ամենաաննշան միջամտությունն անգամ չպետք է վրիպի մեր ուշադրությունից։



# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՆՄԱՀ ԱՍՊԵՏԸ



...ՄԵՆՔ ԳԻՏԵՆՔ, որ միլիոնների կազմակերպման համար անսահման մեծ է ղեկավարի, պրակտիկ կազմակերպչի նշանակությունը։ Այս տեսակետից հատկապես ուսանելի են Յակով Միխայլովիչ Սվերդլովի կյանքն ու գործը։

Թերևս Սվերդլովի մահվան տարելիցին՝ 1920 թ. մարտի 16-ին, Վլադիմիր Իլյիչի արտասանած այս պատվիրանի իրականացման մղումով են գրել Բորիս Կոստյուկովսկին և Սեմյոն Տաբաչնիկովը գեղարվեստափաստագրական այս առինքնող վիպակը* կուսակցական-կազմակերպչական աշխատանքի տաղանդավոր ղեկավարի մասին. «...խոշորագույն մի տաղանդ,— ինչպես ասել է Լենինը,— որին մենք կորցրինք և որին չհաջողվեց ու, հավանաբար, երկար չի հաջողվի փոխարինել...»։

**Գարնանային մեղեդիներ.** այսպես է կոչվում Լենինի ամենահավատարիմ, մերձավորագույն զինակիցներից մեկին նվիրված այս գրքի հերոսի մանկությունն ու պատանեկությունը ներկայացնող մասը։

...Կայծակ էր Նիժնիում, ամպրոպ 1885 թվականի մայիսյան փոթորկոտ այդ օրը։ Ուժգին քամին պոկում էր տանիքները, նավակներն ու նավերը քշում դես ու դեն, տեղատարափ անձրևը թակում էր պատուհանները... «Այդպիսի եղանակին միայն իմ Յաշան կհանդգներ լույս աշխարհ գալ», երրորդ զավակի ծննդյան առիթով ասում էր Միխայիլ Իզրաիլովիչը։ Աշխատասիրության, բարեխղճության, մարդկանց երբեք չարիք չպատճառելու ոգով են դաստիարակել իրենց վեց երեխաներին Միխայիլը և հոգատար ու քնքուշ վաղամեռիկ մայրը՝ Լիզան։

Փորագրիչ էր Միխայիլը իր աղքատիկ արհեստանոցում, ուր դրել էր տպագրական երկու փոքրիկ մեքենա և տպագրում էր այցետոմսեր, ազդագրեր։ Այդ տպարանը հետագայում շատ պետք եկավ նրա որդուն՝ Յակովին։ Այն էլ առիթ դարձավ, որ նրա ընտանիքը մոտիկից ծանոթանար «Нижегородский листок» և «Одесские новости» լրագրերի թղթակից Ալեքսեյ Պեշկովի հետ։ Յաշան հափշտակությամբ կարդում էր Գորկու ստեղծագործությունները, նրա առաջարկած գրքերը, հաղորդակցվում նրա փոթորկատենչ գաղափարներին, համակվում դրանցով։

Ու երբ մի անգամ Գորկին Յաշային հարցրեց՝ դե՛, ի՞նչ, գիմնազի՛ստ, դեռ հեղափոխություն չե՞ս արել։

— Մի մարդը հեղափոխություն չի անի,— ամենայն լրջությամբ պատասխանեց պատանին։

Տասնհինգ տարեկան էր Յակովը, երբ առաջին անգամ տեսավ Կ. Մարքսի **Կապիտալը**։ Ահա նա կարդում է սոցիալ-դեմոկրատների գավառային խմբի հրատարակած **Ի՞նչ են «ժողովրդի բարեկամ-**

* Борис Костюковский, Семен Табачников. **И нет счастливее судьбы.** М., 1982.

**ները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ** գիրքը, որի հեղինակն էր Կ. Տուլինը, ինչպես հետո իմացան՝ Վլադիմիր Իլյիչը:

Դեղագործի աշակերտ էր Յաշան, երբ բախվեց հազար ու մի անարդարությունների, տեսավ աշխատավոր մարդու տառապանքը: Նրա հոգին բզկտում էին հարցերը. մինչև ե՞րբ պիտի հարուստները ծաղրուծանակի ենթարկեն աշխատանքից ու կարիքից կորամեջք մարդկանց, մինչև ե՞րբ մարդկային կյանքը պիտի գնվի գրոշներով, պիտի տիրեն կապիտալն ու ճնշումը... Եվ կարդում էր, անհագ կարդում իրեն տանջող հարցերի պատասխանը գտնելու համար:

Յաշան շատ շուտ աչքի ընկավ իր գործունյա, կրակոտ բնավորությամբ, բանիմացությամբ: Նրան լավ գիտեր Նիժեգորոդյան երիտասարդությունը: Առաջին ելույթները... իր մագնիսացնող բառով նա խոսում էր բանվորներին սրտամոտ, կենսահույզ հարցերի մասին, և նրան հասկացան, իրենց բարեկամը համարեցին աշխատավորները: Իսկ Նիժեգորոդյան ոստիկանական վարչությունը նշեց, որ Սորմովոյի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության գործուն անդամներից է Պոլոցկի քաղքենի Յակով Սվերդլովը: «Սվերդլովը շատ ավելի վտանգավոր է, քան մենք կարծում ենք, դուք դեռ կլսե՞ք նրա մասին,— ասում էր «ցարի ու հայրենիքի ծառա» Վիսարիոնովը գեներալ Ծեմանինին.— Նրա տպագրած լոզունգները՝ «Կորչի՜ ինքնակալությունը», «Կեցցե՜ քաղաքական ազատությունը» ցույց են տալիս, թե ով է նա»:

Կայացավ ՌՍԴԲԿ II համագումարը՝ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիայի հետագա ճանապարհն ուղենշող համագումարը: Ծանոթանալով կանոնադրության ու ծրագրի վերաբերյալ Լենինի զեկուցմանը՝ Սվերդլովը եզրակացրեց. «Գալիս է աղմկոտ, փոթորկոտ, իր ճանապարհին ամեն մի փտած, թույլ ու հին բան վերացնող, ամեն ինչ հեղաշրջող ժամանակը»: Պետք է պատրաստ լինել այդ ժամանակին:

ՌՍԴԲԿ Նիժեգորոդյան կոմիտեի անդամ Ն. Ա. Սեմաշկոն վաղուց էր նկատել կազմակերպչական արտակարգ ունակություններով օժտված երիտասարդին, որ արդեն հմուտ կոնսպիրատոր էր, լենինյան գաղափարների ջերմ պրոպագանդիստ: Այդ տարիներից իսկ, դեռևս Իլյիչին չտեսած, Սվերդլովն իրեն համարում էր Լենինի հետևորդ և համոզված էր՝ ոչինչ իրեն երբեք չի շեղի այդ ճանապարհից:

Սեմաշկոյի հանձնարարությունը կատարելու համար նա պիտի հեռանար հայրենի քաղաքից, իր հեղափոխական օրրանից՝ Նիժնի Նովգորոդից: Հասնելով Կոստրոմա՝ նա գրում է ընկերոջը. «...Երբեմն ափսոսում եմ Նիժնին, բայց, այնուամենայնիվ, գոհ եմ, որ մեկնեցի, թե չէ այնտեղ ես չէի կարող պարզել թևերս... այնտեղ սովորեցի աշխատել, այստեղ... հնարավորություն ունեմ գործադրելու բոլոր ուժերս»: Ու թևերը պարզած թռչում է նա, գործում անխոնջ— Յարոսլավլ, Կոստրոմա, Կազան, Պերմ, Եկատերինբուրգ...

1905 թվականը Պետերբուրգում սկսվեց արյունոտ կիրակիով... Ամենուր քաղաքական ցույցեր էին. կուսակցության III համագումարը զինված ապստամբության կոչ ուղղեց բանվորներին:

— Պետերբուրգում և ողջ Ռուսաստանում տեղի ունեցող իրադարձությունները վկայում են, որ ցարի գահը տատանվում է,— ասաց Յակով Միխայլովիչը բանվորական միտինգում,— մանր ալիքներ չեն դրանք կամ առանձին մակընթացություններ, հեղափոխական ծո՜վն է այդ: Դուք՝ բանվորներդ, գլխավոր ուժն եք այդ ծովում, միակ հեղափոխական դասակարգը:

Նույն թվականի աշնանը Սորմովոյի Վերխ-Իսետսկի գործարանից ոչ հեռու, Նովգորոդցևների հյուրընկալ տանը, ուր ծնվել, դժվարին կյանքով ապրել էր Կլավդիա Նովգորոդցևան՝ Սվերդլովի կինը, կազմակերպվեց կոմունան:

Գործադուլային շարժումը ծավալվում էր աննախընթաց թափով: Ամենուր հնչում էր Սվերդլովի ձայնը.

— Մենք ասում ենք՝ ցարիզմը կարելի է տապալել միայն զինված ապստամբությամբ: Տեսե՜ք, ընկերնե՜ր, թե ինչպե՞ս են գործում սևհարյուրակայինները— ատրճանակներն ու սրերը ձեռքներին սեղմած: Սպասենք ու նայենք, թե ինչպես ցարի կամակատարները կծեծեն ու կսպանե՞ն մեզ: Մեզ զե՜նք է հարկավոր: Եվ թո՜ղ կապիտալիստների ու շահագործողների գլխավերևում բարձրանա պրոլետարական բռունցքը, և այդ բռունցքում թո՜ղ սեղմված լինի մարտական զենքը, որպես խորհրդանիշ այն բանի, որ մենք ողորմություն չենք մուրա ցարից: Մենք գիտենք, թե ինչպես դիմավորեց մարդասպան ցարը խաչվառներով ու բուրվառներով իր ոտքը գնացած Պետերբուրգի բանվորներին...



Այդպես ամենուր Յակովը՝ ընկեր Անդրեյը, կոչ էր անում պատրաստվել զինված ապստամբության. ոչ մի միտինգ առանց նրա չէր լինում: Խոսքերն անզոր են ցույց տալու բոլորանվեր բոլշևիկի կրքոտ խոսքի մագնիսացնող ուժը, հմայքը...

Ուրալի բոլշևիկների՝ 1906 թ. փետրվարյան կոնֆերանսից կարճ ժամանակ անց, Պերմում ձերբակալվեց Սվերդլովը: Ջերմությամբ, առույգությամբ, բարությամբ ու կենսախնդությամբ, անսպառ լավատեսությամբ լի են նրա նամակները՝ ուղղված սիրելի Կադյային, գաղափարակից ընկերներին: Ոգևորող, թևեր տվող նամակներ, որ հասնում էին բանտերից, ընդհատակից... Պարապ չէր մնալու բանտում, պետք է սովորեր, հարստացներ գիտելիքները, գաղափարապես առավել զիներ...

«Օկտյաբրիստների ու կադետների իշխանությունը,— կարդում էր Սվերդլովը Իլյիչի **Նամակներ հեռվից** գրվածքի անդրանիկ՝ **Առաջին հեղափոխության առաջին փուլը** նամակում, որ զետեղված էր «Պրավդայի» մարտի 21, 22-ի համարներում,— չի կարող ժողովրդին տալ ո՛չ խաղաղություն, ո՛չ հաց, ո՛չ ազատություն...»: Եվ կոչ է անում պատրաստվել հեղափոխության երկրորդ փուլին:

«Ոչ ոք չէր հավատա,— հետագայում գրել է Իլյիչը,— թե անլեգալ խմբակի, ընդհատակյա աշխատանքի դպրոցից, փոքր, հալածական կուսակցության դպրոցից և Տուրուխանյան բանտից կարող է դուրս գալ կուսակցության աշխատանքի... այդպիսի կազմակերպիչ...»:

**1917 թ. ապրիլ—հուլիս.** այսպես է կոչվում գրքի՝ ռուսաստանյան փոթորկոտ իրադարձություններին նվիրված չորրորդ մասը:

Հրավիրվեց կուսակցության Համառուսաստանյան VII կոնֆերանսը: Պետերբուրգի բոլշևիկները պատգամավոր էին ընտրել Յակով Միխայլովիչին: Պատգամավորների մեծ մասը գիտեր նրան «Պրավդայում» աշխատելու ժամանակներից:

Ուրալի բոլշևիկների աշխատանքի մասին խոսեց Սվերդլովը, և Լենինին թվաց, թե այդ փայլուն հռետորը նախօրոք գիտեր՝ ի՞նչ հարցեր է տալու ինքը ու պատասխանում է դրանց: Իսկ երբ նա օբյեկտիվորեն, առանց հաջողությունները չափազանցնելու, թերությունները նվազեցնելու ներկայացնում էր գործերի վիճակը, պատասխանելով պատգամավորների՝ արհմիություններին, կարմիր գվարդիային, հողին վերաբերող հարցերին, իր խորաթափանց աչքերը հառած Սվերդլովին՝ Լենինը գոհունակությամբ մտածում էր. «Այս ընկերը հույժ իրազեկ է ամեն ինչին, և՛ փորձառու է, և՛ շատ խելացի»:

Կույբիշևի առաջարկությամբ Կենտրոնական կոմիտեի անդամ ընտրվեց Սվերդլովը: Կենտրոնական կոմիտեն հանձնարարեց նրան Կենտկոմի քարտուղարության ղեկավարությունը: Եվ ինչպե՞ս էր նա հասցնում ամեն տեղ լինել:

Վտանգավոր ժամանակներ էին Լենինի կյանքի համար, նրա շուրջը վխտում էին սևհարյուրակայինները, տարածվում էին պրովոկացիոն լուրեր նրա՝ իբրև «գերմանական լրտեսի» մասին, հակահեղափոխությունը պատրաստվում էր դատաստան տեսնել պրոլետարիատի առաջնորդի նկատմամբ: Եվ Իլյիչից ու Նադեժդայից գաղտնի, Սվերդլովի առաջարկությամբ ու նախաձեռնությամբ, կազմակերպվեց Լենինին պաշտպանող պահակախումբ՝ ամենավստահելի անձնավորություններից:

Սվերդլովը միշտ առույգ էր երևում, ասես թե չէին եղել անքուն գիշերները, առանց հանգստանալու, առանց կարգին սնվելու հոգնատանջ աշխատանքը: Թո՛ղ որ անլեգալ, առանց փաստաթղթերի, թո՛ղ որ ամեն վայրկյան գլխին կախված էր ձերբակալության վտանգը, նա անդուլ խմբագրում էր Կենտկոմի լրագիրը, կատարում Լենինի առաջադրանքը: «Թույլ տվեք ամենից առաջ շնորհավորել ձեզ,— հպարտությամբ կարդում էր Սվերդլովը Լենինի նամակը,— լրագիրը վարելու ողջ գործում այն վիթխարի բարելավման հասնելու համար, որ նկատվում է վերջին օրերս»:

...Սովետների Համառուսաստանյան I համագումարն էր: Արդեն մինիստր դարձած նախկին փաստաբան Կերենսկին կոչ էր անում մեկնել ռազմաճակատ: Այնուհետև ելույթ ունեցավ մենշևիկների պարագլուխը.

— Ռուսաստանում այժմ չկա այնպիսի մի քաղաքական կուսակցություն, որն ասեր. տվե՛ք մեր ձեռքը իշխանությունը, հեռացե՛ք, մենք կզբաղեցնենք ձեր տեղը: Ռուսաստանում չկա այդպիսի կուսակցություն,— ավարտեց իր խոսքը Ծերեթելին:

— Կա՛ այդպիսի կուսակցություն: Բոլշևիկների կուսակցությունն է այդ.— բոլշևիկների առաջնորդը՝ Իլյիչն էր խոսողը,— մեր կուսակցությունը չի հրաժարվում դրանից և ամեն վայրկյան պատրաստ է ամբողջ իշխանությունն իր ձեռքը վերցնելու:

Սվերդլովին տրվեց նոր հանձնարարություն. ՌՍԴԲԿ ԿԿ-ն բանվորների ու զինվորների դեպուտատների սովետների Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտե է ուղարկում ՌՍԴԲԿ Կենտկոմի անդամ Յա. Մ. Սվերդլովին: Կենտկոմի քարտուղարությունը գործում էր համերաշխ:

«...Բոլոր նրանք, ում բախտ է վիճակվել ինձ նման ամեն օր աշխատել ընկեր Սվերդլովի հետ,— գրել է Լենինը,— նրանց համար հատկապես պարզ է, որ այս մարդու բացառիկ կազմակերպչական տաղանդը միայն մեզ համար ապահովեցին այն, ինչով մենք մինչև օրս հպարտացել և հպարտանում ենք լիիրավ: Նա... ապահովեց մեզ համար համերաշխ, նպատակահարմար, իրոք կազմակերպված աշխատանք՝ արժանի պրոլետարական մասսաներին և համապատասխան պրոլետարական հեղափոխությանը»: Նա միշտ ջանացել է ի կատար ածել լենինյան պահանջը՝ մաքսիմում կազմակերպվածություն ու լավատեսություն:

Հուլիսյան դեպքերի ժամանակ «Պրիբոյ» հրատարակչության՝ ծանր վիրավորված վարիչին փոխարինեց հրատարակչականկուսակցական փորձառու գործիչ Կլավդիա Նովգորոդցևան: Սվերդլովն ստիպված եղավ երեխաներին տանել հարազատների մոտ:

...Հակահեղափոխությունն անցել էր հարձակման, իսկ մենշևիկյան էսէռական համաձայնողականները, մեծամասնություն կազմելով, դիտորդի դիրք գրավեցին՝ մի անգամ ևս դավաճանելով բանվոր դասակարգին: Երկիշխանությունը գոյություն չուներ այլևս. այդ պայմաններում Լենինն առաջարկեց ժամանակավորապես հրաժարվել «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգից: Անհրաժեշտ էր նախապատրաստել և իրականացնել զինված ապստամբությունը: Հուլիսյան ցույցից 23 օր անց սկսվեց կուսակցության VI կիսալեգալ համագումարը, որի կազմակերպական բյուրոն ղեկավարում էր Սվերդլովը:

Կազմակերպական հարցերին նվիրված իր զեկուցումն ավարտելուց հետո Յակով Միխայլովիչը գնաց Իլյիչի՝ Ռազլիվում գտնվող «Կանաչ աշխատասենյակը»: Պատմեց քաղաքական իրադրության վերաբերյալ բանաձևի քննարկման ժամանակ Բուխարինի և Ստալինի միջև ծագած վեճի մասին: Իլյիչը գոհունակությամբ լսեց Ստալինի եզրակացությունը.— բացառված չէ այն հնարավորությունը, որ հենց Ռուսաստանը հանդիսանա սոցիալիզմի ուղին հարթող երկիրը:

Լենինին հետաքրքրում էր, թե ինչպես քննարկվեց իր դատարան ներկայանալու հարցը. չէ՞ որ այն անձնական հարց չէ:

— Այն քննարկվեց իբրև քաղաքական հարց և որոշվեց, որ Լենինին ձերբակալել չի կարելի:

1917 թ. օգոստոսին բոլշևիկները ճնշեցին կոռնիլովյան խռովությունը: Սմոլնիում հաստատվել էր Պետրոգրադի բոլշևիկյան ֆրակցիան: ՌՍԴ(բ)Կ Կենտկոմի նիստն էր 1917 թ. սեպտեմբերին. նախագահում էր Սվերդլովը: Ընթացիկ մոմենտի հարցի առնչությամբ ընդունվեց Լենինի բանաձևը. քանի որ զինված ապստամբությունն անխուսափելի էր, ԿԿ-ն առաջարկում է կուսակցության բոլոր կազմակերպություններին խոսքից անցնել վճռական քայլերի:

Պուտիլովյան գործարանի միտինգի մասնակից բանվորները ներկայացրին իրենց վերջնագիրը. հաշտություն բոլոր ռազմաճակատներում, հողը հանձնել գյուղացիական կոմիտեներին, անհապաղ հրավիրել սովետների համառուսաստանյան համագումար:

Կենտկոմի ընդլայնված նիստում նախագահը՝ Սվերդլովը, կարդաց Կամենևի և Զինովևի նամակը. բոլշևիկների կուսակցությանը, նրա Կենտկոմին ուղղված մարտահրավեր էր այն, որով պահանջում և պնդում էին ո՛չ միայն ապստամբությունը չսկսել մինչև հոկտեմբերի 20-ը, այլև մինչև Սահմանադիր ժողովը չսկսել նաև Սովետների համագումարը: Անցնում է Լենինի առաջարկը— ապստամբությունն այլևս հետաձգել չի կարելի, այն հասունացել է:

Ընտրվեց ապստամբությունն անմիջականորեն ղեկավարող մարմին՝ ռազմահեղափոխական կոմիտե. անդամներն էին՝ Բուբնովը, Ձերժինսկին, Սվերդլովը, Ստալինը, Ուրիցկին:

Հաջորդ օրը, երբ Յակով Միխայլովիչը մտավ աշխատասենյակ, սաստիկ հուզված Ելենա Դմիտրիևնան նրան մեկնեց «Նոր կյանքի» այդ օրվա համարը: Դժվար էր աչքերին հավատող: Ապստամբության նախօրյակին Կամենևն ու Զինովևը Ռոձյանկոյին, Կերենսկուն էին մատնել բոլշևիկների պլանները, իրենց կուսակցության Կենտկոմի որոշումը...

Կենտկոմի փոթորկահույզ նիստում լսվեց Լենինի գրած նամակ-առաջարկը. ընդունելով նրանց՝ «անկուսակցական մամուլում ունեցած ելույթի ողջ շտրեյկբրեխերականությունը՝ Կենտկոմը երկուսին էլ հեռացնում է կուսակցությունից»: Երբ Կամենևը Կենտկոմին հանձնեց իր հրաժարականը կուսակցությունից, Ստալինը հայտարարեց, որ ինքը դուրս է գալիս կենտրոնական օրգանի՝ «Рабочий путь» լրագրի խմբագրությունից: Պատճա՞ռը. առանց խմբագրական կոլեգիայի հետ համաձայնեցնելու նա հրապարակել էր Զինովևի հայտարարությունը, որով վերջինս հերքում էր Լենինի նամակում եղած իրավացի մեղադրանքները: Երբ Սվերդլովը, Ձերժինսկու հետ միասին, պաշտպանելով Կամենևի և Զինովևի վարքագծի լենինյան գնահատականը՝ առաջարկեց հեռացնել Կամենևին Կենտկոմից, Ստալինը ելույթ ունեցավ երկրորդ անգամ. նա գտնում էր, որ Կամենևին ու Զինովևին չպետք է հեռացնել Կենտկոմի կազմից:

Ընդունվեց Լենինի առաջարկը. նրանք հեռացվեցին Կենտկոմի անդամությունից, որոշվեց, որ Ստալինի հայտարարությունը պետք է քննարկվի խմբագրական կոլեգիայում:

Կուսակցության VI համագումարից հետո Իլյիչը ապաստանել էր Մարգարիտա Վասիլևնա Ֆոֆանովայի բնակարանում, որտեղից և նախապատրաստում, կազմակերպում էր զինված ապստամբությունը: Հոկտեմբերի 24-ին Իլյիչը գրեց. «Դրությունը խիստ կրիտիկական է... Ապստամբությունն ուշացնելը հավասար է մահվան, սպասել չի կարելի: Ամեն ինչ կարելի է կորցնել»:

Մարգարիտա Ֆոֆանովան ուշ երեկոյան տուն գալով սարսափով տեսավ, որ Լենինն այնտեղ չէ. «Գնացի այնտեղ, ուր դուք չէիք կամենա, որ ես գնայի: Իլյիչ»— գրված էր սեղանին դրված երկտողում: Բոլշևիկյան ֆրակցիայի սենյակը մտած վիգը կապած, վերարկուի օձիքը բարձրացրած մարդը հանեց կեղծամը. ամենքը զարմանքից քարացան.

— Հենց այդպես, դե՛, ահա և հասավ բուրժուազիայի վերջին ժամը:

Հոկտեմբերի 25-ին հրապարակվեց նոր իշխանության, նոր Ռուսաստանի առաջին փաստաթուղթը՝ գրված Լենինի կողմից.

«Ռուսաստանի քաղաքացինե՛ր.

Ժամանակավոր կառավարությունը տապալված է: Պետական իշխանությունն անցել է բանվորների ու զինվորների դեպուտատների Պետրոգրադի սովետի օրգանի՝ Պետրոգրադի պրոլետարիատի ու կայազորի գլուխ կանգնած ռազմահեղափոխական կոմիտեի ձեռքը...»:

Ահա և տողեր Սվերդլովի ուղերձից, ստորագրված՝ Պետրոգրադի սովետի ռազմահեղափոխական կոմիտե. «Միահամուռ ապստամբած զինվորներն ու բանվորները հաղթեցին առանց արյունահեղության: Կերենսկու կառավարությունը տապալված է... Իշխանությունը տեղերում անցնում է բանվորների, զինվորների ու գյուղացիների սովետների ձեռքը»:

Սմոլնի: Մարդկության պատմության նոր շրջափուլի սկիզբը՝ 1917 թ. հոկտեմբերի 25-ը: Իրականացել է բոլշևիկների, աշխատավոր մարդու ամենանվիրական երազանքը: Ոչ ոք Լենինին այդպես դեռ չէր տեսել: Նա ղեկավարում էր ապստամբության ողջ ընթացքը, ամեն ինչ արվում էր նրա պլանով: Անհապաղ բանակցություններ պետք էր սկսել, կնքել դեմոկրատական, արդար հաշտության, խաղաղության պայմանագիր:

Համառուսաստանյան Կենտգործկոմի ընդլայնված նիստում Իլյիչը առաջարկեց ՀԿԳԿ-ի նախագահությունից հեռացնել Կամենևին: Նախագահ ընտրվեց Սվերդլովը, շարունակելով ղեկավարել նաև Կենտկոմի քարտուղարությունը:

Գրքի 6-րդ մասը նվիրած է Համառուսաստանյան Կենտգործկոմի նախագահի գործունեությանը, որն այնպես բարձր է գնահատել Վլադիմիր Իլյիչը: Կարճ ժամանակում անասելի դժվարություններն այդպես արագ ու վճռականորեն հաղթահարվեցին, բազմաթիվ կնճռոտ հարցեր լուծվեցին այն բանի շնորհիվ, որ ղեկավարների շարքում կար «այնպիսի բացառիկ, տաղանդավոր կազմակերպիչ, որպիսին Յակով Միխայլովիչն էր»:

**Լինե՞լ, թե՞ չլինել** տագնապահույզ հարցով սկսեց երկրի համար ծանր, դժվարին 1918 թվականը:

Տավրիկյան պալատի նիստերի դահլիճում հրավիրված էր Սահմանադիր ժողով. հայտարարելով այն բացված՝ Սվերդլովը կարդում է Լենինի գրած «Աշխատավոր ու շահագործվող ժողովրդի դեկլարացիան». ծագում են բուռն վեճեր: Հակահեղափոխությունն ակտիվ էր գործել. նոր մի գոտեմարտ էր այդ Սովետների իշխանության և Սահմանադիր ժողովի միջև. ողջ գիշեր փոթորկվում էր ժողովասրահը:

Հաջորդ օրը ցրվեց Սահմանադիր ժողովը: Մի քանի օր անց, Սվերդլովը բացեց Սովետների Համառուսաստանյան III համագումարը: Պատվավոր նախագահ ըն-

տրվեցին Վլադիմիր Իլյիչը և Կարլ Լիբկնեխտը: Հնչեց հզոր, միաձայն «Ինտերնացիոնալը»: Ի լուր աշխարհի Ռուսաստանը հայտարարվեց բանվորական, զինվորական, գյուղացիական դեպուտատների սովետների հանրապետություն, ազատ ազգերի ազատ դաշինքի վրա հիմնված սովետական ազգային հանրապետությունների ֆեդերացիա:

Փետրվարի 18-ին, ժամը 12-ին լրանում էր կայզերական Գերմանիայի հետ կնքված զինադադարի ժամկետը: Վերսկսվելու էր հարձակումը: Նման պայմաններում այն հավասար էր կործանման: Լենինն առաջարկեց անհապաղ հաշտություն կնքել: Քառասունութ ձայնով ընդդեմ 15-ի անցավ Տրոցկու և Բուխարինի՝ պատմության մեջ չլսված-չտեսնված առաջարկը,— չըպատերազմել, հաշտություն չկնքել: Ավանեսովի հետ մեկտեղ մեծ ջանքեր գործադրեց Սվերդլովը՝ Կենտկոմում մեծամասնությունն ապահովելու, հաշտության բանակցությունները վերսկսելու համար: Բրեստ-Լիտովսկ մեկնեց սովետական պատվիրակությունը՝ Տրոցկու նախագահությամբ: Ձախողելով բանակցությունները՝ Տրոցկին վերադառնում է Պետրոգրադ: Սվերդլովը ռադիոգիր ուղարկեց գերմանական հրամանատարությանը. «Ժողովրդական կոմիսարների խորհուրդն իրեն հարկադրված է համարում ստեղծված իրավիճակում հայտնել իր պատրաստակամությունը ձևականորեն ստորագրելու այն հաշտությունը, այն պայմաններով, որպիսիք պահանջում էր գերմանական կառավարությունը Բրեստ-Լիտովսկում»:

Կենտկոմի նիստում Յակով Միխայլովիչը կարդում է պատասխանը. պայմաններն ավելի վատթար են: Արյուն է կաթում բոլորի սրտից. Մերձբալթիկա, Բելոռուսիա, Բելոստոկ, Ձերժինովո, Ղարս, Արդահան, Բաթում... Պայմանները պետք է ընդունել 48 ժամվա ընթացքում: Ֆելիքս Էդմունդովիչը կայծականահար եղածի նման վեր թռավ տեղից. Իլյիչն ու Յակովը հուզված հայացքներ փոխանակեցին:

— Մենք հարկադրված ենք ծանր պայմաններով հաշտության պայմանագիր կնքել,— ասում է Լենինը,— հեղափոխական ֆրազի քաղաքականությունն ավարտված է: Եթե այդ քաղաքականությունը շարունակվի այժմ, ես դուրս եմ գալիս կառավարությունից և Կենտկոմից:

Աղմուկ-աղաղակ, ամենատարբեր կարծիքներ... 116-ը ընդդեմ 85-ի, 26 ձեռնպահով (նրանց մեջ և Ձերժինսկին) անցնում է Լենինի առաջարկը:

Լինե՛լ:

Ժողտնտխորհի գործերի կառավարիչ Վլադիմիր Դմիտրիևիչ Բոնչ-Բրուևիչի եղբոր՝ գեներալ Միխայիլ Բոնչ-Բրուևիչի առաջարկով մայրաքաղաքը հեռացվեց ռազմաճակատային գծից ու ծովից. Սովետական երկրի մայրաքաղաքը դարձավ Մոսկվան: Ժողկոմխորհը և ՀԿԳԿ-ն հաստատվեցին Կրեմլում:

Այժմ, «Մետրոպոլ» հյուրանոցի մուտքից ոչ հեռու, բարձրանում է Միխայիլ Յակովլևիչ Սվերդլովի հուշարձանը: Նայում է նա իր անունը կրող հրապարակին, ձեռքին՝ պայուսակ: Այդ հյուրանոցի սենյակներից մեկում էլ հենց նրա՝ ՀԿԳԿ-ի նախագահի ընդունարանն էր:

Յակով Միխայլովիչը գլխավորում էր նաև սովետական առաջին սահմանադրությունը նախապատրաստող հանձնաժողովը, և ինքը առաջարկեց հանրապետության անվան մեջ ավելացնել սոցիալիստական բառը:

Ռումբի պայթյունի պես հասավ բոթը: Պետրոգրադում սպանված է մամուլի գործերի կոմիսար, «Красная газета» լրագրի խմբագիր Վոլոդարսկին:

— Մենք բոլորս պետք է պատրաստ լինենք դրան, թանկագին Յակով Միխայլովիչ,— հուզված ետ ու առաջ քայլելով ասում էր Իլյիչը,— նրանցից ամեն ինչ պետք է սպասել... Մեզնից ոչ ոք ապահովված չէ մահափորձից... Կրկին էսէռների ձեռագիրն է այդ...

Նրանք որոշել էին այլ լեզվով խոսել բոլշևիկյան կուսակցության, Լենինի հետ: Սովետների V համագումարի օրերին մեծ թատրոնի պահպանությունը հանձնվեց էսէռներին:

Համագումարի առաջին իսկ օրը վիճաբանություն ծագեց. աջ էսէռ Ալեքսանդրովը, հանդես գալով իբրև թե աշխատավորության անունից, պահանջեց չեղյալ հայտարարել Բրեստի պայմանագիրը և պատերազմ հայտարարել Գերմանիային:

Դիվանագետների օթյակում նստած էր Միրբախը:

— Պատերազմի և խաղաղության հարցերը,— իր խոսքը շարունակեց Սվերդլովը,— լուծում են Սովետների համառուսաստանյան համագումարը և նրա հաստատած մարմինները՝ Կենտգործկոմը և Ժողովրդական կոմիսարների խորհուրդը... Սովետական հանրապետության շահը գերագույն օրենքն է մեր: Ով դեմ



կլինի այդ օրենքին, պետք է ջնջվի երկրի երեսից:

Կարելինը կոչ արեց էսեռներին՝ թողնել դահլիճը:

— Ժողովրդական կոմիսարների խորհրդի կողմից խոսք ունի ընկեր Լենինը,— հաջորդ օրը, Սպիրիդոնովայի ելույթից հետո, հայտարարեց Սվերդլովը:

— ...Ով այժմ ուղղակի կամ անուղղակի, բացահայտ կամ քողարկված խոսում է պատերազմի մասին, ով ճչում է Բրեստյան օղակի մասին, նա չի տեսնում, որ պարոն Կերենսկին ու կալվածատերերը, կապիտալիստներն ու կուլակներն են օղակը գցում Ռուսաստանի բանվորների ու գյուղացիների վիզը:

Մինչ դրսում ձախ էսէռների Կենտկոմի որոշմամբ սպանված էր Միրբախը, էսէռ Պոպովի ջոկատը Տրյոխսվյատիտելսկի նրբանցքում ձերբակալել էր Ձերժինսկուն, ձախ էսէռները «հանգիստ» զբաղեցնում էին իրենց տեղերը համագումարի դահլիճում: Անհետ նայելով Սվերդլովին՝ Սպիրիդոնովան մտածում էր՝ գիտե՞, թե՞ չգիտե... Իսկ Սվերդլովը կարգադրում է Լիզա Դրաբկինային՝ բոլոր ծրարները միայն ինձ: Իրեն հասած երկտողից իմանալով Ձերժինսկու ձերբակալության մասին, նախագահելուն զուգընթաց, աննկատելիորեն կարգադրում է փոխել ձախ էսէռ ժամապահներին, շրջապատել դահլիճը, ելքերը, ոչ մեկին դուրս չթողնել... «Երբ մենք բոլորս դուրս կգանք, բոլոր ելքերը փակել», տնօրինում է նա և մտածում. «Դե, տեսնենք՝ ով ում»: Իլյիչը դեռ չէր եկել:

Կոփված հեղափոխականը, ինչպես միշտ, այս անգամ ևս հանդես բերեց երկաթյա կամք: Ձախ էսէռների «կառավարությունը» ձերբակալված էր: Իսկ գերմանական դեսպանությունն՝ ներողություն խնդրելու, ցավակցություն հայտնելո՞ւ...

— Թերևս ես մենա՞կ գնամ:

— Ո՛չ, կգնանք միասին, Յա՛կով Միխայլովիչ: Մեզ պատերազմից մի մազ է բաժանում, ընկե՛ր Կենտգործկոմի նախագահ, մազից ենք կախված:

Այդ համագումարում ընդունվեց առաջին սովետական Սահմանադրությունը:

...Նոր, ցնցող մի լուր ամռան այրող շոգին: Պիտերում սպանված է Ուրիցկին: Դժվար է պատկերացնել, որ նա այլևս չկա:

Այս կրակոցը էսէռների տեռորիստական հետագա քայլերի ազդանշան կարող էր լինել: Բասմանի շրջանի բանվորական միտինգում ելույթ ունենալուց հետո Վլադիմիր Իլյիչը Ծաբլովսկու ուղեկցությամբ մեկնեց Միխելսոնի գործարան. ելույթից հետո ուղղվեց դեպի ավտոմեքենան: Էսէռուհի Կապլանի թունավոր գնդակը խոցեց նրա թևը... Երկաթյա բնավորության, ամենամարդկային սրտի տեր մարդը թույլ չտվեց վարորդ Գիլին՝ հիվանդանոց տանել իրեն. «Տո՛ւն, միայն տո՛ւն: Նադյան կանհանգստանա...»:

«Իր առաջնորդների դեմ ուղղված մահափորձերին բանվոր դասակարգը կպատասխանի ուժերի առավել համախմբվածությամբ, կպատասխանի դասակարգային անողոք տեռորով ընդդեմ հեղափոխության բոլոր թշնամիների...

Հեղափոխության բոլոր նվաճումների լավագույն ամրապնդումը, լավագույն երաշխիքը հաղթանակն է բուրժուազիայի դեմ:

Հանգստություն և կազմակերպվածություն: Բոլորը պետք է անսասան մնան իրենց տեղերում: Ավելի կուռ դարձնենք մեր շարքերը»:

Համառուսաստանյան Կենտգործկոմի կոչն էր՝ ուղղված բոլորին, բոլորին, բոլորին:

Իլյիչը կարողացավ հաղթահարել այդ հույժ ծանր վիճակը. բժիշկները, գաղափարակից զինակիցները, զինվորները ռազմաճակատում, ողջ աշխատավոր ժողովուրդը, յուրաքանչյուրն իր տեղում ամեն ինչ անում էին, որ Լենինը շուտ ապաքինվի... Այդպիսի բուժիչ սպեղանի եղավ և Գայի հեռագիրը՝ Իլյիչի հայրենի քաղաքն ազատագրելու մասին:

Քաղաքացիական կռիվների ռազմաճակատների հետ կապված բոլոր հրամանները ստորագրվում էին՝ «Լենին, Սվերդլով»:

Գրքի վերջին՝ 41-րդ գլուխը կրում է **Վերջին ժամերը** վերնագիրը:

Սվերդլովը հեղափոխական երկրամասի՝ Լատվիայի, հեղափոխության ասպետների մայրաքաղաքում է՝ Ռիգայում: Ապա Բելոռուսիա՝ տեղի սովետների համագումարի հարցը լուծելու, հետո Պետրոգրադ՝ Պետրոսովետի նիստի, Ուկրաինա, Խարկով, ուր մարտի 1-ին Կենտրոնական կոմիտեի անունից հանդես է գալիս Ուկրաինայի կոմունիստական կուսակցության III համագումարում: Այդ բուռն, փոթորկոտ համագումարում նա խոսեց նաև ռազմական քաղաքականության մասին: Ապա՝ Բելգորոդ, Կուրսկ, Օրյոլ, Տուլա...

Արտահերթ հեռագրեր Համառուսաստանյան Կենտգործկոմի քարտուղար Ա-

վանեստվին. հրահանգներ ՌՍԴ(բ)Կ VIII համագումարի նախապատրաստման առթիվ... «ԿԳԿ-ի նիստը նշանակեք երկուշաբթի 10-ին... Ծտապ պատվիրեք պլակատներ դահլիճը զարդարելու համար... Այդտեղ կլինեմ 8-ին...»:

Պիտեր՝ Մարկ Ելիզարովի թաղման արարողությանը մեկնելուց առաջ Լենինն ստացավ Կլավդիա Տիմոֆեևնայի երկտողը. «Յակով Միխայլովիչի ջերմությունը 40,3 է»: Ուկրաինայից վերադառնալուց հետո էլ, արդեն հիվանդ վիճակում, նա մասնակցել էր Ժողկոմխորհի նիստին, նույն օրը կազմակերպել, անցկացրել էր ՀԿԳԿ-ի նախագահության նիստը: Ավանեսովը ասաց, որ միայն ամսի 9-ին, երբ արդեն Յակովը չկարողացավ գլուխը բարձրացնել բարձից, համաձայնեց բժիշկներ կանչել... Ողջ Եվրոպայով մեկ տարածված, միլիոնավոր կյանքեր մարած գրիպի համաճարակը՝ իսպանկան, գտել էր պրոլետարիատի բոլորանվեր առաջնորդին: Բժիշկները հուսադրում էին՝ սիրտն առողջ է, պետք է որ հաղթահարի... Մինչդեռ Սվերդլովն արդեն խոսելու իսկ ուժ չուներ, զառանցում էր... 33-ամյա մահամերձ որդու սնարի մոտ է հայրը, չորս բոլորը հարազատներն են, զույգ, գլխիկոր ընկերները՝ Ձերժինսկին, Լունաչարսկին, Պետրովսկին, Ստասովան, Յարոսլավսկին, Ավանեսովը, Ռոստովցևը, Զուգուրինը, Լուբոցկին...

Յակովը պառկած է՝ գիտակցությունը կորցրած: Ներս է մտնում Իլյիչը: Վերջին անգամ բռնում է նրա սառչող ձեռքը... Սվերդլովը հանկարծ բացում է աչքերը, թույլ մի ժպիտ է խաղում նրա շուրթերին, ժպիտ, որով, ասես, կուսակցության առաջնորդն ու զինվորը ներողություն է խնդրում իր անօգնականության, այն բանի համար, որ չի կարող հենց հիմա ելնել ու նետվել կովի, այն բանի համար, որ կուսակցության VIII համագումարը, թերևս, կգումարվի առանց իրեն...

Որքա՜ն կարճ ապրեց և որքա՜ն շատ բան արեց...

— Մենք հողին հանձնեցինք պրոլետարական առաջնորդին,— սգո միտինգում ցածր, հուզախռով ձայնով խոսում էր Իլյիչը,— որն ամենից շատ բան արեց բանվոր դասակարգի կազմակերպման, նրա հաղթանակի համար:

Այժմ, երբ ամբողջ աշխարհում կայծակի արագությամբ տարածվում է այն գաղափարը, թե սովետներում կազմակերպված պրոլետարիատը ինչպես է պայքարում իր գաղափարների իրականացման համար, մենք թաղում ենք պրոլետարիատի այն ներկայացուցչին, որն իր օրինակով ցույց տվեց, թե ինչպես պետք է պայքարել այդ գաղափարների համար: Միլիոնավոր պրոլետարներ կկրկնեն մեր խոսքերը. «Հավե՜րժ հիշատակ ընկեր Սվերդլովին»:

Մարտի 18-ին հրավիրվեց ՌՍԴ(բ)Կ VIII համագումարը. բացելով այն՝ Վլադիմիր Իլյիչը առաջին խոսքը նվիրեց Յակով Միխայլովիչ Սվերդլովին:

...1985 թվականին լրանում է Յա. Մ. Սվերդլովի ծննդյան 100-ամյակը: Կցանկանայինք, որ Բ. Կոստյուկովսկու և Ս. Տաբաչնիկովի՝ նրա հիշատակը հավերժացնող այս հրապուրիչ գիրքը թարգմանվի հայերեն. գիրք, որն ընթերցողը չի կարող երախտագիտության վեհ զգացումով չհամակվել բոլշևիկ-լենինյանների կուսակցության հանդեպ, որին, ինչպես ասաց Յու. Վ. Անդրոպովը, վիճակվել էր համաշխարհային պատմական մեծ առաքելություն՝ նոր դարագլուխ բացել մարդկության պատմության մեջ— հիմնել նոր, կոմունիստական քաղաքակրթություն:

**ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ**



# ԱԿԱՆԱՎՈՐ ԳԻՏՆԱԿԱՆԸ

## (Է. Հ. ՀԱՍՐԱԹՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ԼՐԱՑԱՎ ՄԵԾԱՆՈՒՆ գիտնական, ՍՍՄՀ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս, Հայկական ՍՍՀ գիտության վաստակավոր գործիչ, կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Էզրաս Հասրաթի Հասրաթյանի ծննդյան 80-ամյակը:

Բազմալեզու մանի, փառավոր է խորագիտակ ֆիզիոլոգի, Ի. Պ. Պավլովի տաղանդավոր աշակերտի ու հետևորդի, հիանալի մանկավարժի, համաշխարհային գիտությունը հարստացրած հայրենական նշանավոր դպրոցներից մեկի՝ նեյրոֆիզիոլոգիական դպրոցի հիմնադրի կյանքի, բուռն և ստեղծարար գործունեության ուղին: Նրա գիտական գործունեությանը բնորոշ են մեծ արդյունավետությունը, նպատակամետությունը, և այն կարող է օրինակ հանդիսանալ բոլոր նրանց համար, ովքեր ձգտում են լուրջ արդյունքների հասնել գիտական աշխատանքում, ծառայել իրենց ժողովրդին:

Էզրաս Հասրաթի Հասրաթյանը ծնվել է 1903 թվականին, գյուղացու ընտանիքում, Արևմտյան Հայաստանի Մեծիկ գյուղում: 1915 թ. տասներկուամյա Էզրասը, փրկվելով իմպերիալիստական պատերազմի բոցերից, հասնում է Արևելյան Հայաստան: Գտնվելով ծանր կենսապայմաններում՝ նա անընդհատ մտածում էր սովորելու, կրթություն ստանալու մասին:

Հասրաթյանի համար երջանիկ օրեր սկսվեցին սովետական իշխանության հաստատումից հետո միայն: 1922 թ. նա ավարտեց միջնակարգ դպրոցը, 1926-ին՝ Երևանի պետական համալսարանի գյուղատնտեսական, իսկ 1930-ին՝ բժշկական ֆակուլտետները:

Ֆիզիոլոգիայի նկատմամբ նրա հետաքրքրասիրությունը դրսևորվել է դեռևս ուսանողական տարիներին, երբ նա համալսարանի ֆիզիոլոգիայի ամբիոնի լաբորանտ էր:

1926 թ. Հասրաթյանն ուսումնասիրում է Ի. Պ. Պավլովի հանճարեղ աշխատությունը՝ **Կենդանիների բարձրագույն նյարդային գործունեության օբյեկտիվ ուսումնասիրության քսանամյա փորձը**: Ի. Պ. Պավլովի գաղափարները վճռական նշանակություն ունեցան 23-ամյա Հասրաթյանի հետագա ճակատագրի համար:

1926—1928 թթ. նա երկու անգամ գործուղվում է Լենինգրադ, աշխատում Լ. Ա. Օրբելու և Ի. Պ. Պավլովի լաբորատորիաներում: Այդ ընթացքում իսկ դրսևորվում են փորձարարական համառությամբ և վիթխարի աշխատասիրությամբ օժտված



ուսումնասիրողի ունակությունները: Լենինգրադում գտնվելու ժամանակաընթացքում, առավոտից գիշեր տևող գիտահետազոտական համառ աշխատանքի, Լ. Ա. Օրբելու հետաքրքրական, բովանդակալից դասախոսություններին հաճախելու և գիտական շրջանների հետ հաղորդակցվելու շնորհիվ Էզրաս Հասրաթյանն զգալիորեն հարստացնում է ֆիզիոլոգիայի վերաբերյալ իր գիտելիքները, կատարում գիտական հինգ աշխատանք և Լենինգրադի ֆիզիոլոգների ընկերությունում հանդես է գալիս երիկամների ֆիզիոլոգիային նվիրված իր ուսումնասիրությամբ: Այդ ամենը բարձր է գնահատել ակադեմիկոս Լ. Ա. Օրբելին Երևանի համալսարանի ռեկտոր, պրոֆեսոր Ա. Հ. Հովհաննիսյանին ուղղված նամակում:

Վերադառնալով Երևան՝ 1928—1930 թթ. Հասրաթյանը ծավալում է բուռն գործունեություն. կազմակերպում է Հայաստանում առաջին հետազոտական լաբորատորիան՝ համալսարանին կից, որտեղ դրսևորվում է ո՛չ միայն հետազոտողի, այլև հմուտ մանկավարժի նրա մեծ տաղանդը: Կարճ ժամանակամիջոցում ստեղծվում է Հայաստանի ֆիզիոլոգների առաջին սերունդը— Ա. Մ. Ալեքսանյան, Մ. Գ. Դուրմիշյան, Դ. Մ. Գզգզյան և ուրիշներ: Հասրաթյանը միաժամանակ կարդում է բարձրագույն նյարդային գործունեության դասընթացը, գրում հայերեն դասագրքեր:

Հետագա կատարելագործման ծարավը և կենդանիների ու մարդկանց վարքը կառավարող ուղեղի գործունեության օրենքները ըմբռնելու ձգտումը 1930 թ. կրկին բերեցին նրան համաշխարհային ֆիզիոլոգիայի կենտրոնը՝ Ի. Պ. Պավլովի լաբորատորիան: Էզրաս Հասրաթյանը Պավլովի տաղանդավոր աշակերտներից մեկն էր: Այսպես է բնութագրել նրան Ի. Պ. Պավլովը. «Իմ ղեկավարած լաբորատորիայում, հետևելով գիտությունների ակադեմիայի ասպիրանտ Է. Հ. Հասրաթյանի աշխատանքին, ես երաշխավորում եմ նրան որպես նախաձեռնող, սթափ մտքի տեր, կրքոտ հրապուրվածությամբ հետազոտող, անսահման բարեխիղճ ու ճշտապահ, ինչպես և մշակվող առարկային, ողջ ֆիզիոլոգիային վերաբերող գրականությունն ուսումնասիրող ականավոր գիտական աշխատողի»:

Ասպիրանտուրան ավարտելուց և **Ծարժողական, պաշտպանական պայմանական ռեֆլեքսների ֆիզիոլոգիայի վերաբերյալ** թեմայով դիսերտացիան պաշտպանելուց հետո գիտնական մասնագետի կոչում է ստանում (1933) և Ի. Պ. Պավլովի խնդրանքով մնում է Լենինգրադում՝ նրա լաբորատորիայում մշտապես աշխատելու: Հարկ է նշել, որ արտասովոր էր նրա դիսերտացիայի պաշտպանությունը, արտասովոր և՛ ձևով, և՛ բովանդակությամբ. իբրև ընդդիմախոսներ՝ Ի. Պ. Պավլովը, Լ. Ա. Օրբելին և Ա. Ա. Ուխտոմսկին հատկապես շեշտեցին Է. Հ. Հասրաթյանի դերը նյարդային գործունեության ուսումնասիրության մարզում:

Դիսերտացիոն աշխատանքին զուգընթաց Է. Հ. Հասրաթյանը կատարում է երկու այլ, հույժ կարևոր աշխատանք: Այսպես՝ 1930—31 թթ. նա գրում է **Գլխուղեղի մեծ կիսագնդերի աշխատանքի սիստեմայնությունը** աշխատությունը, որը վերաբերում է մեծ կիսագնդերի կեղևի սինթետիկ գործունեության այն բարձրակարգ ու բարդ ձևին, որը Ի. Պ. Պավլովը կոչել է «դինամիկ ստերեոտիպ» և դրան հատուկ ուշադրություն է նվիրել նա կյանքի վերջին տարիներին: 1933 թ. այդ աշխատությունը, Ի. Պ. Պավլովի երաշխավորությամբ, Հասրաթյանը ներկայացնում է Լենինգրադի ֆիզիոլոգների ընկերությանը:

Հասրաթյանի երկրորդ ուսումնասիրությունը՝ կատարված 1932—1933 թթ., վերաբերում է **Վերին կենտրոնական հարկերի ֆիզիոլոգիական լաբիլության ուսմունքին:** Այս աշխատության մեջ առաջին անգամ փորձ է արվում խորությամբ կիրառելու հայրենական ականավոր ֆիզիոլոգ Ն. Ե. Վվեդենսկու ինքնատիպ գաղափարը նյարդային համակարգի ֆիզիոլոգիական հիմքերին վերաբերող մի քանի բարդ հարցերի լուծման լաբիլության վերաբերյալ, հարցեր, որոնք այդ տարիներին սաստիկ հետաքրքրում էին Պավլովին: Է. Հ. Հասրաթյանի փորձարարական տվյալները և տեսական դրույթները արժանացան Ի. Պ. Պավլովի հավանությանը: Նրա երաշխավորությամբ Հասրաթյանը աշխատությունը ներկայացրեց 1934 թ. կայացած ֆիզիոլոգների համամիութենական IV համագումարին, ինչպես և 1935 թ. տեղի ունեցած ֆիզիոլոգների միջազգային XV կոնգրեսին:

Հիշյալ դիսերտացիայի պաշտպանությունից հետո Էզրաս Հասրաթյանն սկսում է իր ինքնուրույն գործունեությունը, որպես Վ. Մ. Բեխտերևի անվան ուղեղի ինստիտուտի կենտրոնական նյարդային համակարգության ֆիզիոլոգիայի սեկտորի ղե-



կավար, իսկ մեկ տարի անց, համատեղության կարգով, նա վարում է Մ. Ն. Պոկրովսկու անվան պետական ինստիտուտի ֆիզիոլոգիայի ամբիոնը:

Նկատի ունենալով Հասրաթյանի մեծ ավանդը ֆիզիոլոգիական գիտության ասպարեզում՝ 1936 թվականին, առանց դոկտորական դիսերտացիայի պաշտպանության նրան շնորհվում է կենսաբանական գիտությունների դոկտորի աստիճան, իսկ 1938-ին՝ պրոֆեսորի կոչում:

Բավականին լայն է Էզրաս Հասրաթյանի ստեղծարար գործունեության շրջանակը. հրապարակել է մոտ 300 աշխատություն, այդ թվում՝ տասը մենագրություն: Վերջիններս թարգմանվել են անգլերեն, ֆրանսերեն, իսպաներեն, ճապոներեն, չեխերեն, լեհերեն և այլ լեզուներով, հրատարակվել են Լոնդոնում, Նյու-Յորքում, Տոկիոյում, Բուենոս Այրեսում, Վարշավայում, Ռիո-դե Ժանեյրոյում, Պրագայում:

Հասրաթյանին մեծ փառք բերեցին նրա ինքնատիպ, հիմնարար հետազոտությունները նյարդային համակարգի հարմարվողականության խնդիրների ուսումնասիրման մարզում: 30-ական թվականներին գերմանական մի խումբ գիտնականներ հանդես եկան «Դասական ռեֆլեքսային տեսության» դեմ: Ըստ նրանց՝ նյարդային համակարգի հարմարվողականության տեսության նյարդային համակարգում տեղի ունեցող հարմարվողական բոլոր երևույթները տեղի են ունենում կայծակնային արագությամբ, առանց կենտրոնական նյարդային համակարգի (ԿՆՀ), մասնավորապես գլխուղեղի կեղևի մասնակցության: Նրանք ժխտում էին սովորության դերը, այսինքն՝ պայմանական ռեֆլեքսային մեխանիզմի դերը հարմարվողականության պրոցեսներում, ԿՆՀ-ի տարբեր մասերի վնասվածքների դեպքում: Էզրաս Հասրաթյանը և նրա աշխատակիցները (Ա. Ի. Քարամյանը, Բ. Դ. Ստեֆանցովը, Վ. Դ. Դմիտրիևը, Հ. Հ. Բարսեղյանը և ուրիշներ) բազմամյա համակողմանի ուսումնասիրությունների միջոցով հաստատեցին, որ և՛ փորձնականորեն, և՛ տեսականորեն անհիմն են այդ հայացքները: Համոզիչ փաստերով ապացուցվեց, որ խանգարված ֆունկցիաների կոմպենսացիան ոչ թե կենտրոնական նյարդային համակարգի գործունեության կայծակնային վերակառուցում է, այլ սիստեմատիկ վերակառուցման, մարզվելու, շարժողական նոր ունակությունների մշակման բարդ պրոցես: Սակայն Բետեի սկզբունքը հերքող և Է. Հասրաթյանի տեսությունը հաստատող կարևոր փաստերն արդյունք էին այն փորձերի, որոնց ժամանակ հեռացված էր գլխուղեղի կեղևը՝ պայմանական ռեֆլեքսի և դրա նուրբ ու ճշգրիտ հարմարվողականության օրգանը: Ի տարբերություն Բետեի, Է. Հ. Հասրաթյանն ամբողջովին հեռացրեց մեծ կիսագնդերի կեղևը: Հաստատվեց, որ կեղևի հեռացմամբ բացառվում է խանգարված ֆունկցիաների կոմպենսացիան, իսկ այն կենդանիների մոտ, որոնց խանգարված ֆունկցիաները վերականգնված են, կեղևազրկման (դեկորտիկացիայի) պահին դրանք վերստին խանգարվում են: Այսպիսով, տեսական այս կարևորագույն հարցը համոզիչ փորձնական փաստերի հիման վրա սպառիչ լուծում է ստանում, փաստեր, որոնք ցույց են տալիս գլխուղեղի կեղևի վճռական դերը վնասված նյարդային համակարգի կոմպենսատորային երևույթներում:

Խանգարված ֆունկցիաների վերականգնման ասպարեզում կատարած աշխատանքների շնորհիվ Է. Հ. Հասրաթյանը շատ շուտով դարձավ հայրենական առաջատար ֆիզիոլոգներից մեկը և 1939 թ. ընտրվեց ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ:

Երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը, Էզրաս Հասրաթյանը, աշխատելով որպես Տաշքենդի բժշկական ինստիտուտի ֆիզիոլոգիայի ամբիոնի պրոֆեսոր, ձեռնամուխ է լինում վիրավորվելու դեպքում շոկային վիճակի՝ տեսականորեն նվազ ուսումնասիրված այդ պրոբլեմի, պաթոֆիզիոլոգիական մեխանիզմի ուսումնասիրմանը: Հանգամանորեն ուսումնասիրելով պատերազմական ժամանակվա այդ ծանր հիվանդությունը՝ Էզրաս Հասրաթյանը սահմանեց արգելակման բուժիչ դերի տեսական հիմունքները և դրա հիման վրա մշակեց վնասվածքային (տրավմատիկ) շոկի բուժման նոր մեթոդ: Հասրաթյանի հակաշոկային հեղուկը մեծ հաջողությամբ օգտագործվում էր ռազմաճակատային պայմաններում և համարվեց շոկային վիճակի բուժման արդյունավետ միջոցներից մեկը: Այն արժանացավ ակադեմիկոս Լ. Ա. Օրբելու բարձր գնահատականին: 1942—1943 թթ. ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի կենսաբանական գիտությունների բաժանմունքի գիտական հաշվետվության ժամանակ նա ասաց. «...Հասրաթյանը չի սահմանափակվել բուժման առանձին մասնակի եղանակների մասին առաջարկություններով, այլ ընդգրկել է պրոբլեմն իր

ողջ ծավալով և առաջարկել մի շարք միջոցառումներ»:

Ուսումնասիրելով ԿՆՀ-ի տարբեր մասերի վնասվածքների հետևանքները՝ Է. Հասրաթյանը սահմանեց տեսական կարևոր դրույթներ ողնուղեղային շոկի, ֆունկցիաների դինամիկ տեղայնացման՝ որպես ուղեղի հուսալիությունն ապահովող համընդգրկուն սկզբունքի վերաբերյալ: 1957 թվականի նոյեմբեր—դեկտեմբերին նա մի շարք դասախոսություններ կարդաց Մեծ Բրիտանիայում, Լոնդոնի համալսարանի հոգեբանության և նյարդաբանության ինստիտուտներում, Օքսֆորդի համալսարանի ֆիզիոլոգիայի ինստիտուտում, Բրիստորի Բերդենյան նյարդաբանության ինստիտուտում, Բիրմինգհամի համալսարանի բժշկական դպրոցում, Էդինբուրգի թագավորական ընկերությունում, Մանչեստրի համալսարանի բժշկական ֆակուլտետում: Այդ դասախոսությունները հիմնականում նվիրված էին Է. Հ. Հասրաթյանի և նրա աշխատակիցների հետազոտությունների արդյունքներին, նեյրոֆիզիոլոգիայի այնպիսի հրատապ հարցերի, ինչպես՝ ողնուղեղային շոկը, ֆունկցիաների կոմպենսացիան, մեծ ուղեղի կեղևազրկման ազդեցությունը օրգանիզմի ֆունկցիաների նյարդային և հումորալ-կարգավորման վրա, տոնուսային պայմանական ռեֆլեքսները:

Խոսելով ողնուղեղային շոկի մասին՝ հարկ է նշել, որ լավ, բարձր զարգացածության օրգանիզմի կենտրոնական նյարդային համակարգի օրգանները մասնակի մեխանիկական վնասվածքին հակազդում են տրավմայից չխախտված կառուցվածքների գործունեության առավել կամ նվազ տևողության խոր ճնշմամբ: Ողնուղեղային շոկի տեսության հիմնադիրն է անգլիացի նեյրոֆիզիոլոգ Շերինգտոնը:

Է. Հ. Հասրաթյանը իր աշխատակիցների հետ միասին ողնուղեղային շոկի մի քանի հարցեր ուսումնասիրել է իր ուսուցչի՝ Ի. Պ. Պավլովի տեսանկյունից: Հետազոտման նեյրոֆիզիոլոգիական և իզոտոպային ժամանակակից մեթոդների օգտագործմամբ նրանք հասել են գիտագործնական կարևոր նշանակություն ունեցող մի շարք նոր ու արժեքավոր արդյունքների: Բացահայտվել է, որ ողնուղեղի կտրվածքն առաջացնում է ողնուղեղային շոկ ո՛չ միայն նրա ծայրամասային (կաուդալ) հատվածքում, այլև՝ թույլ կերպով նրա գանգամասային հատվածքում: Ընդ որում ողնուղեղի հատվածքի նշանակությունը չի սահմանափակվում միայն ողնուղեղի ծայրամասային հատվածքի կառուցվածքի ուղեղային ազդեցությունների ուղիների ընդհատումով, այլ զգալի չափով հանգեցնում է կենտրոնական նյարդային համակարգի երկու՝ իրարից անջատ մասերի կոմպլեքսային, ուժգին և տևական տրավմատիկ գրգռման: Հաստատված է, որ ողնուղեղային շոկի ժամանակ ախտահարվում են ռեֆլեկտոր աղեղների կենտրոնական մասերի բոլոր օղակները, այսինքն՝ ո՛չ միայն էֆերենտ և ագույգային ներվաբջիջները, այլև այդ աղեղների աֆերենտ ներվաբջիջները իրենց սինապտիկական ապարատներով, ընդ որում աֆերենտ օղակներն ավելի խորն են ախտահարվում, քան մյուսները: Ողնուղեղային շոկի ֆիզիոլոգիական բնույթը հիմնականում արգելակում է զարգացումը ախտահարված ռեֆլեկտոր աղեղների կենտրոնական մասերի տարրերում, ինչպես և թուլացնում պահպանող-վերականգնող դերը, որը հետևանք է դրանց գերգրգռվածության, հոգնության ու հյուծվելու:

1947 թվականին Է. Հ. Հասրաթյանն ընտրվեց ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս: 1949—1950 թթ. նա եղել է ՀՍՍՀ ԳԱ ֆիզիոլոգիայի ինստիտուտի դիրեկտոր, ապա մշտական գիտական խորհրդատու: Այդ ընթացքում Հասրաթյանն ինստիտուտի աշխատակիցների (Լ. Ա. Մատինյանի, Տ. Գ. Ուրղանջյանի, Հ. Հ. Բարսեղյանի, Ֆ. Ա. Ադամյանի, Վ. Ս. Միրզոյանի և այլոց) ուշադրությունը կենտրոնացնում էր ախտահարված ԿՆՀ-ի կոմպենսատորային հարմարվողականության հետազոտման, հարմարվողականության սահմանների, այդ պրոցեսի տարիքային ու տեսակային յուրահատկությունների, ԿՆՀ-ի բարձրագույն մասերի դերի բացահայտման վրա՝ ֆիլոօնտոգենետիկական էվոլյուցիայի առումով: Բացահայտվեց, որ օնտոֆիլոգենետիկական էվոլյուցիայի ընթացքում կատարելագործվում է հարմարվողականությունը, ձևավորվում է հարմարվողականության մեխանիզմը, վերհանվեց և կենդանիների էկոլոգակենսաբանական առանձնահատկությունների և նրանց ԿՆՀ-ի բարձրագույն մասերի դերը: Այս Հասրաթյանի առաջարկած հարմարվողականության էվոլյուցիոն տեսության զարգացումն էր: Ըստ այդ տեսության, տարիքային ու տեսակային առումով որքան ցածրակարգ են կենդանիները, որպես օրենք, այնքան ավելի նվազ խոր են իրենց կենտրոնական նյարդային համակարգի տարբեր օրգանների և մասամբ ծայրամասային նյարդերի զանազան ախտահարումների հետևանքները, այնքան ավելի արագ են զարգանում հարմարվողականության կարգավորիչները և գլխուղեղի բարձրագույն մասերն այնքան ավելի քիչ են մասնակցում դրանց իրականացմանը: Այսպես, օրինակ, 1—3 ամսական շների մոտ ողնուղեղի կողային, առաջամասի կամ ետևի կեսի կըտըրվածքը հարուցում է շարժողական ծայրանդամների ֆունկցիաների ավելի նվազ չափով արտահայտված խանգարումներ, քան մեծահասակ շների մոտ, իսկ խանգարված ֆունկցիաները վերականգնվում են շատ ավելի արագ (5—10 օրում՝ 30—45 օրվա փոխարեն), քան վերջիններիս մոտ: Այդ նույն շնիկների երկու կիսագնդերի կեղևի հեռացումը նրանց ավելի մեծ տարիքում չի հանգեցնում արդեն զարգացած հարմարվողականության վերացման, ինչպես այդ լինում է մեծ շների մոտ, այլ միայն ժամանակավոր վերացման՝ հետվիրահատության առաջին շրջանում: Որոշ ժամանակից հետո վերականգնվում են այդ կեղևազրկված շնիկների խանգարված ֆունկցիաները: Շնիկների ողնուղեղի վիրահատական վնասվածքից հետո խանգարված ֆունկցիաների ավելի արագ ու առավել կատարյալ վերականգնումը վկայում է նրանց չհասունացած, և՛ կազմաբանական, և՛ ֆունկցիոնալ առումով անբավարար ձևավորված կենտրոնական նյարդային համակարգի բարձր հարմարվողականության մասին: Իսկ մեծ ուղեղի կեղևազրկման խոր, բայց ոչ տևական հետևանքները, ինչպես իրավամբ նշում է Հասրաթյանը, վկայում է դրանց վերականգնված ֆունկցիաների համար ոչ թե նրանց կեղևի հնարավորությունների սահմանափակության, այլ ավելի շուտ այն մասին, որ այդ հասակում նյարդային համակարգի ինտեգրատիվ գործունեության ոլորտում ենթակեղևային նյարդային գոյացությունների նշանակությունն ավելի մեծ է, քան մեծահասակ կենդանիներինը:

1943—1950 թթ. Հասրաթյանն աշխատել է բժիշկների կատարելագործման կենտրոնական ինստիտուտում, իբրև ավիացիոն բժշկության ամբիոնի պրոֆեսոր, 1950—1960 թթ. վարել է Մոսկվայի Ն. Ի. Պիրոգովի անվան երկրորդ բժշկական ինստիտուտի ֆիզիոլոգիայի ամբիոնը, որտեղ հետազոտվում էր մեծ կիսագնդերի կեղևի դերը ուղեղի ոչ պայմանական ռեֆլեքսային գործունեության մեջ: Ստացված արդյունքները հնարավորություն ընձեռեցին՝ ընդարձակելու պատկերացումները ոչ պայմանական ռեֆլեքսների բազմահատկության մասին, ուր ինտեգրացիայի որոշակի մակարդակը համապատասխան հատկանիշներ է ներմուծում ամբողջական ռեֆլեքսային գործողության մեջ: Մեծ կիսագնդերի կեղևի նման կառուցվածքը հնարավորություն է ընձեռում ԿՆՀ-ի ենթակա բաժինների միջոցով կատարելու օրգանիզմի տարբեր ֆունկցիաների ընդհանրացված, ինտեգրատիվ կառավարում:

Երկար տարիների սեփական հետազոտությունների և իր աշակերտների տվյալների հիման վրա Էզրաս Հասրաթյանը սահմանեց երկու հույժ կարևոր՝ արտաքին ազդանշանների ընկալման մեխանիզմը բացահայտող դրույթներ պայմանական ռեֆլեքսային գործունեության մեջ— «սիստեմայնության» և «փոխարկման» ըսկըզբունքները: Սիստեմայնություն հասկացությունը ենթադրում է մեծ կիսագնդերի կեղևի՝ պայմանական գրգիռները որոշակի կարգով սևեռելու ունակություն: Փոխարկման սկզբունքը ենթադրում է գլխուղեղի կեղևի ընթացիկ գործունեության մեջ արտաքին ազդանշանների ընկալման շարժունություն և ժամանակավորություն: Ըստ ժամանակակից նեյրոֆիզիոլոգիական ուսումնասիրությունների, այս երկու, առերևույթ, ասես, հակադիր, նյարդային օրինաչափությունները բացահայտում են ուղեղի գործունեության ամենաբարդ կողմերից մեկը և հույժ արժեքավոր ու հետաքրքրական են ո՛չ միայն նեյրոֆիզիոլոգիայի, այլև հոգեբանության, հոգեբուժության, նյարդաբանության համար:

Էզրաս Հասրաթյանի ուսումնասիրած մյուս հիմնարար հարցը վերաբերում է սիմպատիկ նյարդային համակարգի՝ մեծ կիսագնդերի գործունեության վրա ունեցած ազդեցության բացահայտմանը: Լ. Ա. Օրբելու և նրա աշակերտների կատարած հետազոտություններում հաստատված էր, որ սիմպատիկ նյարդային համակարգը գրգռող կամ արգելակող ազդեցություն է ունենում կմախքային մկանների, ողնուղեղի, հիմնանցքային և միջուղեղային մասի վրա: Իսկ թե ինչպիսի ազդեցություն է ունենում սիմպատիկ նյարդային համակարգը կեղևային գործունեության վրա, ուսումնասիրված չէ: Է. Հասրաթյանը փորձերով ապացուցեց, որ ԿՆՀ-ի բարձրագույն բաժինների ապասիմպատիկացման ժամանակ առաջանում է կենդանիների բարձրագույն նյարդային համակարգի երկարատև խանգարում: Էզրաս Հասրաթյանի հայտնաբերած այս փաստերը հաս-

տատվեցին ժամանակակից էլեկտրոֆիզիոլոգիական հետազոտություններում:

Մոսկվայում Է. Հասրաթյանը ղեկավարել է ՍՍՀՄ ԳԱ՝ իր իսկ կազմակերպած ֆիզիոլոգիական լաբորատորիան, ապա ՍՍՀՄ ԳԱ ԲՆՀ-ի և նեյրոֆիզիոլոգիայի ինստիտուտը (1950—1952, 1960—1981 թթ.): Նեյրոֆիզիոլոգիայի ասպարեզում Հասրաթյանի ստեղծած ինքնատիպ ուղղությունները՝ դինամիկ ստերեոտիպի ըսկըզբունքը, պայմանական ռեֆլեքսային փոխակերպության սկզբունքը, նյարդային համակարգի հարմարվողականության տեսությունը, ոչ պայմանական ռեֆլեքսների բազմահարկ կազմաբանաֆունկցիոնալ կառուցվածքի, ֆիլոգենեզում արգելակման համաձայնեցնող ֆունկցիայի կըրկնորդման, պայմանական կապի միակըցման, ուղղակի և շրջադարձ կապերի վերաբերյալ սկզբունքները և տրավմատիկ շոկերի ախտածնության ուսումնասիրության հետ կապված հետազոտությունները Էզրաս Հասրաթյանին հանգեցրին հույժ բարդ մի խնդրի՝ արգելակման կառուցվածքային հիմքերի բացահայտման պրոբլեմի առաջադրմանն ու լուծմանը: Որտեղ, ինչպիսի՛ կառուցվածքներում է ձևավորվում այդ արգելակումը, ինչպիսի՛ հարաբերություններ, փոխպայմանավորվածություն, փոխներգործություն են ստեղծվում գրգռման ու արգելակման պրոցեսների միջև: Արդի նեյրոֆիզիոլոգիայի այս բոլոր կարևոր հարցերն ուսումնասիրվում են ՍՍՀՄ ԳԱ բարձրագույն նյարդային համակարգի և նեյրոֆիզիոլոգիայի ինստիտուտում: Ստացված տվյալները հնարավորություն են ընձեռում եզրակացնելու, որ կեղևային արգելակումը ձևավորվում է ոչ թե անալիզատորների բջջային գոյացություններում, այլ անալիզատորների տարբեր օջախները շաղկապող ասոցիատիվ համակարգերում: Փորձնական նոր հետազոտությունների հիման վրա Էզրաս Հասրաթյանը սահմանեց հույժ կարևոր մի դրույթ ևս. գլխուղեղի կեղևի գործունեության երկու մեխանիզմների՝ նրա տոնուսային և ֆիզիկական գործունեության մասին: Այդ մի կողմից հանդիսանում է Պավլովի, Հասկելի և Օրբելու նյարդային համակարգության գործարկման և կարգավորող տիպերի վերաբերյալ ուսմունքի հետագա զարգացումը, մյուս կողմից՝ բացահայտում է նոր տվյալներ ենթակեղևային կառուցվածքներում սպեցիֆիկ և ոչ սպեցիֆիկ համակարգերի ֆունկցիաների մասին:

Լինելով բարձրագույն նյարդային համակարգի փիլիսոփայական պրոբլեմներին նվիրված շատ աշխատությունների հեղինակ՝ Հասրաթյանը մասնակցել է փիլիսոփաների ու հոգեբանների միջազգային մի շարք կոնգրեսների:

Բնութագրելով մեծ ֆիզիոլոգի գիտական ստեղծագործությունը՝ հարկ է անդրադառնալ նրա ընդհանուր տեսական մի քանի կոնցեպցիաների: Գիտական գործունեության առաջին իսկ քայլերից նա ղեկավարվել է ֆիզիոլոգիական զանազան բարդ պրոցեսների և, հատկապես կենդանիների վարքի հիմքը կազմող բարձրագույն նյարդային համակարգի ֆունկցիաների ըմբռնման դիալեկտիկական մեթոդով:

Ինչպես փիլիսոփայությանը նվիրված համաժողովներում, նույնպես և «Վոպրոսի ֆիլոսոֆիի» ամսագրում հրապարակված հոդվածներում Էզրաս Հասրաթյանը միշտ նշել է, որ հետազոտողի համար հույժ կարևոր է երևույթներն ուսումնասիրել դիալեկտիկական մատերիալիզմի տեսանկյունից, այսինքն՝ ֆիզիոլոգիական պրոցեսների ծագման, գոյավորման ու զարգացման տեսանկյունից: Ինչպես տեսական հայացքների կազմավորման, նույնպես և փորձնական հետազոտություններում Հասրաթյանը ղեկավարվել է վերոհիշյալ սկըզբունքով: Իր աշխատանքներում նա հաջողությամբ է կիրառել ուսումնասիրման պատմական մեթոդը՝ համեմատական-ֆիզիոլոգիական և գոյաբանական: Հասրաթյանը հատկապես շեշտում է, որ պայմանական ռեֆլեքսը, հանդիսանալով նյարդային համակարգի գործունեության բարձրագույն արտահայտությունը, կենդանական աշխարհի տեսակային ու տարիքային էվոլյուցիայի ընթացքում անընդհատ զարգանում, կատարելագործվում է, խիստ փոփոխությունների են ենթարկվում նրա հատկությունների, կառուցվածքի, դրսևորման ու տեղայնացման ձևերը:

Պայմանական ռեֆլեքսային գործունեության էվոլյուցիայի հարցի նկատմամբ նըման վերաբերմունքը դյուրացնում է այնպիսի մի կարևոր խնդրի լուծումը, որպիսին ժամանակավոր կապերի հանգուցատեղի հարցն է: Այս մասին գոյություն ունի երկու կարծիք: Ըստ մեկի՝ պայմանական ռեֆլեքսները միակցվում են ենթակեղևային կառուցվածքներում, ըստ մյուս կարծիքի, այն տեղի է ունենում գլխուղեղի կեղևում: Հասրաթյանի եզրահանգումները ցույց են տալիս, որ սխալ է նման



բացարձակ հարցադրումը, թե ե՛րբ, ո՛ր համակարգերում են միակցվում պայմանական ռեֆլեքսները, միշտ անհրաժեշտ է նկատի ունենալ, թե պայմանական ռեֆլեքսների ո՛ր տեսակների, ձևերի, հատկանիշների մասին է խոսքը, և դրանցից որոնք են միակցվում կեղևում, որոնք հակառակը՝ կարող են միակցվել ենթակեղևային միացություններում: Գիտության ասպարեզում Հասրաթյանի կատարածների համառոտակի թվարկումն իսկ ցույց է տալիս, թե ինչպիսի խոր հարգանքի են արժանի մեծ երախտավորի տաղանդն ու անխոնջ աշխատասիրությունը:

Էզրաս Հասրաթյանի գիտական ուսումնասիրությունները հարստացրել են ժամանակակից նեյրոֆիզիոլոգիայի ոսկե ֆոնդը, արժանացել համաշխարհային ճանաչման: Նա ընտրվել է ուղեղի հետազոտման միջազգային կազմակերպության, Ուրուգվայի նյարդաբանական և նեյրովիրահատական ընկերության, Չեխոսլովակիայի Պուրկինեի անվան, հյուսիս-ամերիկյան՝ Ի. Պ. Պավլովի անվան ազգային ընկերության, Նիդեռլանդիայի նևրոլոգների ընկերության պատվավոր անդամ, ֆիզիոլոգների միջազգային միության խորհրդի անդամ, սոցիալիստական երկրների՝ ուղեղի ֆիզիոլոգիան ուսումնասիրող կազմակերպության՝ «Интермозг»-ի նախագահ, բժշկական գիտությունների միջազգային կազմակերպությունների խորհրդի գործադիր կոմիտեի անդամ: Նա հիացնում էր ամենքին իր փայլուն, խորապես փաստարկված ելույթներով, ճշտապահությամբ, նպատակամետությամբ: Անսահման էր նրա աշխատասիրությունը: Բացառիկ հիշողության տեր գիտնականը մշտապես կարողանում էր ուշադրության ոլորտում պահել աշխատանքների փոքրագույն մանրամասներն անգամ: Իր բազմաթիվ ելույթներում ու զեկուցումներում Հասրաթյանն ամենայն ակնբախությամբ ներկայացնում էր իր և աշխատակիցների ստացած գիտական արդյունքների էությունը, կապելով դրանք այլ ուսումնասիրողների հետազոտության արգասիքների հետ:

Գիտահետազոտական ծավալուն աշխատանքի հետ մեկտեղ Է. Հ. Հասրաթյանը մեծ ուժ ու եռանդ է նվիրել երիտասարդ գիտական կադրերի պատրաստմանը: Նրա ղեկավարությամբ պաշտպանվել է 100 թեկնածուական, 35 դոկտորական դիսերտացիա (հինգը՝ Հայաստանից):

Հասրաթյանը 1929 թվականից կոմունիստական կուսակցության անդամ է, ընտրվել է ՍՄԿԿ XVIII համագումարի պատվիրակ: Իր ողջ կյանքի ընթացքում անխոնջ գիտնականը հասարակական ծավալուն աշխատանք է կատարել ֆիզիոլոգների համամիութենական ընկերության ղեկավար մարմիններում, ֆիզիոլոգիական ամսագրերի խմբագրական կոլեգիաներում, ԲԱՀ-ում, Լենինյան և պետական մրցանակների շնորհման կոմիտեում: 1946 թվականից մինչև իր կյանքի վերջը եղել է Ի. Պ. Պավլովի անվան՝ «Բարձրագույն նյարդային համակարգություն» ամսագրի գլխավոր խմբագիրը, ՍՍՀՄ ԳԱ բարձրագույն նյարդային համակարգության գիտական խորհրդի նախագահը: Երկար տարիներ հանդիսացել է «Հայաստանի կենսաբանական ամսագրի» խմբագրական կոլեգիայի անդամ:

Կենսաբանական գիտությանը մատուցած ծառայությունների համար Է. Հ. Հասրաթյանն արժանացել է ՍՍՀՄ ԳԱ առաջին աստիճանի մրցանակի, Ի. Պ. Պավլովի անվան մրցանակի և Ոսկե մեդալի: Կուսակցությունն ու կառավարությունը բարձր են գնահատել ականավոր գիտնականի գիտամանկավարժական, հասարակական և կազմակերպչական գործունեությունը՝ պարգևատրելով նրան Լենինի երկու, Աշխատանքային կարմիր դրոշի երկու, Կարմիր աստղի շքանշաններով և բազում մեդալներով:

78 տարեկան հասակում վախճանվեց ականավոր նեյրոֆիզիոլոգ, ջերմ հայրենասեր, վիթխարի տաղանդի, անսպառ, առինքնող եռանդի տեր գիտնականը՝ Էզրաս Հասրաթի Հասրաթյանը: Ձեռնարկվել են մի շարք միջոցառումներ մեծավաստակ գիտնականի ծննդյան 80-ամյակի առնչությամբ: Մոսկվայում այս տարվա մայիսի 30-ին և հունիսի 1-ին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան, ֆիզիոլոգիայի բաժանմունքը, նյարդային համակարգության ֆիզիոլոգիայի գիտական խորհուրդը, սոցիալիստական երկրների գիտությունների ակադեմիաների պրոբլեմային հանձնաժողովը, «Интермозг», բարձրագույն նյարդային համակարգության և նեյրոֆիզիոլոգիայի ինստիտուտը, Մոսկվայի ֆիզիոլոգների ընկերությունը, համամիութենական «Գիտելիք» ընկերության վարչությունը համատեղ կազմակերպեցին Է. Հ. Հասրաթյանի ծննդյան 80-ամյակին նվիրված նիստեր:

Երևանում այս տարվա հոկտեմբերի վերջերին ՍՍՀՄ ԳԱ՝ մարդու և կենդանիների ֆիզիոլոգիայի կոմպլեքսային պրոբլեմների գիտական խորհրդի, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի, ֆիզիոլոգների հայկական ընկերության, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի, ՍՍՀՄ ԳԱ բարձրագույն նյարդային համակարգության և նեյրոֆիզիոլոգիայի ինստիտուտի կողմից կազմակերպվեց «Կենտրոնական նյարդային համակարգության դինամիկ տեղայնացումը և ֆունկցիաների կոմպենսացիան» թեմայով համամիութենական VI կոնֆերանսը, որը նվիրվեց Է. Հ. Հասրաթյանի ծննդյան 80-ամյակին: Զեկուցումներում ներկայացվեցին նեյրոֆիզիոլոգիական, կլինիկական և կազմաբանական-փորձարարական արդյունքները, որոնք ստացվել են նախորդ՝ հինգերորդ կոնֆերանսից հետո անցած չորս տարիների ընթացքում:

Էզրաս Հասրաթի Հասրաթյանի հիշատակն անմար է բոլոր նրանց սրտերում, ովքեր տեսել, հաղորդակցվել են նրա հետ, ովքեր իրազեկ են նրա բեղմնավոր գիտական գործունեության արգասիքներին: Նրա անունն անջնջելիորեն դրոշմված է ֆիզիոլոգիայի ստվարածավալ տարեգրության էջերում:

**Լ. Ա. ՄԱՏԻՆՅԱՆ**

**ՀՍՍՀ ԳԱ Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի նեյրոէնդոկրինային փոխհարաբերությունների լաբորատորիայի վարիչ, կենսաբանական գիտությունների դոկտոր, ուղեղի հետազոտման միջազգային կազմակերպության անդամ**



# ԱՐԺԵՔԱՎՈՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ

ՍՍՀՄ-ՈՒՄ ԱԶԳԱՅԻՆ-ՊԵՏԱԿԱՆ շինարարության սահմանադրական հիմունքների ուսումնասիրման հետ կապված հարցերը միշտ էլ եղել են սովետական գիտնականների ու մասնագետների ուշադրության կենտրոնում: Այդ պրոբլեմների նկատմամբ նրանց հետաքրքրությունը առանձնապես ուժեղացավ 1977 թվականի ՍՍՀՄ սահմանադրությունն ընդունելուց հետո, որը խոշոր ուղենիշ է սովետական հասարակության ազգային-պետական հիմքերի ամրապնդման գործում: «Այդ ակնառու փաստաթղթի մեջ,— նշել է Յու. Վ. Անդրոպովը,— ոչ միայն հանրագումարի են բերված նախորդ զարգացման արդյունքները, այլև ցույց են տրված երկրի բոլոր ազգերի և ազգությունների հետագա ծաղկման ու մերձեցման քաղաքական-իրավական ամուր, հաստատուն հիմքերը» (Յու. Վ. Անդրոպով, **ՍՍՀՄ վաթսուն տարին**, «Հայաստան» հրատ., 1983 թ., էջ 9):

Վերջին տարիներին զգալիորեն աճել է իրավաբանական գիտության ուշադրությունը ՍՍՀՄ-ում ազգային-պետական շինարարության սահմանադրական հիմունքների և մասնավորապես միութենական հանրապետություններում ազգային-պետական շինարարության ուսումնասիրման պրոբլեմների նկատմամբ: Հրապարակվել են մի շարք հոդվածներ՝ նվիրված այդ ոչ դյուրին թեմատիկայի ուսումնասիրմանը: Ուսումնասիրությունների պրոցեսում երևան են եկել մեթոդաբանական և մեթոդական բնույթի պրոբլեմներ, արվել են առաջարկություններ՝ ՍՍՀՄ-ում ազգային-պետական շինարարության սահմանադրական-իրավական հիմունքների ուսումնասիրման հետագա խորացման նպատակով: Այդ առումով տեսական և գործնական մեծ հետաքրքրություն են ներկայացնում վերջին տարիներին որոշ միութենական հանրապետություններում հրատարակված աշխատությունները:

Մեր երկրում ազգային-պետական շինարարության սահմանադրական հիմունքների համակողմանի ուսումնասիրումը շարադրված է իրավաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Լ. Ա. Գրիգորյանի և իրավաբանական գիտությունների թեկնածու, դոցենտ Հ. Մ. Խաչատրյանի գրքում*:

Մենագրությունը բաղկացած է ներածությունից, որտեղ հեղինակները ներկայացնում են ուսումնասիրության նպատակներն ու խնդիրները, և չորս գլխից: Աշխատության առաջին գլխում հաջողությամբ առանձնացված ու խմբավորված են այն հարցերը, որոնք հնարավորություն են ընձեռում՝ խորամուխ լինելու պրոբլեմի էության մեջ: Դրանք առաջին հերթին այն հարցերն են, որոնք կապված են ՍՍՀՄ-ում և միութենական հանրապետություններում ազգային-պետական շինարարության սահմանադրական հիմունքների վերլուծման հետ:

Ազգային-պետական շինարարության հիմ-
նական սկզբունքները լուսաբանելիս հեղի-
նակները ելնում են մարքսիստական գրակա-
նության մեջ ճանաչում գտած այն դրույթից,
որ հին հասարակության արմատական վերա-
կառուցումը, մարդու կողմից մարդու շահա-
գործման վերացումը, նոր կարգերի, լիակա-
տար անկախության ու ազատության, ինչպես
նաև սոցիալական հավասարության հաստա-
տումը և ամրապնդումը անհնար են առանց
ազգային ճնշման ու ռասայական խտրակա-
նության վերացման, առանց երկրի բնակչու-
թյունը կազմող բոլոր ժողովուրդների ու ազ-
գերի իսկական իրավահավասարության ապա-
հովման: Պատմական փորձը, նշված է այս-
տեղ, ակնհայտորեն ցույց է տալիս, որ ազգա-
յին հարցն արտացոլվելով անիրավահավասա-
րության, մի ժողովրդի կողմից մյուսների կե-
ղեքման մեջ, կապիտալիստական կարգերի,
բուրժուական հասարակության ծնունդ է, որ-
տեղ գոյության պահպանության գլխավոր
պայմանը մասնավոր սեփականության վրա
հիմնված մարդու կողմից մարդու շահագոր-

* Լ. Ա. Գրիգորյան, Հ. Մ. Խաչատրյան, *ՍՍՀՄ-ում ազգային-պետական շինարարության սահմանադրական հիմունքները*: «Հայաստան» հրատ., 1982 թ., 195 էջ:

ծումն է: Այդ պայմաններում սոցիալական կյանքում հաստատված մի դասակարգի տիրապետությունը մյուսների նկատմամբ իր բընական արտահայտությունն է գտնում ազգային հարաբերություններում՝ մի ազգի կողմից մյուսների նկատմամբ գերիշխանության մեջ: Սա է կապիտալիստական կարգերի օրինաչափությունը, որը մերձեցնում է կառավարման ձևով տարբեր կապիտալիստական երկըրներին. դեմոկրատական ինչ ձևեր էլ որ նրանք ընդունեն, ազգային հարցի իսկապես արդարացի լուծումը նրանց համար եղել և մնում է չլուծված պրոբլեմ:

Նշելով, որ ազգային հարցի արդարացի լուծումը հնարավոր է միայն սոցիալիստական հասարակությունում, հեղինակները մանրամասնորեն վերլուծում են ՍՍՀՄ-ում ազգային-պետական շինարարության պատմական փորձը, այն ներկայացնելով որպես ազգային հարցի լուծման օրինակ: Պատմական իրադարձությունների լայն ֆոնի վրա մենագրությունում բացահայտվում են սոցիալիստական պետությունում ազգային հարցի լուծմանը հատուկ օրինաչափությունները:

Առաջին գլխում մեծ տեղ է հատկացված նաև սոցիալիստական պետության ձևերի մասին մարքսիզմ-լենինիզմի դասականների հայացքների քննարկմանը: ՍՍՀՄ-ը մանրամասն ուսումնասիրվում է որպես սոցիալիստական ֆեդերալիզմի և ինտերնացիոնալիզմի սկըզբունքի վրա հիմնված միասնական միութենական բազմազգ պետություն: Միևնույն ժամանակ բացահայտվում են ազգային-պետական կառուցվածքի և ՍՍՀՄ ժողովուրդների ազգային պետականության զարգացման լենինյան սկզբունքները:

Հատկանշական է, որ աշխատությունում պետական կառուցվածքի ձևերի վերլուծությունը կատարվում է ազգերի ինքնորոշման իրավունքի մասին լենինյան ուսմունքի հետ անխզելիորեն շաղկապված: Անդրադառնալով ֆեդերատիվ պետության պայմաններում այդ հարցի լուծման ուղիներին, հեղինակները ՍՍՀՄ-ի օրինակով մի շարք կարևոր տեսական ընդհանրացումներ ու հետևություններ են անում: Մասնավորապես, տեսականորեն հիմնավորված է միասնական միութենական բազմազգ պետության՝ ՍՍՀՄ-ի ստեղծումը, որը հիմնված է սոցիալիստական ֆեդերալիզմի և ինտերնացիոնալիզմի սկզբունքի վրա: Այն իրավահավասար սովետական սոցիալիստական հանրապետությունների ազգերի ազատ ինքնորոշման և կամավոր միավորման արդյունքն է:



Փաստական հարուստ նյութերով ցույց է տրված Վ. Ի. Լենինի պայքարը տարբեր կարգի օպորտունիստների և «կուլտուր-ազգային» ինքնավարության կողմնակիցների դեմ (էջ 30—35): Տրված է ազգի ինքնորոշման իրավունքը սահմանող հիմնական հատկանիշների բնութագիրը: Դրա հետ մեկտեղ մանրամասնորեն քննարկված է ֆեդերացիայի անդամների հավասարությունը, սահմանված են նըրանց հետագա տնտեսական և կուլտուրական ծաղկման ուղիներն ու երաշխիքները սոցիալիզմի պայմաններում:

Նկարագրելով ազգային հարցի քննարկման ժամանակ ծագած տարաձայնությունները նույնիսկ բոլշևիկների շրջանում, հեղինակները կարողացել են համակողմանիորեն, խորապես ցույց տալ գաղափարախոսական սուր պայքարի պայմաններում Վ. Ի. Լենինի դերը դրա ճիշտ լուծման գործում՝ հաշվի առնելով Ռուսաստանում և ազգային ծայրամասերում պատմականորեն ստեղծված օբյեկտիվ պայմանները: Այդտեղ շեշտվում է պատմական այն իրողությունը, որ ճնշված ժողովուրդները անհաղթահարելի ձգտմամբ ձակված էին միավորվելու ռուս մեծ ժողովրդի հետ:

Այնուհետև ցույց է տրված, որ ՍՍՀՄ-ը, որպես ֆեդերատիվ պետություն, կազմված է իրավահավասար և սուվերեն միութենական հանրապետություններից: Վերլուծված են սահմանադրական այն դրույթները, որոնք հավաստում են ՍՍՀՄ-ը կազմող եղբայրական միութենական հանրապետությունների սուվերենության ու իրավահավասարության փաստը, ինչպես նաև երկրի պետական կառուցվածքի հիմնական սկզբունքի՝ ֆեդերալիզմի բովանդակությունը: Այստեղ բնութագրված է ՍՍՀՄ սահմանադրության 70-րդ հոդվածը, որն ամրապնդում է յուրաքանչյուր ազգի ինքնորոշման ու կամավոր միավորման իրավունքը: Ընդ որում ուշագրավ է այն դատողությունը, որ այդ երկու սկզբունքները ՍՍՀՄ-ին բնորոշում են ոչ միայն որպես ֆեդերատիվ պետություն, այլև ՍՍՀՄի կազմի մեջ մտնող ժողովուրդների պետական կառուցվածքի ելակետային հիմունքները, անկախ այն բանից՝ դրանք ֆեդերատիվ են, թե ունիտար: Կարևոր է նաև այն հետևությունը, որ ազգերի ինքնորոշման իրավունքը, ընդհուպ մինչև անջատումը, սկզբից ևեթ ուժեղացրեց միավորման նըկատմամբ ժողովուրդների ձգտումը և առավել ամրապնդեց սովետական եղբայրական ժողովուրդների կապերը:

Ցույց է տրված Վ. Ի. Լենինի պայքարը հանուն ֆեդերացիայի, բացահայտված է այդ

հարցի վերաբերյալ զանազան բուրժուական ու ռևիզիոնիստական «տեսաբանների» դատողությունների սնանկությունը: Դրա հետ մեկտեղ գրքում մանրամասն վերլուծվում են «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիան» և մասնավորապես կոնկրետ կերպով քննարկվում են այն հիմնարար սկզբունքները, որոնք սկզբնապես դըրվեցին այդ փաստաթղթի մեջ, իսկ հետագայում դարձան հիմք օրենսդրական նոր ակտերի ընդունման համար: Հետազոտելով վերոհիշյալ հարցերը, հեղինակներն այն կարևոր եզրակացությանն են հանգում, որ ՌՍՖՍՀ-ից հընչող վերամիավորման կոչը ուղղված էր միայն սոցիալիստական, այլ ոչ թե բուրժուական պետություններին, ինչպես օրինակ, Ֆինլանդիային ու Լեհաստանին, որոնք ընտրել էին զարգացման կապիտալիստական ուղին:

Գրքում բնութագրված է ՌՍՖՍՀ-ի դերը Անդրկովկասի, Միջին Ասիայի, Բելոռուսիայի, Ուկրաինայի եղբայրական ժողովուրդներին տնտեսական և այլ օգնություն ցույց տալու գործում, որոնք ընտրել էին ազգային և սոցիալական ազատագրության, սոցիալիստական վերածնության ուղին:

Սոցիալիստական ֆեդերատիվ պետության կազմավորման պրոցեսի վերլուծումը աշխատությունում սկսված է Անդրֆեդերացիայի ըստեղծման ուսումնասիրումից, որն իրավահավասար ժողովուրդների ծաղկումն ապահովող միության օրինակ ծառայեց: Լուսաբանված են ֆեդերալիզմի հիմնական սկզբունքները. սոցիալիստական հանրապետությունների ձևի ու բովանդակության միասնությունը, պրոլետարական ինտերնացիոնալիզմը, ազգային-տերիտորիալ սկզբունքը, նրանց փաստական հավասարության և սուվերենության սկզբունքը, ազգային լեզուն, դեմոկրատական ցենտրալիզմը և այլն:

Հաջորդ գլուխը նվիրված է մեր երկրի ժողովուրդների պետական կառուցվածքի զանազան ձևերի քննարկմանը, որոնք ստեղծվեցին առաջին իսկ օրերին՝ հաշվի առնելով նրանց ազգային շահերը: Միաժամանակ քննադատվում է «կուլտուր-ազգային ինքնավարության» տեսությունը, որը փառաբանում էին ազգային հարցի լենինյան ուսմունքի հակառակորդները: Պետք է համաձայնել հեղինակների այն հետևության հետ, որ այդ տեսությունը սկզբից ևեթ ծառայում էր որպես դասակարգային տարբերությունների խորացման գործիք, քանի որ ենթադրում էր կուլտուր-ազգային շրջա-

նակներում միավորել տվյալ ազգի հիմնարկություններն ու ներկայացուցիչներին՝ անկախ նրանց դասակարգային պատկանելությունից:

Դրա հետ մեկտեղ շարադրվում է քննարկվող հարցի լուծման լենինյան պլանը ազգային-տերիտորիալ ինքնավարության ձևով, որը ծառայում է սոցիալիստական ազգությունների զարգացմանը, հետագա ծաղկմանն ու բարգավաճմանը: ՌՍՖՍՀ-ի կազմի մեջ մտնող տարբեր ինքնավարությունների իրավական վիճակի վերլուծության հետ մեկտեղ, հեղինակները նշում են այն անգնահատելի օգնությունը, որ ցույց տվեց ռուս ժողովուրդը Ռուսաստանի տերիտորիայում ապրող ժողովուրդներին՝ հասարակական-քաղաքական և սոցիալ-կուլտուրական կյանքի տարբեր բնագավառներում:

Եզրափակիչ գլխում կոնկրետ փաստական նյութի հիման վրա ցույց է տրված, թե ինչպիսի աննախընթաց հաջողությունների են հասել եղբայրական հանրապետությունները և Միու- մասնավորապես Հայկական ՍՍՀ-ն ՍՍՀ թյան կազմում սովետական իշխանության տարիներին: Ընդ որում վկայակոչվում են թվական տվյալներ, որոնք բնութագրում են հանրապետության վերելքը տնտեսական, պետա- կան և սոցիալ-կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում: Միևնույն ժամանակ մերկացված են իմպերիալիստական պետությունների մեքենայությունները, որոնք այսօր էլ ճգնում են թուլացնել ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամական կապերը զանազան պրովոկացիոն գործողություններով, զրպարտանքով ու գաղափարախոսական վտանգավոր դիվերսիաներով: Այս առումով հարկ է հիշատակել ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումի պահանջները, որտեղ ասված է. «Սովետական Միության, սոցիալիզմի երկրների դեմ մղվում է իր մաշտաբներով և լպիրշությամբ աննախադեպ հոգեբանական պատերազմ: Չխորշելով կեղծիքից և զրպարտությունից՝ բուրժուական պրոպագանդան ձգտում է վարկաբեկել սոցիալիստական կարգերը, խարխլել մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը: Ուստի այսօր առանձնահատուկ կարևորություն են ստանում աշխատավորների դասակարգային կոփումը, բուրժուական գաղափարախոսության դեմ անզիջում պայքարը»:

Գրքում համոզիչ ներկայացված են մեր երկրի սոցիալիստական ազգերի և ազգությունների հետագա զարգացման, մերձեցման ու ծաղկման ուղիները: Թեև ազգերի մերձե-

ցումը օրինաչափ, օբյեկտիվ պրոցես է, նշում են հեղինակները, կոմունիստական կուսակցությունը դեմ է այդ պրոցեսի ամեն տեսակի արհեստական արագացմանը:

Անհրաժեշտ ենք համարում նշել, որ գրքի առանձին գլուխներում և, առաջին հերթին՝ չորրորդ գլխում, հեղինակների ուշադրությունից որոշ չափով վրիպել է ուսումնասիրման իրավական ասպեկտը, հիմնական ուշադրությունը կենտրոնացվել է այն նյութի վերլուծման վրա, որը քաղաքացիական պատմության առարկա է:

Թերություն պետք է համարել նաև գրքում հանդիպող կրկնությունները (դա որոշ չափով պայմանավորված է աշխատության կառուցվածքով), ուսումնասիրման թեմայից որոշ շեղումները, ինչպես նաև որոշ սահմանադրական դրույթների ձգձգված նկարագրությունները (էջ 17, 27, 70—72, 82, 139—140 և այլն):

Այդուհանդերձ, Լ. Ա. Գրիգորյանի և Հ. Մ. Խաչատրյանի գիրքը կարող է հետաքրքրել բոլոր նրանց, ովքեր զբաղվում են ազգային-պետական շինարարության տեսական հարցերի ուսումնասիրմամբ, ընթերցողների լայն շրջաններին:

**Լ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

**Ն. Ա. ԱՊԻՅԱՆ**
**Իրավաբանական գիտությունների դոկտոր**

---

# ՆՐԱՆՔ ՊԱՅՔԱՐԵԼ ԵՆ ԿՅԱՆՔԻ ՀԱՄԱՐ

**«Կուսակցության սոցիալական ծրագրում, անշուշտ, առավել մեծ տեղ կգրավեն առողջապահության հարցերը... Չէ՛ որ խոսքը վերաբերում է մարդկանց առողջությանը, այսինքն՝ ինչպես սոցիալական, այնպես էլ տնտեսական առումով գերկարևոր գործի»:**

*(ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումի նյութերից)*

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԸ և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, սովետական մարդկանց առողջության նկատմամբ հոգատարությունը համարելով մեր հասարակության սոցիալական ամենակարևոր խնդիրներից մեկը, 1977 թ. ընդունեցին «Ժողովրդական առողջապահության հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշումը, որի իրագործման արդյունքները այսօր իսկ ակնբախ են: Զգալիորեն զարգացել են բուժօգնության նոր ձևերը՝ ընտաբանական ծառայությունը, թոքաբուժությունը, վերակենդանացմամբ շտապ բուժօգնությունը, ավելի արդյունավետ է դարձել զանազան հիվանդությունների կանխարգելումը:

Մարդկանց առողջության համար պայքարի պրոբլեմը ոչ մի տեղ այնպիսի ուշադրության չի արժանացել, որպիսին մեր երկրում: Բնակչության բուժօգնության ապահովմամբ Սովետական Միությունը գրավում է ամենաբարձր տեղն աշխարհում: Հանուն մարդու երկարակեցության պայքարողների, մահվան ճիրաններից նրան դուրս կորզողների գործունեությունը լայնորեն մասսայականացնելու, ամենաշնորհակալ գործի լավագույն նվիրակների օրինակով սպիտակ խալաթակիրների նորանոր սերունդներ դաստիարակելու նպատակին է ծառայում նաև Հայկական ՍՍՀ առողջապահության մինիստրության հանրապետական սանլուստան օգտակար ձեռնարկումը՝ **Վաստակաշատ բժիշկներ** մատենաշարը, որ պարբերաբար լույս է ընծայում «Հայաստան» հրատարակչությունը: Դրանք ո՛չ միայն բուժաշխատողներին, այլև ընթերցողներին ուսանելի շատ բան են պարունակում, ուր հեղինակները փորձել են ներկայացնել առողջապահության գործի երախտավորներին և՛ որպես բժիշկ, և՛ որպես Մարդ: Այդ առումով հետաքրքրական է Մ. Դալլաքյանի՝ ընթերցող լայն շրջանների համար նախատեսված գրքույկը*:

«Մարդիկ կան, որ երբեք չեն մոռացվում»— այսպիսի բնաբանով է Մ. Դալլաքյանն սկսել իր խոսքը անվանի բժիշկ Ռուբեն Գյանջեցյանի կյանքի ու գործունեության մասին: Շուշի քաղաքի ծխական դպրոցը, ապա ֆրանսիայի Մոնպելիեի համալսարանի բժշկական ֆակուլտետն ավարտելուց հետո սկսվում է Գյանջեցյանի բեղմնավոր գործունեությունը: Աշխատում է նախ Բաքվի նավթահանքերի հիվանդանոցի ներքին հիվանդությունների բաժանմունքում, ապա հակախոլերային լազարեթում: Այնուհետև նա հրավիրվում է վարելու Անդրկովկասի երկաթգծի հարավային տեղամասի առողջապահության բաժինը: Նրա գործուն մասնակցությամբ հիմնադրվում է Ալեքսանդրապոլի երկաթգծի հիվանդանոցը, ուր ինքն էլ վարում է ներքին հիվանդությունների բաժանմունքը: Գյանջեցյանն աշխատել է նաև Թբիլիսիի երկաթգծի հիվանդանոցի թոքախտային բաժանմունքում և դիսպանսերում՝ որպես բաժնի վարիչ: Իբրև թոքաբույժ հմտանալու նպատակով այնուհետև աշխատում է Լենինգրադի հակաթոքախտային ինստիտուտում: Անհրաժեշտ փորձ ու պատրաստականություն ձեռք բերելուց հետո կրկին վերադառնում է Բաքու, ապա Լեռնային Ղարաբաղ, աշխատում որպես մարզային առբաժնի վարիչ: Այդ ժամանակվա սուղ միջոցներով նա զգալիորեն ընդարձակում է բժշկական ծառայության շրջանակները, միաժամանակ մեծ ու շնորհակալ գործ կատարում բժշկական կադրերի պատրաստման, պրակտիկ բժշկության

* *Մ. Մ. Դալլաքյան, Գյանջեցյան, 1981*:

զարգացման ասպարեզում: 1930 թ. հրավիրվում է Երևան և բժշկական ինստիտուտում աշխատում որպես ասիստենտ՝ միաժամանակ ավանդելով տուբերկուլյոզային հիվանդությունների դասընթացը: Շուտով նա ստանձնում է սանիտարական ֆակուլտետի, ապա հոսպիտալ-թերապիայի ամբիոնի վարիչի պարտականությունները: Այս բոլոր աշխատանքներում նա միշտ համակված է եղել վեհ մի նպատակով՝ օգնել մարդկանց, իր հարուստ փորձը հաղորդել սաներին, նրանց տոգորել աշխատասիրությամբ, նվիրվածությամբ, հիվանդների նկատմամբ հոգատարությամբ:

Հեղինակն այնուհետև ներկայացնում է նրա գործադրած ջանքերը հանրապետության առողջարանային վայրերի և հանքային աղբյուրների հայտնաբերման, դրանց բուժիչ հատկությունների ուսումնասիրման մեծ ու շնորհակալ գործում: Գյանջեցյանի անվան հետ են կապված Արզնիի հանքային ջրերի բուժական հատկությունների բացահայտումը, Դիլիջանի հակաթոքախտային առաջին դիսպանսերի և առողջարանի հիմնումը, Կիրովականի առողջարար կլիմայի բուժական արժանիքների ուսումնասիրումը, տորֆաբուժության մեթոդների մշակումը և այլն: Ինչպես հեղինակն է նշում, նրա աչքից չէր վրիպում մարդու առողջությանը վերաբերող որևէ բան: Նա միշտ եղել է մարդկանց մեջ, նրանց հետ, ապրել ու գործել է նրանց համար: Հայաստանի մի շարք գյուղերում, նաև Երևանում, մոլեգնում էին մալարիան և շատ այլ ախտեր: Արհամարհելով վտանգն ու դժվարությունները՝ նա գլխովին նվիրվում է դրանց կանխմանը: Գյանջեցյանի անվան հետ են կապված նաև մալթայան տենդի (բրուցելյոզի) բուժումը, ինչպես նաև զոբի առաջացման պատճառների հայտնաբերումը և այն կանխելու միջոցների մշակումը: Առաջինը նա էր, որ այդ հիվանդության նախապատճառներից համարեց նաև յոդի բացակայությունը խմելու ջրում:

Ժողովրդի առողջապահության գործի նվիրյալը նաև նրա ընտրյալն էր (երեք նստաշրջան անընդմեջ նա ընտրվել է հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ): Որպես դեպուտատ՝ նա ինչպես հարկն է կազմակերպում է Կիրովականի ջուրը պարբերաբար կալիումական աղով հագեցնելու գործը: Մի խումբ մասնագետների հետ նա ուսումնասիրում է Կիրովի անվան և Քանաքեռի ալյումինի գործարանների՝ էլեկտրոլիզի ընթացքում արտադրվող ֆտոր գազի բացասական ազդեցությունը մարդու օրգանիզմի վրա և առաջարկում հերմետիկացնել ու ավտոմատացնել էլեկտրոլիզի գործողությունները: Այսօր այդ հարցերով զբաղվում է մի ամբողջ ինստիտուտ՝ իր բազմաթիվ գիտնականներով ու հարուստ լաբորատորիաներով: Նրա մեծ ծառայություններից է նաև անգինայի բուժումը նշագեղձի հեռացման միջոցով, դրանով իսկ մի շարք հիվանդությունների կանխումը: Նրա՝ տարիների ուսումնասիրությունների արդյունք են նաև նյարդային համակարգը հանգստացնող միջոցներով՝ բրոմի պրեպարատներով, խոցային հիվանդությունը քնի միջոցով բուժելու մեթոդները, արյան փոխներարկման նշանակության բացահայտումը ներքին հիվանդությունների բուժման համար և այլն:

Ռ. Ն. Գյանջեցյանը երկար տարիներ եղել է Երևանի բժշկական ինստիտուտի ռեկտորը:

Հետաքրքրությամբ են կարդացվում վաստակաշատ բժշկի աշխատակիցների ու սաների հիշողությունները նրա մասին (պրոֆ. Ռաֆայել Ստամբոլցյան, Օֆելյա Նանագուլյան, Թամարա Բաբայան և ուրիշներ), դրանք ևս վկայում են, որ կատարյալ այդ մարդը, օրինակելի մանկավարժն ու բժիշկը ապրել է իր ընկերների, աշխատակիցների, սաների, հիվանդների հոգսերով, ջանացել ամեն կերպ թեթևացնել դրանք, օգնել մարդկանց:

Անշահախնդրություն, հոգատարություն հիվանդների նկատմամբ— ահա նրա պատվիրանն իր սաներին ո՛չ միայն խոսքով, այլև իր անձնական կյանքով ու փորձով: Ե՛վ որպես բժիշկ, և՛ որպես ուսուցիչ նա ուշի-ուշով հետևում էր շրջանները մեկնած իր սաներին, խորհուրդներով, հարկ եղած դեպքում շրջանները մեկնելով դժվար պահերին օգնում նրանց: Շնորհաշատ բժշկի բարեխիղճ ու նվիրված աշխատանքի շնորհիվ է, որ նրա ծունեությունն ըստ ամենայնի բարձր գնահատականներ են, որոնք, նրա օրինակով ու ժառանգած ավանդներին հավատարիմ, հարստացնում են հայրենական գիտությունը:

Ընթերցողի ուշադրությանը ներկայացվող պատումներից է նաև Է. Մարիկյանի գրքույկը*, որում հեղինակը փաստական հարուստ նյութի հիման վրա վեր է հանել խոշոր գիտնական, մանկավարժ, գիտության վաստակավոր գործիչ, պրոֆեսոր Ս. Թադևոսյանի կյանքն ու բեղմնավոր գործունեությունը: Կենսագրական այս ակնարկի, Թադևոսյանի գիտամանկավարժական բազմաբեղուն գործունեությունը ըստ ամենայնի բարձր գնահատող հետաքրքրական նախաբանը գրել է Ի. Մ. Սեչենովի անվան բժշկական ինստիտուտի դիրեկտոր, բժշկական գիտությունների թեկնածու Բ. Վ. Բոգուցկին: Լեռնային Ղարաբաղի Մարաղա գյուղում, աղքատ գյուղացու ընտանիքում ծնված, աշխատասեր, ուսումնատենչ պատանին սովորում է գյուղի ծխական դպրոցում, ապա Ելիզավետպոլի գիմնազիայում, այնուհետև ձեռքն է վերցնում հրացանը, մասնակցում հակահեղափոխության դեմ մղվող մարտերին: 1922 թ. ընդունվում է Ադրբեջանի պետական համալսարանի բժշկական ֆակուլտետը: Այն ավարտում է գերազանց գնահատականներով. նրան պահում են որպես համալսարանին կից թերապիայի ամբիոնի օրդինատոր: Նա եռանդուն աշխատանք է տանում Անդրկովկասում ջերմախտի օջախների հայտնաբերման, դրանց վերացման նպատակով, հիմնում ջերմախտի շրջանային կայան և հիվանդանոց: Նրան դեպի կարդիոլոգիան ձգողը եղել է Լենինգրադի իր ուսուցիչը՝ պրոֆեսոր Գեորգիևսկին, որի խորհրդով նա ուսումնասիրում է ջերմախտի ազդեցությունը սրտանոթային համակարգի վրա ու գրում **Սրտի ախտահարումը ջերմախտի ժամանակ** աշխատությունը: Կրկին Բաքու: Ժամկետից շուտ ավարտում է թերապևտիկական կլինիկայի ասպիրանտուրան, նույն կլինիկայում էլ աշխատում որպես ասիստենտ: Այնուհետև նրան տեսնում ենք կուսակցության հանձնարարությունը կատարելիս: Նա կազմակերպում է բժշկական ջոկատ, որն ուղեկցելու էր լեռներում հակահեղափոխական բանդաները վերացնող չեկիստների խմբերին: Թադևոսյանը եղել է նաև Բաքվի բժշկական ինստիտուտի կազմակերպման նախաձեռնողներից մեկը, նրա դիրեկտորի տեղակալը՝ գիտության գծով, վարել է բազմաթիվ այլ պաշտոններ: Նա գիտամանկավարժական և կազմակերպչական ծավալուն աշխատանք է կատարել նաև Ղրիմում, ուր նրա անմիջական մասնակցությամբ ստեղծվել են կենսաքիմիական լաբորատորիա, էլեկտրասրտաբանական կաբինետ:

Ղրիմի հարավային ափին, նրա նախաձեռնությամբ, 12 թոքախտավորների բուժումը կազմակերպվեց լողափում, բացօթյա, արդյունքները գերազանցեցին բոլոր սպասելիքները: «Հանքային օդ» է համարել նա ծովափի օդը, որն արթնացնում, ակտիվացնում է օրգանիզմի պաշտպանական ուժերը: Պրոֆեսորն այստեղ կազմակերպում և ղեկավարում է ռևմատիզմի դեմ պայքարի Ղրիմի կոմիտեն, անձամբ Մոսկվայից, Լենինգրադից ձեռք բերում էլեկտրասրտաբանական նորագույն ապարատներ, բժշկական սարքեր: Երկար տարիներ նա ղեկավարել է Ղրիմի բժշկական ինստիտուտի ներքին հիվանդությունների ամբիոնը, կազմակերպել միասնական գիտական բժշկական ընկերություն՝ միաժամանակ հանդիսանալով Ղրիմի գլխավոր թերապևտը և զինվորական հոսպիտալի գիտական խորհրդատուն: Թադևոսյանի գիտական հետազոտությունները թեև նվիրված էին բազմաթիվ և բազմապիսի հիվանդությունների ուսումնասիրմանն ու բուժմանը, սակայն նրա հիմնական սևեռակետը սիրտն էր. ինչպե՞ս է զգում այն բրուցելյոզի, շաքարախտի, ասթմայի, երիկամների հիվանդության ժամանակ: Բազմափորձ բժշկի եզրակացությունն այն է, որ սրտանոթային հիվանդությունների խոր իմացությամբ միայն կարելի է ճիշտ ախտորոշել մյուս հիվանդությունները: Հիվանդի ախտորոշման և բուժման յուրաքանչյուր անհաջող դեպք անմիջապես քննարկվում էր ամբիոնում, վերլուծվում գիտաբժշկական ընկերությունում: Մեծապես կարևորելով նաև ծովի օդի և արևի էներգիայի, ցեխային պրոցեդուրաների բուժիչ հատկությունները՝ նա հատուկ ձեռնարկ է գրում այդ մասին (**Սրտանոթային հիվանդությունների բուժումը Ղրիմի հարավային ափին**), ուր ընդհանրացված է իր և իր կլինիկայի աշխատողների փորձը, մշակված են հիպերտոնիայով, խրոնիկական սրտամկանային հիվանդություններով, աթերոսկլերոզով, սրտի հիվանդների բուժման մեթոդները:

Այնուհետև հեղինակը հանգամանորեն անդրադառնում է Հայրենական պատերազմի ժամանակ նրա ծավալած գործունեությանը: Դաժան փորձությունների ճամփա է անցնում Ղրիմի՝ նրա ղեկավարած ինստիտուտը: Այդ ծանր օրերին, հազարավոր կիլոմետրեր կտրելով՝ ինստիտուտը հանգրվանում է Արմավիրում, ապա ղազախական հեռավոր Ղզըլ-Օրդու քաղաքում: Բացվում են բուժքույրերի դասընթացներ, պատրաստվում դեղամիջոցներ: Թշնամու տանկերի դեմ կռվելու համար Թադևոսյանը քիմիայի ամբիոնում կազմակերպում է վառվող հեղուկ ստեղծելու գործը, ուսանողներն իրենք էին լցնում շշերը:

Ուժեղ կամքի, ինքնատիրապետման փայլուն օրինակ էր ծառայում ինքը՝ Թադևոսյանը: Մի կողմից՝ պայքար համաճարակների, ջերմախտի, տրախոմայի, բրուցելյոզի դեմ, սանիտարալուսավորական աշխատանք բնակչության շրջանում, մյուս կողմից՝ կադրերի պատրաստում ռազմաճակատի և թիկունքի համար, դիսերտացիաների պաշտպանություն, գիտական աշխատությունների հրապարակում...

Չնայած ինստիտուտի ծանր, երկարատև էվակուացիային, այն ռազմաճակատին տվեց 850 բժիշկ, բժշկության հրատապ պրոբլեմների վերաբերյալ գրվեցին 180 գիտական աշխատություններ: Ինստիտուտի բազ-

* *Է. Ռ. Մարիկյան*, Սերգեյ Թադևոսյան, *1981 թ.:*

մաթիվ շրջանավարտներ ռազմաճակատում ցուցաբերած արիության համար պարգևատրվեցին մարտական շքանշաններով ու մեդալներով:

Պատերազմի ավարտից հետո Թադևոսյանի ղեկավարած ամբիոնը վերստին ծավալեց իր գիտահետազոտական, ուսումնական ու հասարակական բեղմնավոր գործունեությունը, այն ապրեց իր ստեղծագործական ուժերի իսկական ծաղկում, համալրվեց երիտասարդ կադրերով, լույս ընծայվեցին բազմաթիվ հետազոտություններ: Թադևոսյանի ղեկավարած գիտական հետազոտությունների հիմնական ուղղությունը տեսական ու գործնական բժշկության կարևոր հարցերն էին— ցեխաբուժություն, սրտառևմատոլոգիայի, վիտամինային և դեղամիջոցային թերապիայի և էնդոկրինոլոգիայի պրոբլեմները:

Ս. Թադևոսյանը 1954—56 թթ. աշխատում է Մոսկվայում՝ որպես գիտահետազոտական և բժշկական ինստիտուտների կլինիկայի ու ամբիոնի վարիչ, ապա ՍՍՀՄ առողջապահության մինիստրությունը նրան տեղափոխում է Յալթա, նշանակում նախ միութենական, ապա հանրապետական ենթակայության միացյալ գիտահետազոտական ինստիտուտի, Ի. Մ. Սեչենովի անվան բժշկական ինստիտուտի դիրեկտոր: Չնայած հույժ բազմազբաղությանը, նա հաճախ էր լինում առողջարաններում, զննում հիվանդներին, կազմակերպում գիտագործնական կոնֆերանսներ, դասընթացներ բժիշկների ու բուժքույրերի որակավորումը բարձրացնելու նպատակով:

Շարքային բժշկից մինչև պրոֆեսորի և խոշորագույն գիտնական-սրտաբանի մեծ ու փառավոր ուղի. ահա նրա անցած ճանապարհը: Կյանքի մոտ հիսուն տարին նա նվիրաբերել է մարդկանց առողջության պահպանման՝ աշխարհում ամենամարդկային ու շնորհակալ գործին, աճեցրել այնպիսի կադրեր, որոնցից շատերն այսօր բժշկական գիտությունների դոկտորներ ու թեկնածուներ են:

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը բարձր են գնահատել բժշկության անխոնջ մշակի անձնվեր աշխատանքը: Նա պարգևատրվել է Լենինի, «Պատվո նշան» շքանշաններով, մեդալներով ու բազմաթիվ շնորհակալագրերով:

**ՄԱՐՈ ՅԱՅԼՈՅԱՆ**

ՍՈՎԵՏԱՀԱՅ ՎԻՐԱԲՈՒԺԱԿԱՆ դպրոցի հիմնադիրներից մեկի՝ ականավոր բժիշկ Հարություն Միրզա-Ավագյանի կյանքի էջերն են արտացոլված Զորի Բալայանի **Սիրտը քար չէ** փաստագրական վիպակում*: Հայ ժողովրդի պատմության ամենաողբերգական շրջանում տեղի ունեցած իրադարձությունները գրքույկում վարպետորեն շաղկապված են անվանի վիրաբույժի գործունեության հետ:

...1908 թվականին, Կիևի համալսարանի բժշկական ֆակուլտետն ավարտելուց հետո, Միրզա-Ավագյանը վեց տարի բժշկություն է արել Կիևի «Սևագործ բանվորների հիվանդանոցում»: Վիրահատել է ժամանակի հայտնի վիրաբույժ Պիվովոնսկու ղեկավարությամբ:

Այն ժամանակ բժիշկներին իրենց գործընկերներն էին պարգևատրում հատուկ ժետոններով: «Ես իմ առաջին ժետոնն ստացա 1914 թվականի սկզբին: Այն ժամանակ լրացավ իմ վիրաբուժական գործունեության հինգ տարին: Եվ ես արդեն կատարել էի ավելի քան երկու հազար մեծ վիրահատություն: Հետագայում երկու ժետոն էլ ստացա»— գրել է նա:

1927 թվական: Միրզա-Ավագյանը հանեց բրաունինգի գնդակը ինքնապաշտպանության փորձ կատարած Սարգիս Գրիգորյանի սրտից: Սարգիսը տեսել էր տասնհինգ թվականը, յաթաղանը... Ամեն ինչ արվում էր, որ նա ապրի...

Վիրահատությունից առաջ բժիշկն անասելի հուզվում էր: «Վաղը ես հանդիպելու եմ կենդանի սրտին: Պետք է ձեռքիս մեջ պահեմ տրոփող փոքրիկ հավերժական շարժիչը: Բոլոր բժիշկները բոլոր ժամանակներում երազել են այդ բանը: Երազել են իմ մեծ հայրենակիցներ Հերացին ու Ամիրդովլաթը»: Նա ամբողջ մարմնով դողում էր: «Գնում եմ վիրահատության այնպես, ասես կռվի դաշտ եմ գնում: Անհավասար կռվի: Ասում են, ֆիզիոլոգներն արդեն փորձեր են կատարում շան սրտի վրա: Դա, իհարկե, լավ է: Բայց դա փորձ է առողջ շան առողջ սրտի վրա: Իսկ այստեղ...»:

Միրզա-Ավագյանի աստեղային ժամն էր այդ— մեկ ժամ քսան րոպե: Նա վիրահատեց մարդկային սիրտը, փրկեց մարդկային կյանքը՝ ամենևին չհաշտվելով «պատվից ու կոլեգաների հարգանքից զրկվելու մտքի հետ»: Նա մի անգամ ևս ապրեց ինքնահաստատման զգացումը:

Ի հեճուկս թշնամու՝ Սարգիսն ուզում է դիմանալ... ի հեճուկս թշնամու՝ բժիշկն ուզում է հաղթել... Հիվանդ Սարգսի բզկտված սիրտը, և այդ սիրտը բուժող վիրահատը՝ Միրզա-Ավագյանը՝ ձյան պես ճերմակ մազերով, թավ, սև հոնքերով, փառահեղ բեղերով և արդեն ճերմակաթել մորուքով: Գունատ դեմքի

* *Զորի Բալայան*, Սիրտը քար չէ, *1981 թ.*



վրա ընդգծվում են խոշոր ու սև, հոգնած աչքերը:

Նրան չի խաբել իր ներքին ձայնը, հոգու կանչը: Նա ծնված էր բժիշկ դառնալու, պայքարելու մարդկանց կյանքի համար: Իսկ ինչպե՞ս էր նա վերաբերվում այդպիսի ներքին մղումով բժիշկ չդարձող մարդկանց. «Այդպիսի բժիշկներ չպիտի լինեն, անազնիվ մարդը չպետք է բժիշկ դառնա, անընդունակ բժիշկը ի վիճակի չէ լավ բուժել»... Եվ նա անկեղծ հուզումով ու սիրով է հիշում իր գործընկերներին՝ Ա. Ս. Քեչեկին, Գ. Ա. Մելքոնյանին և այլոց, հպարտությամբ՝ աշակերտներին՝ Յոլյանին, Դուրինյանին, Մարտիկյանին, Սողոմոնյանին... «Եթե ճիշտ է, որ վիրաբույժն իր ամեն մի հիվանդի հետ մեռնում է, ապա ճիշտ է նույնպես, որ անմահություն է ձեռք բերում իր աշակերտների գործերով...»: Առողջացած հիվանդներ, իրենց ուսուցչին անմահացրած, նրա գործը ազնվորեն շարունակող աշակերտներ— ավելի մեծ հատուցում չի կարող լինել բժշկի համար:

Հայկական ՍՍՀ ԳԱ, ՍՍՀՄ ԲԳԱ և բժշկապատմաբանների միջազգային ակադեմիայի իսկական անդամ, գիտության վաստակավոր գործիչ, պրոֆեսոր Լևոն Անդրեասի Հովհաննիսյանի կյանքին ու գործունեությանը նվիրված այս փոքրիկ գրքույկը* շատ համառոտ նկարագրությունն է բժշկության բնագավառի այդ անխոնջ երախտավորի կյանքի ու գործունեության...

Որքա՜ն կյանքեր է փրկել նա, որքա՜ն մահեր են նահանջել նրա առաջ: Խարկովի համալսարանի բժշկական ֆակուլտետն ավարտելուց հետո Հովհաննիսյանը վերադառնում է Թիֆլիս, աշխատում Միխայլովյան հիվանդանոցում, մի խումբ բժիշկների հետ անձնուրաց պայքարում 1910 թվականին բռնկված խոլերայի համաճարակի դեմ:

Դեռ 1914 թվականին գործող բանակում նա տեսավ ամենասոսկալին, ականատես եղավ և ապրեց եղեռնի սարսափները... երդվեց պայքարել. կանգուն պետք է մնա մեր ժողովուրդը...

1919 թվականին, երբ երկիրը հոգեվարքի մեջ էր, չորս դին սով ու աղքատություն, համաճարակ, հազարավոր որբեր, անտուն, մերկ ու քաղցած մարդիկ, երբ վիշտ ու արտասուք էր ամենուր, դիակներ, դիակներ... նա եկավ Հայաստան, եկավ դարմանելու, մեղմացնելու իր ժողովրդի ցավերը: Նա դարձավ Երևանի քաղաքային հիվանդանոցի (որ տեղավորված էր խղճուկ մի կիսավարտ շենքում) գլխավոր բժիշկը և ներքին հիվանդությունների բաժանմունքի վարիչը:

1922 թ. բացվում է Երևանի պետական համալսարանի բժշկական ֆակուլտետը: 1923 թ. Լևոն Հովհաննիսյանի ջանքերով ստեղծվում է Հայաստանի գիտաբժշկական առաջին կենտրոնը՝ Երևանի տրոպիկական ինստիտուտը: Ծավալվում են կանխարգելիչ աշխատանքներ: Նրան հաջողվում է բուժել մալարիայով տառապող բյուրավոր հիվանդների:

Արզնի առողջարանի և առհասարակ Հայաստանում առողջարանային կառույցների հիմնադրման տարեթիվն է համարվում 1925-ը: Իսկ այն հիմնադրվեց նաև Լևոն Հովհաննիսյանի ջանքերով:

Մալարիան պարտվեց, հապա սրտային հիվանդություննե՞րը... Երիտասարդ պրոֆեսորն սկսում է իր եռանդուն գիտական հետազոտությունները, ուսումնասիրում է սրտում աղմուկ հարուցող պատճառները: Եվ ահա արդյունքը՝ **Սրտի օրգանական աղմուկները** թեմայով դոկտորական դիսերտացիան: 1931 թ. ընտրվելով Երևանի բժշկական ինստիտուտի տերմինաբանական հանձնաժողովի նախագահ, նա զգալի գործ է կատարում հայկական բժշկական տերմինաբանության զարգացման բնագավառում: «Յուրաքանչյուր մարդ պետք է նախ լավ իմանա մայրենի լեզուն և անաղարտ պահի այն: Հայ բժիշկներն ու լեզվաբանները շնորհակալ ու ծանր աշխատանք են կատարել, ստեղծել հայկական բժշկական տերմինաբանություն, որ այսօր մեզ համար հեշտ լինի, և օտար բառերի օգնությանը չդիմենք»— ասում էր նա: Եվ Մ. Աբեղյանի ու Ա. Տեր-Պողոսյանի հետ համատեղ ստեղծվում է լատին—ռուս—հայերեն բժշկական բառարանը:

1943 թ. հիմնադրվեց Հայկ. ՍՍՀ գիտությունների ակադեմիան, իսկ մեկ տարի անց՝ ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիան: Լևոն Հովհաննիսյանն ընտրվեց այդ ակադեմիաների իսկական անդամ:

1946 թվականին Լևոն Հովհաննիսյանն ավարտեց **Հայաստանի բժշկության պատմություն** բազմահատոր աշխատությունը, որտեղ ի մի էին բերված հայկական բժշկության նվաճումները հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը:

Վաստակաշատ գիտնականի ղեկավարությամբ Երևանի բժշկական ընկերությանը կից ստեղծվել է պատմաբժշկական սեկցիա, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայում՝ հայ բժշկության ու կենսաբանության պատմության սեկտոր: Նա հիմնադիրը դարձավ Հայաստանի բժշկապատմաբանների գիտական դպրոցի,

* *Վ. Մարտիրոսյան*, Լևոն Հովհաննիսյան, *1981 թ.*

մինչև իր կյանքի վերջը անփոփոխ նախագահն էր իր իսկ հիմնած բժշկապատմաբանների գիտական ընկերության:

Ավելի քան 30 տարի առաջ ամենախաղաղասեր բանակի անխոնջ մարտիկը ասել է.

«Մենք ցանկանում ենք խաղաղ ստեղծագործական աշխատանք, արժեքների ստեղծում մեր հայրենիքի հետագա մշակութային և տնտեսական բարգավաճման համար: Մենք չենք կարող առանց վրդովմունքի նայել, թե պատերազմի հրձիգներն ինչպես են ոչնչացնում խաղաղ ազգաբնակչությանը, գիտությունն ու տեխնիկան օգտագործում են ոչ թե մարդկանց բարեկեցության ու երջանկության համար, այլ մարդկային աշխատանքով կուտակված մշակույթն ու նյութական հարստությունը ոչնչացնելու համար: Մենք միացնում ենք մեր բողոքի ձայնը համայն աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց ձայնին, որպեսզի անհնար դարձնենք նոր, արյունալի սպանդը: Մենք հավատում ենք, որ խաղաղությունը կըհաղթի, քանի որ մեր կողմն են ճշմարտությունն ու արդարությունը»:

Գիտության, մանավանդ բժշկության երախտավոր մշակների կյանքի ու գործունեության, բազմամյա փորձի մասսայականացումը շնորհակալ գործ է, ուսանելի, ժառանգորդության հուսալի խթան: Երիցս հիշարժան են ընկեր Յու. Վ. Անդրոպովի խոսքերը կուսակցության վետերանների հետ ունեցած հանդիպման ժամանակ. նման մարդկանց «...կյանքի փորձը այդ մի գագաթ է, որի վրա բարձրանալով՝ կարելի է ավելի լավ տեսնել բացվող հորիզոնները»:

**ՇԱՀԱՆԴՈՒԽՏ ԱՎԱԳՅԱՆ**




Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:



*Հանձնված է շարվածքի՝ 24.10.83 թ.: Ստորագրված է տպագրության՝ 15.11.83 թ.: ՎՖ 06990: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15.432: Պատվեր՝ 2777:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.